ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

ՅՈՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

### ԱՒՁՆԵՑՒՈՅ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1833 ՌՄՁԲ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ.

ԶՅՈՀԱՆՆՈՒ Իմաստասէր Հայրապետի Օձնեցւոյ զբազմահմուտ և զճարտար շարագրածս համայն 'ի մի գիրս յայս բովանդակելով, բաւական համարիմք զմատենագրին ներբող վկայութիւն համազգեաց և օտար ազգաց, նախնեաց և արդեաց այլուր հռչակեալ: Որոց զմատենագրին պայծառացուցեալ զանունն, իսկ աստ զվաստակս նորին մնայ մեզ յաւերժացուցանել, տպագրութեամբ օճանաւ անկորուստ աւանդելով յետնոց՝ որ ինչ առ 'ի նմանէ մեզ հասին, ոչ միայն ճառագրութիւքն և կանոնք՝ այլ և որ ինչ զկարգաց և զպաշտամանց եկեղեցւոյ և այլ հատուկտիր բանք նորա պահին, բաց 'ի շարականացն:

Զայս ամենայն 'ի հարազատ գրչագրաց ըստ աներկբայելի հաւատարմութեան մերում, որ վկայեալն է 'ի համայնից և անդրժելի 'ի զրպարտող բամբասանաց անծանօթից ոմանց հեռաբնակ պարսաւագրաց, ընծայեմք հնասիրացն 'ի պէտս և 'ի զբօսանս: Իբր ոչ եթէ զամենայն, որ ինչ 'ի սմա կանոնք աւանդին, կամելով նորոգել. քանզի հաւատք անփոփոխ, իսկ կանոնք ըստ պատշաճի ժամանակին փոփոխելիք առ 'ի հարցն սրբոց առ ամենայն ազգս քրիստոնէից աւանդեցան. ընդ այս ոչ ոք տարակուսեսցի 'ի հմուտ եղելոցն եկեղեցական պատմութեանն: Այլ որպէս օրինաւոր իշխանութեան և եթ անկ է առնել յայտնիկ

փոփոխումն, նոյնպէս և որք ինքնահրամանս անօրինեն զսոսա՝ յամենայն ժամանակի բամբասելիք եղեն ։

Մատենաբանութեան երանելւոյ հօրս, և Ճառիցն ընդդէմ Պաւղիկեանց և Մծղնէութականաց, միակ գտանի օրինակ՝ այլ ընտիր յոյժ 'ի բանիբուն գրչէ երկասիրեալ ։ Ըստ յեղակարծ իմն գիւտածոյ զարմանագործ ժամանակին՝ գրչագիրս այս օրինակ բաժանեալ յերկուս, մինչև 'ի Ճառն ընդդէմ Մծղնէութականաց այսր 'ի ձեռս մեր եհաս, իսկ Ճառն այն 'ի նորին գրչէ, 'ի նոյն գիրս, 'ի նոյն ձև և յորակ թղթոյ նմանագիր գրեալ, և նովին ոճով մակագրեալ շարայարելով զհետ մերոյս հատուածոյ․ Ընդդէմ Մծղնէութականաց․ յածեալ առ օտար ազգս, և 'ի մայրաքաղաքին գաղղիացւոց 'ի Լուտետիա քաղաքի յարքունական մատենադարանին պահի ։ Յորմէ ամենայն զգուշութբ, և երրակի բաղդատութբ յայլևայլ անձանց առեալ զգաղափարն, ըստ նմին օրինակի զտպագրութիւս զայս արարաք ։ Դարձեալ և զկանոնսն և զայլն ամենայն նովին զգուշութբ 'ի վաւերական գրչագրաց մատենադարանիս ածաք 'ի տիպ 'ի վայելումն հանդիպողաց մատենիս ։

Զհետ այսոցիկ յաւելումք և զվախճանապետին սորա զԹէոդորոսի Քռթենաւորի զհարազնագգեաց Ճառնաւորի զերեսին Ճառսն, որ ընդդէմ Մայրագոմեցւոյն, որ 'ի Տր Խաչն ածընկալ, և որ 'ի Տր Ածածնին ։ Եւ ապա զԱրմանենեաց Ճառն զմիւսոյ աշակերտի սորա, զաշակերտակցի Իմաստասիրիս զՍահակայ երրորդի, որ զհետ Իսրայէլի կաթողիկոսի յառաջ քան զնախորդ Իմաստասիրիս եկաց կաթողիկոս ։

# ՑԱՆԿ ԳՐՈՑՍ

Ա. Պատմութիւն վասն իւր ըստ առաջնումն կենցաղին ուսումնասիրութեն միանգամայն և ա̃ծսիրութեն, և յաղագս ա̃յ առ նա խնամակալութեն, և առատապարգև ուղխից[1] շնորհաց հոգւոյն սորա. և ընդ որ ուրուք ձեռն պատրաստեաց. ա̃ծ նմա զայնպիսի զգաստութիւն սնուցող 'ի յարուեստասիրութեն: Եւ թէ զիարդ հաւանեալ ապա այնուհետև տալ զինքն 'ի կարգ քահանայութեն և առաջնորդութեն: Եւ թէ որպէս ժամանակաց հոլովումն զանազանս գործեաց, գեղեցիկ պատահմանցն պատուականութք. յառաջնումն առաքինութեն մեծութիւն, և յերկրորդումն պատուոյն առատութի: Զկնի որոյ յորդորական բան առ այս առաքինութիւն. և եթէ անդ ձեռնարկեալ հնարէր զնմանութիւն ա̃ն չարչարանացն, և վարդապետաւխ արարչագործ տեսչութեն:

Բ. Ամբաստանութի զնոցանէ, որք այլաձևապէս և ոչ միով օրինակաւ կատարեն զկանոնս և զկրօնս և զկարգեալ զպաշտամունս:

Գ. Թէ զսեղանն տէրունական և զաւազանն լուսաւորութե քարեղէն և ոչ փայտեղէն պարտ է հաստատել. և մի հակառակել, և զառաջնոցն արարեալ այսպիսի ինչ յօրինակ առնուլ. որ մանաւանդ ոչ կամօք, այլ նորընծայ ժամանակին պատշաճութի զայն բերէր:

Դ. Վասն իւղոյն սրբոյ թէ յորխ բաժանի, և զանազանաբար կատարի նոցա առ միմեանս գործառնութիւն:

Ե. Թէ զայնոսիկ՝ որ մկրտին՝ նախ յերախայութե կարգ պարտ է ածել, և ապա մկրտել:

Զ. Սաստ հանդերձ բազում ցասմամբ 'ի վերայ քահանայից, որ 'ի պղերգութենէ իւրեանց զփեսայ և զհարսն ոչ տանին յեկեղեցիս, և ոչ ինքեանք պսակեն, այլ յիւրաքանչիւր դրունս և ընդ ձեռն աշխարհականաց զայս առնեն:

1 Օրինակին եղծ և անընթեռնլի են նօտրագիր տառքս ուղխից .... 'ի յարուեստասիրութեան .... հոլովումն .... պատուականութք .... առաքութի .... արարչագործ:

Է. Յաղագս երկրորդանաց՝ [1] թէ յայտնապէս և մի՛ գաղտաբար զուգեսցին։

Ը. Թէ յայտնութեանն որ արժան է կատարել զՋրոյն օրհնութիւն, ձէթ արկանելով ՚ի նա սաղմոսել, և աւետարան ընթեռնուլ. և յութօրեայն նորին զծննդեան աւետարանն և զաւետեացն և զմկրտութեան հաւատարապէս ընթեռնուլ։

Թ. Թէ պարտ է ՚ի նբ քառասներորդս պահոցն պատարագ մատուցանել շաբաթու և կիւրակէի։ Յորում և՛ ըզխորհուրդ միաշաբաթուն յայտնէ գովասանական բանիւ։

Ժ. Թէ արժան է կիւրակէի աւուր ցայգապաշտօն առնել։

ԺԱ. Թէ զի՞նչ խորհուրդ ունիցի շաբաթ օր, և որպիսի՛ կարգաւ պարտ է պատուել զնա։

ԺԲ. Ընդդիմաբանութի առ այնոսիկ, որ արգելուն յօրհնելոյ վկայս և յօծանելոյ իւղովն՝ որ կոչի միւռոն։

ԺԳ. Եթէ զՍուրբ ծնդ յՍրբի միայն ասացեալ է և ոչ եւս ՚ի Հայր և ՚ի Հոգի. յաղագս որոյ և զխաչեցարն զհետ բերել արժան է զկնի միոյ միոյ ասութեան։ Յորում և թէ ընդէ՞ր յառաւօտինս և յերեկոյինս պաշտամունս ՚ի վերջն անցուցանեն զՍուրբ ծնդ. իսկ յորում աւուր պատարագ մատչի, ՚ի սկզբանն նուագեն։

ԺԴ. Թէ զի՞նչ խորհուրդ ունիցի առաւօտին պաշտամանն սաղմոսքն և աղօթքն և կարգադրութի նոցին։

ԺԵ. Թէ զի՞նչ խորհուրդ և յերեկոյին պաշտամանն գտանիցի ՚ի սաղմոսս և ՚ի կցուրդս և յաղօթս և ՚ի նոցին կարգադրութիս։

ԺԶ. Յաղագս բովանդակաւ ասացելոց ճառիցս ասացեալ բանս ինչ սակաւուք։

ԺԷ. Երկրորդութի բանից, զոր առնէ ընդ ժողովեալ համօրէն եպիսկոպոսունս աշխարհիս Հայոց, յաղագս թէ զասացելոց ճառիցդ բանս օգտութե ընդ կանոնական գլխովք համառօտել։

ԺԸ. Նոյն ինքն կանոնքն, զոր միաբանաբար կարգեցին, միանգամայն երեսուն և երկու գլուխս։

1 ՚Ի լուսանցսն Երկրորդականաց։

# ԵՐԱՆԵԼՒՈՅ ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

## ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### ՑԱՌԱՋԻՆ ԿԵՆՑԱՂՆ ՒՒՐ ԵՒ Ի ԳԱԼՆ ՑԱԹՈՌ ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՍՏԱՏԵԼ [1] ԲԱԶՄԱՊԱՏԻԿ ԵՒ ԶԱՆԱԶԱՆ ԿԱՐԳՍ ԵՒ ԿՐՕՆՍ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Ա. ՀԱՄԲԵՐՈՂԱՑՆ նախատիպ մեծն Յովբ ասէր երբեմն յիւրում բանին, նեղեալ 'ի փորձանացն արկածից, «Ո՞վ տայր զիս ըստ աւուրցն առաջնոց» միանգամայն 'ի բաց եղեալ զքաջողջուն, զընչաւէտութիւն և զբազմորդութիւն։ Օ՛ նոյնս և ես համադերձ հառաչմամբ բարբառիմ 'ի դիպուածոց աստի վտանգեալ. ո՞վ զիս անցելոցն առաջին դնէր ամանակաց, վերստին զմանկական տիոցն զգեցուցանելով զհասակ։ Յորում ձոխացեալն էի հայրենատուր հոգեկան ընչիցն առատութեամբ, և զարդարեալ հրձուէի եւթնամասնեայ հոգւոյն պատմուճանաւ, և շնորհացն պսակաւ փառաւորեալ գլխոյ իմոյ, և զառաջնորդականին իմոյ կախեալ զպարանոցէ զոսկետեսակ քայռամանեկին զգեղեցկութիւն։ Եւ ամենեւին զամենայնին ընդ իս բերէի զհարմնական յօրինուածոյն զգեստ, պատշաճ լինելով յերկնայնոյն պարփակիլ փեսայի առագաստ։ Քանզի արդարև զար-

1 Օրինակին եղծեալ էր անընթեռնլի բառս և հաստատել։

զարի պատկերս առաքինութեան երանգովք՝ ըստ նախատպին կերպարանեալ, որպէս ճշմարտութեանն և ինձ թուի։

Յայնժամ բաղձողն ես լինէի լուսատեսի և յածայնոյ թափանցանց լինելոյ նշուլից. զոր իբրև մաքուր հայելեաւ առ իս զփրկչականն ձգելով զէմ զնմանութի, հանգոյն արեգական 'ի խորս ուրեք ընդ յստակութե ջուրցն առաքելով զիւր ճառագայթսն։ Այլ նախ նորին ստէպ ստէպ Հոգւոյն ուղխից վտակօք ոռոգանէր զարգաւանդ երկիր մտաց իմոց. և որպէս 'ի ծաղկահոտ դրախտի՝ սպունգ ինչ թացեալ, այնպէս լցեալ ուռճանայր 'ի նմանէ բանական իմ ոգի. մինչ զի կարել ասել ինձ զայսն ժամու պատահիցն, իբրև զայլմէ պատմելով, "Մանուկ էի մտավարժ, և ոգւոյ բարւոյ դիպեցայ"։

Քանզի և վարժապետ մեհագոյն ունէի յայն պարգևեալ ինձ, հայր միանգամայն և հրահանգօղ հոգեկան վարժութեանց՝ զիմն Թէոդորոս, ըստ մերումն՝ Աստուածաշնորհ պատշաճեալ լեզուի. որ ոչ զառ յինքեանէն ևեթ բուականանայր շտեմարանել յիմումն ոգւոյ զբարիս, այլ 'ի յոլովից զպայծառագոյնն ծաղկաքաղ առնելով զշնորհաց, լիացուցանել զազահութեան իւրոյ ինև ջանայր զուսումնասիրութի. և գրե՛ թէ յազդմանէ Հոգւոյն՝ զլինելոցս նախատեսեալ, զառ 'ի յորդանցն հաւաքեալ պատրաստէր լինել բազմաց պիտոյից նիւթ, ծածկաբար զաստուածոյսն առ իս բարբառելով. "Այր մանր զմատեանց զայդ" պատգամատարդ հրաւիրեալ լինել խորայնելեանն ազին ։

Այլ եթէ երբէք ուրեք խորհէի արդեւք զհրամանացն խորտակել զլուծ, և խզել զաշխատութեան սամետէս, այլում ումեք ակն դնելով կենցաղական տարփանաց, աստուածայինն շնորհ անդրէն ձգեալ բերէր զիս կապանօք սիրոյ իւրոյ, սաստելով յականջս խորհրդոցն իմոց, "Զի՞ կայ քո և ճանապարհին եգիպտացւոց, ըմպել զջուրն Գեհոնի"։ Յաղագս որոյ ապա հաւանեալ իմ այսօքիւք՝ իբրու թէ ձայնիւ կոչողին զիս այ, զյանձնառականն ընդ առաջ տանելով բան, "Հաւասիկ եմ ես, առաքեա զիս"։ Զոր օրի-

նակ ձի որք նորավարժ ոչ կարացեալ յինքեանս զվերե-լակն իւր 'ի բաց ոստուցանել, զակամայ սանձիցն բռնադատութի դժոխակամութեն իւրոյ եղեալ գործիցէ քաջ հլութե ասպարէզ։

Այսքանք և այսպիսիք յիսկզբանն առ իս տայ նախախնամութեն մեծութի։ Որով իւիք ուսանիկ ես այժմիկ հարկանեմ զանձն իմ և նուաստանամ, հարցափորձեալ 'ի տնէ՝ թէ զիարդ անհանձարեղագունի հասակին տուեալ զգործոցն խոհականութի, իսկ զգեղապարեն ուսեալ ներշրջանակացն, և մակացականօքն փարթամացելոյ, գյոլովս անդուստ 'ի բաց յուղարկեցաք զգործնական իմաստութիւն։ Մ՛ինչ զի ըղձալի լինել ինձ այսօր, որպէս յառաջն ասացի, համդեր[illegible]արելութիւս և պատուոյս բարձրութ դառնա[illegible]համդ[illegible] մատաղագունի և անթարշամ 'ի մե[illegible] եղելոյ հա[illegible]կին, եթէ պարտ է ըստ առաքե[illegible]կան բանին՝ զ[illegible]անի և զմտորեալ անօթ լնուլ [illegible]ատուական զան[illegible], վըկայք լինելով յարմարութե [illegible]իմեանց համդիտ[illegible]որ և ազգակցապէս։

Այլ զի մի թու[illegible]յց այսգունիւ բերեալ ցանկութ զՊեղիայ զթեւտ[illegible]ղացուց գոռոզին ախտանալ, որ զզառամացեալն [illegible] Միդիայ առաջի առնէր առ 'ի յօշել զմարմինն [illegible]պէս թէ 'ի մեռելութենէ առ մանկութի զծերու[illegible] փոփոխել յուսալով, դարձցուք և զկարելեացն բո[illegible] հարցուք՝ 'ի բաց դնելով զանհնարիցն մտածո[illegible]. Ո՞ ի կարելի է բանական կենդանւոյս՝ ամենեցու[illegible] յամենայն ժամ լինել զինչ և կամեսցի. թէպէտ [illegible] ոչ համանդամայն 'ի միոջէ և 'ի նմին ժամու նե[illegible]րծելով զներհականսն. որ մանաւանդ ըստ [illegible]ութե երկոքեան 'ի նմին գտանին 'ի մարդն։

Այլ [illegible] է այնմիկ՝ որ զխոստացեալսն իբրև զըմ բըռ[illegible]լսս յուսոյն ողջունել գիտէ, յարատեւողացն [illegible]ժուարաշարժիցն հոգ տանելով ձգել ձեռն։ Որք միանգամ բնաւորեցան կամ ոչ հեռանալ 'ի մարդոյն, կամ թէ հեռացեալ՝ վաղվաղակի վերստին դառնալով յարահիւսել. և այս են առաքինութիք, որք առ հասարակ հոգւոյ և մարմնոյ զփառացն 'ի գլուխ յօրինեալ կապէ զպսակ։ Քանզի այլք 'ի տրա

մաղթութեանցն ժամանակաւ տրամակայեալ, լու-
ծանեն զնիմեանս. իսկ առաքինութիւն հանապա-
զորդ 'ի մեզ խնդրէ ընականալ: Վասն զի յայս իսկ
և գոյացուցիչն զմերս հաստատեաց բնութիւն, զի
բարեգործք և ճծասէրք եղիցուք. և խնքնիշխանու-
թեն կառօք՝ իբր 'ի տեսարանի ումեք 'ի սոսա նա-
հատակել հանդիսացուք. կնքելով որպէս թագա-
ւորական մատանեաւ ճծայինն երկիւղիւ զսիրտս մեր
և զձեռս, ընդ որս յարմարեալ պատկանի խորհուրդ
և գործ: Օ ի նոքումբք իւրօք, որովք առ մահն տա-
ղտկեալ անկայք, առ կեանսն դառնալ վերստին գի-
տիցեմք: Օ կնի որոյ ապա Ճշմարիտ և քաջ հովուա-
պետին հնարել հանգիստեալ առ նմանութեն, զառ
'ի նմանէ 'ի վայր մնացեալսն 'ի մերումն ընլով մարմ-
նի զվշտամբերութն. մինչ զի կարօղք լինիցիմք հա-
մարձակապէս որոց իշխիցեմքն հրամայել. "Նմանօղք
ինձ եղիջիք, որպէս և ես Քնի,,: Հանգոյն նմա ա-
ռաջի երթալ ընդ պատուիրանապահութեն շաւիղս.
և զսուղելոյն ձայն միշտ 'ի լսելիսն հնչեցուցանել
զաւետարանական քարոզութեն վարդապետութի,
զառողջ և զանմխաս բանիցն Ճարակեցուցանել դա-
լարիս, և առ մնուցիչ հոգեկան պատգամացն մնու-
ցանելով ջուրս, մակաղել՝ որ արտաքոյ ապականա-
ցուիս այսօրիկ է՝ 'ի հրաւիրեցելումն զմեզ վայրի.
անխորամատելի երեքկին շրջապատել փոսա պարըս-
պաւ եռանձնական հաւատոյն խոստովանութ: Եւ
ընդ գազանացն կռուել յարձակմունս, զի մի քայ-
քայեալ ցրուիցին մերձ 'ի դժոխս՝ գեղեցկապէս մի-
աւորեալ Քնի անդամքն. այլ ամենեքին միոյ գաւթի
միոյ քրիստոսական գաւազանին յարդարեսցին լի-
նել հօտ:

Բ. ՔԱՆԶԻ տեսանեմ 'ի յոլովագոյն և 'ի ծանր
իրս անկարգութի բազմացեալ, ոչ միայն 'ի ժողովըր-
դականս, այլ առաւել յուխտի մանկունս, և յա-
ռաջնորդս եկեղեցեաց: Որք մին լեզու՝ 'ի ձեռն միոյ
քարոզի 'ի մի եւլաք Ճշմարտութեան Ճանապարհ, և
արդ բազմահերձք և բազմաշաւիղք եղաք, յանչափա-
բար և զանազան և այլաձևսն առնելոյ՝ թէ զվարս և

եթէ զփառաբանութիւն որ առ Ած : Մինչ գրէ թէ զնոյն կրել զնմանս ըստ հնոյ պատմութեանն՝ պատերազմել մեզ այր ընդ եղբօր, և այր ընդ ընկերի, քաղաք ընդ քաղաքի և օրէնք ընդ օրէնս : Նորկրական զբօսանօքն և վաճառացն տուրևառութեամբք խօսակիցք և հաշուակիցք իրերաց լինելով, և առ խաղաղութեանն Ած ժողովեալք՝ զխաղաղութիւնն խնդրել խուճապիւք և խռովիւք : Նա՛ և իբրև այլազգիք և այլալեզուք՝ տանիմք և բերեմք զմիմեանս, լինելով սա նմա խուժ, և այլք այլոց դուժ :

Գ. ԸՆԴ որովք և զայս էհաս տեսանել . զի 'ի տեղիս տեղիս զսեղանս և զաւազանս ոչ առնեն ըստ հրամանի և աւանդութեան երանելեացն մերոց հարանց՝ քարեղէն և անշարժաբար զերկոսինն հիմնացուցանելով . այլ զսեղանն փայտեղէն և շարժուն առնելով, իսկ զաւազանն ըստ պիտոյիցն՝ ըստ ժամուն և ըստ տեղեացն, որ ինչ անօթով և 'ի ձեռն գայցէ, կատարեն զկարգն : Բերելով տարացոյց իւրեանցն սխալանաց տղայապէս և անփորձաբար, եթէ առհարկի 'ի սկզբանն յումքէ երագագրաւելի ինչ ցուցեալ եղև գործ : Որպէս Քնի սովորական սեղանաւն 'ի վերնատանն կատարել զխորհուրդ մարմնոյ և արեան իւրոյ . և Փիլիպպոս զներքինին յոր և իցէ ջուր մկրտեաց : Նոյնպէս և վասն այլ Առաքելոցն՝ ցուցանէ, ասեն, պատմութիւն՝ եթէ այլաձևապէս միմեանց, և որպէս զիարդ և ժամն խնդրէր՝ ընդ երկոսեանն անցանէին խորհուրդս : Նա՛ և սուրբն մեր Լուսաւորիչ փայտեղէն ընդ ինքեան շրջեցուցանէր, ասեն, սեղան . և 'ի գետս և 'ի վտակս, յոր և հասանէր, մկրտութիւն կատարէր :

Առ որս 'ի դէպ է ասել . եթէ ամենայնք 'ի Քրիստոսէ եղեալքն, ով դուք, յօրինակ մեզ բերելի է, ապա հարկ է և երեսնամեայ մկրտել . և Թլփատել ութօրեայ, և երեքօրեայ յառնել, և քառասնօրեայ յերկինս համբառնալ . զի ըստ այսմ օրինակի զայսօսիկ հաճոյ թուեցաւ ներգործել Քրիստոսի : Այլ և զնոյն ընթրեացն յերեկորին ժամու հաղորդել խորհրդոյն, զի տէրն ուրանօր

զհեղմն աւարտեալ կնքեաց, անդամնօր և իւրումն հիմն ձգեաց նորոյ ուխտի ։ Այլ այժմ բազում ժամն 'ի միջի կատարեմք ընդ մարմնաւորականն և ընդ հոգևորական սեղանն, և ութօրեայ մկրտիւմք ։ Իսկ վասն թլփատութե՛ 'ի Պաւղոսէ ընկալաք հրաման. "Եթէ թլփատիք, ասէ, Քն ինչ ձեզ ոչ օգնէ ,, ։ Իսկ նախ քան զկատարածն յարութե՛ տալ մարդկային բնութեան՝ Հիմենոս և Փիղետոս այսմիկ սկիզբն արարին ամբարշտութե՛ բանից ։ Այլ և ոչ ընդ դրունս երկնից կարողութի է ուրեք անցանել աստուածն կենօք 'ի մարդկանէ, "Որ կարապետն մեր Յս յառաջեալ եմուտ ,, ։

Դարձեալ Առաքեալքն զյոլով ժամանակս 'ի տաճարին զատ 'ի Քրիստոսէ նոցուն կատարէին աւանդեալ խորհուրդս. եթէ զաղօթից, եթէ զհաղորդութեան ։ Իսկ այժմ կանոնական սահմանաւ զմեզ պարըսպեալ զգուշացուցին նոցին աւանդապահք և ժառանգորդք, ոչ երթալ 'ի ժողովարանս և 'ի մատրունս Հրէից կամ հեթանոսաց ։ Այլ Առաքեալքն ընդ Հրեայս յիւրեանց ժամանակին զորոյ պասեքին տօնախմբեցին զօր. իսկ 'ի մէնջ եթէ ոք յանդգնեսցի ընդ Հրեայս տօնել, և կամ յառաջ քան զզատկանայն հասարակաւորութին, և նախ քան զմիաշաբաթին որ լուծանել զպահսն, ընդ նզովիւք 'ի հարկէ անկեալ դատանին ։

Այս ուրեմն զայն՝ նորագիւտ և դեռահաւակ ժամանակն ստիպէր առնել այնպէս. իսկ այս՝ խորհրդոյ և ա̃ծային տեսչութե՛ն. զի մեծութի առաջի անկեալ իրաց՝ զփոքունքն զանց առնել և անտեսել վարդապետէ ։ Քանզի անփոյթ առնել ծանուցին՝ համանգամայնցն է 'ի բաց բարձումն. իսկ թեթևագունիցն՝ ա̃մ ժամանակ առ ձեռն պատրաստ կազմութե. զի որպէս 'ի խաւարի և աղօտաճաճանչն է պատուեալ լոյս, ըստ նմին օրինակի լոյս եղելոյ՝ և դուզնաքեայ խաւարն վատթարանայ ։ Յաղագս որոյ ապա հարկ է հաւանութե՛ և հաւատովք հետևել գլխի բոլոր քրիստոսականացս, և սեղան և աւազան քարեղէն անշարժաբար յամենայն եկեղեցիս արձանացուցանել ։

Իսկ եթէ ասիցէ ոք 'ի հարցասիրաց և 'ի լասխ-

րաց, ե՞ր աղագաւ քարեղէն և ոչ փայտեղէն հրամայեցաւ կանգնել մեզ սեղանս: Նախ, զի և պատշաճագոյն իսկ առ յարմարութիւն խորհրդոյս՝ զնիւթս զայս տեսանեմք եղեալ. որպէս թէ զանյողդողդ և զանշարժահին փրկութիւն մերոյ կրողութիւն կարծրագոյն և գժուարաշարժելի գործարանաւ տնօրինել: Երկրորդ, զի և յառաջագուշակ եղեալ Եսայայ 'ի վերայ նմ հեթանոսաց, զոր առ եգիպտացիսն պատգամաւորեալ խօսի. « Յաւուր յայնմիկ եղիցի, ասէ, սեղան տն արձան կանգնեալ յերկրին եգիպտացւոց, և եղիցին 'ի նշան յաւիտենից »: Քանզի և արդարև իսկ սովաւ զյաւիտենական կենացն առ մեզ երաշխաւորեալ տեսանեմք քարունս: Որպէս և տէրն ասէր. « Մինչև արբից զդա, ասէ, ընդ ձեզ նոր յարքայութեան հօր իմոյ »: Երրորդ, թերևս արդեւք 'ի հանդերձեալ յաւիտենին 'ի Քնէ զնոյն ճշմարտապէս, որպէս և այժմ 'ի սեղանոյ աստի օրինակաբար, վայելեցեմք: Քանզի և նոյն ինքն Քնս վէմ անուանեցաւ. « Վէմն՝ զոր անարգեցին, ասէ, շինողքն՝ նա եղև գլուխ անկեան ». և դարձեալ, « Ի լեռնէ վէմ առանց ձեռին հատեալ », գուշակէր զնա Դանիէլ. և Եսայի ասէ. « Ահաւադիկ ես դնեմ 'ի հիմունս Սիոնի վէմ բազմապատիկ, ընտիր, զգլուխ անկեանն. և որ հաւատասցէ 'ի նա, մի ամաչեսցէ »:

Գ. ԲԱՑՑ տեսցուք և զայս ևս 'ի կարգիս. զոր մանաւանդ թէ և յառաջագոյն իսկ արժան էր յիշել իբրև զմեծագործ և զբազմերախտ 'ի Քրիստոսէ պարգևեալ մեզ աւանդ. զիւղոյն սրբոյ ասեմ, որով զգա-գլինս ոք 'ի մեզ ձգեմք 'ի Քնս միանալոյն: Քանզի յոյժ օտարաբար նովաւ և այլապէս 'ի միմեանց վարիմք. զոր և տեսաք իսկ առ մերով ժամանակաւ: Քահանայից ձէթ ընդունել յԵրուսաղեմէ բերեալ, խաչի ձէթ զնա անուանելով, և զնոյն նովին անմնօք առ մի ըստ միոջէ մկրտեալսն իւրաքանչիւր ումեք վերբերատին օրհնել: Ո որ դանդաղիմ ասել, որպէս թէ բազում անգամ օրհնութիւքն, յոլովագոյնս 'ի ներքս յեւղն կոչել զշնորհն. և կամ թէ 'ի գալստեանէ նորոյ շնորհին զհնացեալն 'ի բաց մերժել յամանոյ անտի: Եւ

դարձեալ նովին ձիթով օծանէին զմկրտեալսն և զերախայսն, այլ և զհիւանդս և զեկեղեցի և զսեղանս և զխաչս:

Որ թէպէտ և հոգին մի է, և առհաւատչեայ հոգւոյն եւղն նոյն է, սակայն բազմազգի մերում ըստ փրկութեան, բազմօրինակ և խորհուրդ փրկութեանն հրաշագործի. ըստ նմին և տեղիքն որոշին 'ի միմեանց՝ որովք փրկեալն լինիմք, և անուանք տեղեացն: Այս և աղօթքն և գործառնութիւնն ոչ ամ զմիոյ մատուցանէ մեզ փրկութեան պարգև, և ոչ մին զամենեցուն, և ոչ նմանապէս միմեանց օգտամատոյց մեզ լինելով. այլ երախայութեան օծումն զհրաւիրականն ունի դրոշմ. և աւազանին օծումն՝ զըստ հոգւոյն մեզ յարմարէ վերստին ծնունդ. իսկ որ զկնի մկրտութեան է օծումն՝ զորդեգրութեան այ 'ի մեզ կոչէ շնորհ: Դարձեալ՝ սեղանն կերակրէ զմեզ, և ոչ ծնանի. աւազանն ծնանի, այլ ոչ կերակրէ. խաչն մարտնչի ընդ մեր առ թշնամիսն, և ոչ ծնանի, և ոչ կերակրէ. 'ի հիւանդութեան՝ զառողջութեան ունիմք կարօտութի, ոչ ևս և զայլոցն: Սոցա ապաքէն և աղօթքն և քարոզութիւն և օծմունքն՝ բաժանաբար ըստ իւրաքանչիւրոցն վայելէ լինել խորհրդոյ: Եւ պատճառ ոչ ունիմ ասել, զանփոփոխութեն անելոյ զառաջնոցն այսպիսի խառնաքնդոր և եղծագործ սովորութեց, եթէ ժամանակի կարճութե, եթէ հիւանդութեց 'ի վերայ անկումն, եթէ անպարապութե յաշխարհականացն հարստահարութէ. զայս 'ի նոսա և յած թողլի է: Իսկ մեզ իբրև հայրասիրաց ումանց որդւոց՝ զառ 'ի նոցանէ անտես մնացեալն, ձեռն տալովն այ, տեսանել արժան է, և 'ի բարեկարգութի և 'ի բարեզարդութի ածել:

Ե. Զի տեսանեմք առ այսօրիւք և զայս ևս, զի ոմանք զառ 'ի մկրտութեն գալ հանդերձելոցն՝ զհրաժարելոյն 'ի սատանայէ՝ նոցա հարցմանց 'ի վերայ ոչ բերեն զերդմունսն, և ոչ զուրոյ Երրորդութեն խոստովանութի, և ոչ յերեխայութեն նախկին մատուցանեն ձեռնադրութ յօծումն. այլ միայն առ մկրտութիւն աւազանին վաղվաղեալ՝ 'ի ներքս արկանեն:

Նմանս ետին առնելով այնոցիկ՝ որոց Թագաւորեցուցանել զոք կամեցեալ, նախ քան զմարմնոյն ծածկել մերկութի՝ զպսակն 'ի գլուխ կապել յառաջեալք, 'ի միասին ընթանալով փառացն և անարգութեն։ Եւ կամ թէ որում ծնանել առաջի կայցէ, զծնունդն առաջի դիցէ յղանալոյն և երկնելոյն. զորս 'ի դէպ է անուանել խոստովանել զմեղ ծնունդս, և կամ վիժածս, և ոչ ծնունդս։ Քանզի պարտ է՝ նախ 'ի բաց կալ 'ի ծառայեցուցանող տեռնէ, և յապստամբ ծառայէ անտի. զի "Տիրեսցէ, որպէս Սողոմոն ասէ, ծառայն իմաստուն՝ տերանց անմտաց"։ Յետ այնորիկ ապա հաւատալ սրտիւ, և խոստովանել բերանով, յորմէ կեանքն հասցէ, զՀայր և զՈրդի և զՍբ Հոգի։ Նոյն յերեխայութեն կարգի առ գուրս մկրտարանին պատշաճեսցի լինել նմա՝ որ մկրտեսցին։ Եւ ապա զկնի այսորիկ զՀոգևորն ծնանել ծնունդ յաւազանին. և զեւթնեակն՝ ըստ եւթնեկացն որ 'ի մեզ հոգեկան շարժմունք՝ զգենուլ զՀոգւոյն շնորհս, զոր Եսայիան թուէ։ Զկնի որոց ապա և զորդեգրութեն անուն ժառանգել՝ յետ ելանելոյ 'ի ջրոյ անտի։ Որպէս և 'ի վերայ փրկչին յօրինակ մեզ՝ Հայր յերկնից աղաղակէր, թէ "Դա է որդի իմ սիրելի"։ Զկնի ամենեցուն, այսինքն յղութեն և ծննդեանն և ժառանգաւորութեն, ապա և զկենացն՝ որ յերկնիցն իջեալն է՝ ճաշակել կերակուր, զմարմին և զարիւն կենագործողին Քնի։

Նոյնպէս և ըստ այսմ օրինակի՝ երանելւոյն Կիւրղի Երուսաղէմի եպիսկոպոսի զերախայիցն կանոն պայծառացուցեալ է, և ըստ իւրաքանչիւր հաւատոցն բանից ընթերցուածս յածայլին գրոց հանգոյն միմեանց զուգեալ և եդեալ է։ Զոր 'ի սուրբ քառասներորդս պահոցն առանձնաբար 'ի վերայ նոցա կատարելով արտաքոյ ժողովրդանոցին, յետոյ ապա արժանի լինելին ընդունել զլուսաւորութի սրբոյ աւազանին 'ի մեծի աւուր Ճրագալուցի զատկին։ Որ թէպէտ և այն խափանեցաւ. վասն զի յայնմ ժամանակի առկատարելահասակս ոմանս կատարիւր երախայութեն կարգ. որք յիմաստ և 'ի բան հասեալք՝ կարող էին անձամբք իւրեանց լսել, և հաւատոք հրաժարել և

խոստովանել: Իսկ այժմ 'ի տղայութէ հասակի այ-
սորիկ միանգամայն 'ի միասին 'ի վերայ եկեալ գտա-
նին, 'ի ձեռն այնոցիկ՝ որք զմանկութեան 'ի մկրտութեն
մերձեցուցանիցեն: Սակայն նոյն խորհուրդ նմանա-
պէս առ նոսա և առ մեզ մատակարարի. զանազա-
նութիւն հասակացն և ժամանակացն այլաձևապէս
'ի վերայ բերել հրամայէ զկարգ և զձիր աւուրցն և
կանոնաց՝ ըստ երկայնութեան և կարճութե: Այլ ոչ
եթէ Հոգւոյն սուրբ փոփոխեալ գտանի յիւրմէն խոր-
հրդոյ, կամ առաւելեալ և նուազեալ: Այլ այս մինչև
ցայս վայր այսպէս և այսքան:

Զ. ՊՍԱԿՍ առ սրբօք և զայս ևս տեսանեմք յա-
մենայն անկարգութի սովորութե հիմնացեալ. զի փու-
սա, որք յամուսնութի անդր գայցեն, ոչ տանելով ըստ
օրինաց հաւատացելոց յեկեղեցիս 'ի մէջ ժողովրդոց,
հաղորդս առնելով ամ կարգաց և կրօնից քրիստոնէ-
ութե, և անդ յարժանաւոր տեղւոջն փնտա պսա-
կեսցեն: Այլ առանց ժամու և աղօթից, և առանց
օրհնելոյ և հաղորդութե, արտաքոյ ննան՝ ուր կամք
իցեն: Այլ քահանայն ընդ ձեռն ուրուք անդր եր-
թողաց հրամայէ տանել զպսակն. թշնամանելով
միանգամայն զպսակն և զպսակեալսն: Այլ որ ծան-
րագոյնն է քան զայսոսիկ, անարգանս ածելով 'ի
վերայ խորհրդոյ իւրն: Զի սուրբ առաքեալն ասէ,
թէ «Խորհուրդս այս մեծ է, զոր և ասեմ 'ի Քս և
յեկեղեցի»: Այլ նա յիւրմէ կամակորութէ փոքրկացու-
ցանել ջանայ զպատուական ամուսնութեն մեծախոր-
հրդութի, զինքն 'ի սպասաւորութեն այ արձակեալ
'ի բաց տանի 'ի լծոյ. զի որ զժողովրդեանն այ 'ի
վայր թողու զծառայութի, այ ոչ ծառայէ:
Այլ այս յորդւոց անտի Հեղեայ յայտ է. որք
անպարապ լինելով 'ի մարմնամոլութեանն յղփու-
թենէ, հանապազափակ զդուրս խորանին այ ընդ-
դէմ եկեղոց անդր ուխտաւորացն պահէին. և միան-
գամայն անկեալք տարագրեցան 'ի կամաց հրամա-
նատուին և յիւրեանցն պատուոյ: Ըստ նմին օրի-
նակի և սոքա զհեղգութեն մեծարելով զախտ, ոչ
տան թոյլ ամուսնացելոցն զհանդերձեալ կենացն

օրինակել յանձինս զխորհուրդ . այլ որպէս որք յամօթալիսն ըմբռնեալ իցեն գործս, այնպէս ըստ գիւտ և գաղտագողի զյաղթութեն առնուցուն 'ի գլուխ զպսակ, թագընկէցք առաւել քան թէ թագաւորք լինելով : Ոչ ոգին սուրբ տրտմեցուցանեն, որ սիրէ միշտ բացափայլութբ 'ի վերայ մեր զպարգևականն իւր ծագել ձիրս . իսկ զխանտացօղն բարեվայելչականաց մերոց իրաց խնդացուցանելով զսատանայ, մանաւանդ թէ և եղադ ներքսանկութեն նմա՝ յանշնոհակալուս բազմերախտութեն այ ներհորդեացի . զի անձանաչօղք բարեացն անձինք՝ հակառակացն ամ իրօք բանայցեն յինքեանս տեղի : Նու որ 'ի ժողովի բազմամարդութբ զուրախականսն ոչ փափաքէ գտանել, տրտմականացն՝ ծածկաբար ընդ էմն անցանելով՝ անբաղդայապէս համդիպեցի :

Է. ԻԱՑՑ գեր զանազանեալս վատթարագոյն և այս է մեղադրանաց փաստաւոր, յաղագս ածայնոյն վերջանալով հրամանի՝ առ իւրն երագոտնագոյնս ընթացի ցանկութիս . զթագաւորեցուցանելն ռամկաց հաւատալով ձեռաց, և զմարմնապարար սեղանոյն զիւրն տարածեացէ բազուկս : Ո ինչ զտոսա անուանեցից . հովիւս հօտավատնիչս, եթէ գազանս կեղեքիչս խաշանց . զկուսանացն իբրև զերկրորդանացն առնելով տխուրս և անկատարելագործ հարսանիս, իսկ զերկեակն 'ի պոռնկութէ և ոչ յամուսնութէ ածելով առ զուգաւորուին : Նախկին թոյղ տալով պղծութեանն յառաջել և յափշտակել զօրինաւորն զայն անկողինս, և ապա զգիշերայինն իբրև զտուընջենայինն 'ի լոյս բերել համարձակուի առեալ . օրէնսդրացն զպապանծեալն օրէնս դնելով, բանսարկուին լինել կամակատար . զի յառաջ քան ընդ բարին խընդալ մարդկան, զուարճացի չարաւն որոգայթադիր թշնամին : Իւ որս ոչ են մեզ յերկարագոյնս տողել բանս . ուր մարգարէն Եզեկիէլ զգսրովականն և զպառնալիսն կարգաւ առ սոսա՝ զոր առ հովիւսն Իսրայէղի յայ պատգամաւորեալ բարբառի . “Իգկաթնն ուտեն, ասէ, և զասրն զգենուն . և զխաշինան իմ ոչ արածեցին . և ցրուեցան խաշինքն իմ .

տող ես խնդրեցից, տես, զկապչինս իմ 'ի ձեռաց հալածանաց Իսրայեղի ,,: Եւ դժուարադատելի յոյժ է պահանջել համարս այնմիկ՝ որում ամենայնքն յայտնիք են և անմոռանալիք, յորում ոչ կարեն օգնել կաշառացն ակնառուք, և յանօգուտս բազմախօսիցն հասցէ պերճաբանութիւն:

Ը. ԲԱՅՑ տեսանեմք առ այսոքիւք և զայն ևս, եթէ ոմանք և վայելչագունից սովորութեանց ջանան խափանումն 'ի վերայ բերել. և զնծայայանութեան և զծննդեան նորին զօր, զոր 'ի վերջն յունուարի 'ի միասին տօնել սովոր է աշխարհս մեր, այժմ զծննդեանն սերեն ոմանք կատարել զտօնն. իսկ յայտնութեան խորհրդոյ՝ և ոչ միով իւիք կամին ձայն 'ի մէջ բերել, կապելով ամենևին զինքեանս ընդ ընթերցուածոյն հռոմմն. զոր երուսաղեմացիքն յութօրեայս յայտնութեան՝ յութ եկեղեցիսն իւրեանց երթալով փոխեցին տեղեացն և զկանոնմն կատարեն. օրհնապաշտութեան կարծելով զայս, եթէ զառ 'ի հնոցն զթերի ինչ ըստ խորհրդոյն խնդրոյ՝ կատարելագործել ումեք հրամայէ Հոգւոյն սբ: Եւ մանաւանդ եթէ եկեղեցի այ հանապազօր յառաջատութիւն աճէ և հաստատնայ. զի և չէր իսկ հնար միով մարդով ըստ միում գործոյ, և ըստ միում ժամանակի՝ զառավանդակն իւր կամն անս ընկնել այ 'ի մարդիկ:

Այլ զոր ասեմս, այս նախնական սովորութե 'ի վաղընջուց հետէ նախահաւեալ, և մինչև առ մեզ հասեալ. 'ի վերայ ջուրց զքսան և զութերորդն նուագելով յաւուրդ յայդմիկ սաղմոս, կցուրդ ասելով « Ձայն տն 'ի վերայ ջուրց » և զմկրտութեն 'ի Մատթէոսէ զաւետարանն ընթեռնլով օրհնէին զջուրն, ձեռն արկանելով 'ի նա: Եւ իբրև զլուծիչ ախտից հոգւոյ և մարմնոյ՝ ամենեքեան անդուստ վայելեալք, ցնծալից լինէին. որ և այժմ ոչ է ամենևին 'ի բաց խափանեալ, թէպէտ և խանգարիչն Իսրայեղի տզօր և կնատ զօրեղութն նկրտի խափանել: Եւ եթէ առ 'ի մնաս մեզ է յիշել զփրկչական մկրտութեն ձառս, թերևս չէր իսկ մկրտեալ Քի: Դարձեալ՝ թէ ծածկել զհռչակեալն Յորդանանու խորհուրդ մեզ անօրինէ,

մեք ընդէ՞ր դիմեալ անկանիմք առ նոյն ։ Հիմ և զգործեցեալն 'ի Տ՟նէ պատմագրութի՟ մեզ ետուն աւետարանագիրն սրբ հարքն ։ Ո՛ մի՞ և Հայր և Հոգին սուրբ 'ի վերայ ջուրցն նման վկայեալք՝ ոմն ձայնիւ և ոմն երևմամբ, զէակցութիւն յայտ առնելով ։ Նո՛ր ա-ղագաւ և կցուրդս գեղեցկանուագս զմկրտութեանն բանից յօրինեցին երանելիքն մեր վարդապետք ։ Նայլ ուրեմն անտես և անլուր Ճշմարտութեան սիրէ լինել անքան յամառութի ։

Թ. Նա այսոքիւք են ոմանք դարձեալ, որք 'ի մեր քառասներորդս պահոցն, զշաբաթ և զկիրակէ օրն ընդ տօնութի՟ և ընդ ապաշխարութի՟ արկանեն, որպէս և զայլ ևս հինգ աւուրսն զանցեալս ։ Ըստ տան թոյլ զփրկչականն 'ի նոսա կատարել զպատա-րագ . առ երեսս առաքինութե կեղծաւորին լինել ջատագովք, և որտիւք 'ի չարաչար աղանդաց կործա-նին խորխորատս ։ Փառաւորագոյնիս այսորիկ միա-շաբաթուս աւուր՝ մեծ է և դժուարադիտելի յոյժ խորհուրդ ։ Զի զանձառելի խոստացելոց կենացն յղանայ 'ի միջի մերում զՃշմարտութի ։ Յայսմ աւ-ուր Տ՟ն զմահ խափանեաց, ընդ նմին 'ի մեռե-լութէ զմարդկայինն վերածելով բնութի ։ 'Ի սմա և հոգին սուրբ առաքեալ 'ի հօրէ, զանմերկանալին մեզ զգեցոյց մխիթարութի ։ 'Ի սմին աւուր և զերկ-րորդն իւր խոստացեալ է առնել Տ՟րի յաշխարհ զգալուստն . յորում հրեշտակապետացն ուժգնա-կի հնչեալ լինելոյ փողոցն ձայնք . զոր մարգարէն աւա-գափող զնա անուանէ, այս նմքն վերջին և մահա-լոյծ և կենսատուք ձայն ։ 'Ի սմա և համօրակաց մեր բնութի 'ի բաց դիցէ զորս 'ի պատուիրանազանցու-թեն եբարձ՝ զքեռնիս մեղաց, մահու և ապականութե ։ Յայսմ աւուր բանամն 'ի նախահօրէն մերմէ աղխեալ դրունք դրախտին, բոցալինն 'ի բաց երթեալ 'ի նմա-նէ սուր, և փեսայն ընդ նմքեան 'ի ներքս 'ի լուսե-ղէնն տանի յառագաստ զհարսնացեալն իւր եկեղե-ցի ։ Նա և ընդ գիշերոյ շարայծեալս այս մերկանայ 'ի մէնջ զգալի լոյսս արեգական և լուսնի, 'ի բաց դնե-լով զդամպարունակ պայծառութին . զի մեր նմքնին եղե-

ցի մեզ լոյս մշտնջենական, և փառք նորա մեզ փոխա-
նակ տուընջենային լուսոյ :

Այլ զի սահմանեաւ դուռն ինչ 'ի վերայ սորա ասա-
ցից , սա է նախագոյակ լուսոյն ծնօղ , և սկիզբն
զէակս գոյացուցանողացն աւուրց : Սա է առ երկս
զիւրն կոչօղ Ճարտարապետ և առ հանգիստ : Սա է,
որ զլուսոյն արարիչ 'ի խաւարէ մեզ լոյս ծագեաց
և ծագեսցէ : Սա է անմահութե պտղոյն պտղաբերիչ :
Այլ զի այսպէս մեծագոյն է սա և մեծամեծաց իրո-
ղութեց պարունակօղ , յիրաւի ըստ գերակայ իւրում
Ճոխութեն՝ զառաւելագոյնն 'ի մէնջ պահանջէ պատիւ :
Այլ նախ քան զայլսն՝ զառանձնական զիւր ինքեան
զխնկագոյնն և զհարազատագոյնն , առանց որոյ ոչ ա-
նուն և ոչ փառք առ սա ասասցին . զառ 'ի յերկնից
ասեմ իջեալ կենսատուն կերակուր , զնոյն ուխտ և
նորոգօղն զմեզ 'ի մեղացն եղծմանէ : Այլ և յեր-
կրպագարշական զգօսանաց անտի դատարկանալն մեր ,
և զուարթագին իրօք 'ի վերայ եղանել ողքալեացն՝
պատուոյն սորա է առաւելութի . զի ազատ յամենեցունց
յայսցանէ տրտմագին և տաժանաւոր իրաց՝ զուրա-
խացուցանօղն զմեզ հաւատամք գոլ զերկիր :

Երկուք են որ յափշտակելոց են զմեզ տեղիք , և
զուգապէս միմեանց ընդդիմադրեալք . երկոցունցն՝
ոչ միայն 'ի միտս , այլ և առ երեսս բարեպաշտից
կերպացեալ ձևանան երևմունքն : Ո միոյն հրնդեակ
աւուրքն նշանակեմք զնմանութի . քանզի և հինգ ա-
նուանս 'ի գրոց ուսաք գոլ զտանջանարանացն . հուր ,
արտասուս , կրճումն , խաւար , որդն : Այլ երկուք են
աւուրք , որ զհանդերձելոցն առ մեզ նկարագրեն
բարուխս . որպէս և զերկուսս զայստսիկ լուաք լի-
նել արդարոցն բնակութի . զերկինս և զդրախտն :
“ Ծագեսցեն իբրև լուսաւորք յերկնի ” , տէրն ասէ . և
“ Այսօր ընդ իս ես 'ի դրախտին ” , ցաւազակն ասէր :
Այլ սոցա երկոցուն վախճան խորհրդոց՝ առ հան-
գիստ և ոչ առ տանջանս զմեզ հրաւիրեալ ձգէ .
միայն թէ զգուշանայցեմք , 'ի չափաւորագունիցն՝ ոչ
յանչափիցն եղանել սահման : “ Զանապարհ զար-
քունի գնասցես , ասէ . մի խոտորեսցիս , մի՛ յաջ և
մի՛ յահեակ ” :

Որ առ պատուիրանադրեալն ոչ ձգտի հասանել
կամօն, նա յահեկակողմանն դանդաչէ խոտորեալ
ճանապարհի. իսկ որ յառաւելազանցն նկրտի հրա-
մայեցելոցն հասանել, զաջակողմանն այնպիսին տե-
չացաւ գտանել զխոտորումն: Մինն յանդգնաբար
յապաշխարութեան հոսելով վտանգս, յառաւել
պընդութենէն յանյուսութեան ընկղմի խորս: Եւ
միւսն անչափաբար ընդարձակեալ, թողութեանն
յուսով զբովանդակ զերկիւղն 'ի բաց լուծանէ ըղ-
կայ: Իսկ որ յերկաքանչիւրոցն զանգիտեալ հրա-
ժարեցէ ծայրայեղ խոտորմանց, միջին իմն ար-
դարակ և անսասերիւրող ճանապարհաւ բերիցին:
Յորմէ ոչ փոփոխեսցի նախահարցն հաստատեալ
սահմանք. այս ինքն՝ ոչ տէրունականն աւուր զապաշ-
խարութեանն 'ի վերայ ածել զնսիր, և ոչ նմանօրէն
սմա զծոմականսն դատարկացուցանել և փափկացու-
ցանել զաւուրս: Նա ոչ դարձեալ յառաջերազանցա-
գոյնն սոցա ումեք վերանալ ելանել, որպէս թէ ընդ-
անգործութի և ընդ բերանալուծութի խառնել և
զքնոյն խորութի և զզինեձանութեն որովայնամո-
լութի. իսկ 'ի տոտմականսն՝ ծանրաբեռնութեն 'ի
ներքոյ դնանիլ տկար բնութեն. մարմնաւորան լինե-
լով յաւէտ քան թէ ախտաւորան. և 'ի կքել մար-
մնոյն՝ գտանել հոգւոյն զվհատութեն տարակուսանս:
Բայց խնդրէ ընդունել զպատուիրան իւր փրկչականս
այս մեծ օր՝ յերեկորեայ շաբաթուն մինչև ցերեկոյ
միաշաբաթուն: Վասնզի մինն՝ հիմն 'ի ներքոյ անկեալ
դնի պատուականագունիս այսմիկ աւուր, և միւսն
աւարտ 'ի վերայ եկեալ՝ բովանդակի: Զի այսանակ
ճոխագունիցն վերջոյ և առաջոյ պատուադիրքն յա-
ճախեն զփառս: Նոյն առաջինքն մեր և մինչև ցա-
ռաւօտ երկշաբաթւոյն ոչ լուծանէին զհանգստեանն
կայս: Նոյն որ շաբաթուս երեկոյ՝ կարգ պաշտամանն
սրբոց մարտիրոսաց 'ի սմա կատարի. իսկ ծունր ոչ
կրկնի, և ոչ զգործոյն ունի խոնջութի: Վասնզի մի-
ջասահման իմն երեկորինս է ժամ տուընջեան և գի-
շերոյ. տիւն մինչև 'ի նա յանգեալ, դադարումն ընդ-
ունի. իսկ գիշերն 'ի նմանէ յառաջ հաւեալ, զիւրն
աձեցուցանէ սահմանն: Սակս որոյ և երկոցունց մասա-

նաւուղաքար և հարազատացի սա, այս ինքն տունջեան և գիշերոյ, և օտարացեալ գտցի: Այսորինակ աղաղակ ընտրեցին ոմանք զայս ինչ և զայս դնել երեկորեացդ այդոցիկ, և զայս ինչ և զայս բառնալ. իսկ այլք զառ 'ի նոցանէ թողեալսն բերել, և զբերեալսն 'ի բաց տանել:

Ժ. ԻԱՑՑ արժան է ոչ միայն քրիստոնէան պատարագաւն և կերակրափոխութեամբ և անաշխատ համբերատեամբ պատուել զօրս զայս, այլ և զբոլոր նախատօնեալն սմա պարտ է աղօթիւք յուղարկել զգիշեր: Քանզի գիշերս այս, որ առ միաշաբաթիս լուսանայ, եղև յարուցողին զմեզ Քրիստոսի յարութեան ժամանակ: Սամն որոյ լինելոց է և համաշխարհականն 'ի նմին գիշերի յարութիւն: Իսկ եթէ ով ոք 'ի բազմացն իցէ կամ գիշերն այն, կամ գիշերոյն այնորիկ ժամ, յորում զմեզն է համբերձեալ նորոգել Քրիստոս, այս ծածկեալ է յամենեցունց. զի և Քրիստոսին ոչ բացայայտեալ եղև յարութեան ժամ: Այլ յաղագս այսորիկ յերեկորեայ շաբաթուն մինչև 'ի լուսանալ միաշաբաթուն սպասել և ակն ունել արժան է, զյաւիտենականն զգենուլ կենդանութիւն, լուծեալք 'ի կապանաց աստի մահու: Զայս և տէրն զմեզ յաւետարանի անդ զգուշացուցանելով ասէր. “Արթուն կացէք, զի ոչ գիտէք յորում ժամու տէրն ձեր գայցէ. յերեկորեա՞յ, թէ 'ի մէջ գիշերի, թէ 'ի հաւախօսի, և թէ յառաւօտին„: Զսկիզբն և զվախճանն 'ի ներքս ածելով, զամփոփեալ զբովանդակ զնորայն նշանակէ մասունս լինել արթնութեան: Այլ զի մի զարթնութիւն ընդ կենցաղականաց իրիք թուիցի շարախառնել ասացեալ զբօսանաց, յարէ առ նոյն ասելով. “Արթուն կացէք, և աղօթս արարէք„: Այլ ցուցանէ երկոցունցս այսոցիկ համդիպել շահաւորութեանց, որք հսկմամբ և աղօթիւք զբոլորագիշերս զայս մեծարել բաղձացան. 'ի վտանգիցն ապրել, և անճառելեացն հասանել պարգևաց. “Արժանի լինիցիք, ասէ, զերծանել 'ի նեղութեանց անտի՝ որ գալոցն է, և կալ առաջի որդւոյ մարդոյ„:

Իսկ զօրս 'ի միջի անդ յիշէ իսկզբանն և կատա-

րածի , այս ինքն զմիջագիշերն և զՀաւախօսն , զայս գտանեմք յառաջելոց աստի յայտնել միտս ։ Կարծեալ արգելու զնոսա , որք միանգամ զերեկոյս զայս կամ քնոյ՝ կամ արբեցութե մասն վիճակեալ Հանիցեն ։ Զի երեկանիրՀասէրն զմիջագիշերն Հրաւիրէ լինել իւր արթնութե ժամանակ ․ իսկ այն՝ որ զգիշերոյն սկիզբն ընտրեաց առնել արբեցուԹն սկիզբըն, Հարկաւորաբար այնպիսին Հանգուցանիցէ քընով զաւելորդն իւր տքնութի 'ի Հասարակ գիշերի․ իսկ զանզգայ քնոյն Թըմբրութիւն՝ Հաւուն յանձնեսցէ ձայնի, յինքեան 'ի բաց փարատել ։ Այլ այն որպէս զիարդ և իցէ , ըստ երկաքանչիւրոցն իմացեալ դատողութեց՝ զմի և զնոյն յայտնէ զՃշմարտութեն իրակութե ։ Այս ինքն զերկնային զուարթնոցն բերել զնմանութիւն , յաճախում յայսմիկ գիշերի Հըրկել , և անընդՀատաբար առ Ած յերկինս 'ի վեր առաքել զփառաբանութի յերեկորեայ, և մինչ 'ի ծագելն արեգական ։ Այլ և Հանդերձ յատանաւորութե առանց ծունր կրկնելոյ կատարել զասացեալս , ըստ նորին իսկ Տն Հրամանի ․ “ Եղիցին, ասէ, գօտիք ձեր պընդեալ ընդ մէջ , և Ճրագունք լուցեալք ․ և դուք նմանեալք մարդկան՝ որ ակն ունիցին Տն իւրեանց , Թէ երբ դառնայցէ 'ի Հարսանեաց ․ զի յոր ժամ գայցէ և բախիցէ , վաղվաղակի բանայցեն նմա ։ Երանի իցէ ծառայիցն այնոցիկ, զորս եկեալ տէրն գտանիցէ արԹուն ”։

Այլ և զօրինադրեալս մեզ զայս ինքեամբ յանձն էառ կատարել Քս, յորժամ եկեալ 'ի լեառն զգիշերն Տմ 'ի գլուխ զաղօԹսն Հանէր ։ Ուստի Թէ 'ի սմին իսկ 'ի գիշերիս յայսմիկ յօրինակ մեզ վարդապետելով զայս առնէր ․ վասն զի ոչ ասի յաղօԹելն՝ Թէ եդ ծունր , որպէս 'ի մատնութեն գիշերի գրեալ է , Թէ “ Սկսաւ 'ի վերայ երեսաց իւրոց, եդ ծունր և կայր յաղօԹս ”։ Այլ անդ զկնի Հրամայելոյն , Թէ “ Հսկեցէք և աղօԹս արարէք ”, և զքնոյն Հրաման 'ի ներքս ածեալ յաւելոյր ․ “ Ննջեցէք այսուՀետև , ասէ , և Հանգերուք ”․ զոր և յետ այնորիկ ասէր ․ “ Օ՜ն արիք գնասցուք աստի “ . . . . (*) . . Թեան,

* Այսուհետև Թուղթ մի անկեալ էր 'ի գրչագրէն ․ և որպէս 'ի գլխոյ

ասելով, «Օրհնեցէք զա̃մ գործք տն զՏր»: Ըստ նմին զօր մանկունքն յայնժամ 'ի փրկութե̃ անձանց ծանուցեալք առ խուրեանս զփրկիչն, իբր առ երկինս 'ի հնոցն վերաձայնեալ կոչէին զարարածս յօրհներգութիւն նմա, ըստ նմին և մեք՝ իբր անդամք մարմնոյ նորա, 'ի վերայ մեր և 'ի մեզ բերելով զգլուխն, մեծագոչ հնչմամբ աղաղակեմք 'ի յընդհանուր ամենայն արարածոցս տեսակս, ասելով. «Օրհնեցէք ամենայն գործք տեառն զՏր»: Որպէս թէ ազատացեալք մեք 'ի ծառայութէ մեղացն զզջմամբն հրով, ազատութե̃ն մերում հաղորդք լինելով, և բոլոր գոյացելոցն տեսակք՝ հարկաւորին ամենայն իրօք ընդ մեզ և նոքա գոհացօղք և բարեբանիչք լինել այնմիկ, որ ազատէն զամենեսեան:

Արդ այս որպէս զիարդ և իցէ, զայս մեզ ուսուցանէ, թէ պարտ է մեղուցելոցն՝ նախկին արդարանալ ապաշխարութե̃, և ապա իշխել և հրամանն տալ արարածոց: Յառաջագոյն ասել, «Մեղաք անօրինեցաք». և ապա ասել «Օրհնեցէք ամենայն գործք տն զՏր»: Դարձեալ՝ թէ «Ողորմեա ինձ Ա̃ծ ըստ մեծի ողորմութե̃ քում. ըստ բազում գթութե̃ քում քաւեա զանօրէնութիւնս իմ»: Այլ ապա համարձակել և վերաձայնել, թէ «Օրհնեցէք զՏր յերկնից, օրհնեցէք զնա 'ի բարձանց»: Այլ եթէ ընդէ՞ր երկիցս անգամ զնոյնս բարբառի. յաղագս վերջացելոցն 'ի նախաժամանողացն. զի զորս ծուլութն զրկեաց յառաջնումն, յերկարելովն վայելեսցեն յերկրորդումն: Այլ այս յաղագս Հարցինն և Դարծոցն, Ողորմեցին և Տէր յերկնեցոյն:

Իսկ ապա յետ այսորիկ զհրեշտակայինն ձայն միաբանաբար նուագել. որպէս թէ ապաշխարութեամբ զինքն մաքրեալ, և երկնային յօրինուածով հաստատեալ զանձինս յանմեղութե̃, ընդ նոսա և զուգաձայնեալ երգաբանէ: Այլ այն՝ որ յառաջագոյն զայս ամենեցուն հասարակապէս հրամայէր օրհնել զԱ̃ծ, այժմ թողլով զզգալիս և զնիւթեղէնս, վերաթեւեալ ելանէ յանմարմնականացն դասս. և ընդ նոսա զխաղաղասիրէն առ միմեանս և զզուգաբանակն լինել երգակցէ, ասելով. «Փառք 'ի բարձունս Ա̃յ, և յերկիր

խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն»: Այլ վասն զի հանեալ կարգեաց զինքն միոջ ըստ զուարթնոցն պարակցութիւն, այպա ըստ նոցա իմն կարգին ձևանալով, սկսանի այնուհետև աստիճանաւոր պատուովք փոխապատուելին բարեպաշտել. յառաջ մատուցանելով նախկին զփառաղանս, և զինի նորա հետևեալ ըստ կարգի սարկաւագն. յետոյ այպա իբրև զվեհագոյն՝ գերաստիճանեալն 'ի նոցանէ եպիսկոպոսն: Որպէս թէ 'ի ստորուստ 'ի հրեշտակական դասուց առ երիս երիս դասս անմարմնոցն զմի մի կշռեալ յեկեղեցականացն, վերատանելով առ սակաւ սակաւ երթալ հասանել մինչև 'ի թագաւորական գահոյսն. ուրանօր սրովբէիցն և քրովբէիցն ձոխացեալ պարէ բազմութիւն: Յաղագս որոյ և զերեքսրբեանն խառն ընդ նոսա միաբանական ձայնիւ սկսանի նուագել: Այլ այսպէս այպա զԱրևագալոյն ըստ դասուց վերաձայնելով զսաղմոս կատարեն:

Արդ են թանց սորա առաւօտին ասացեալ սաղմոսքն թուով վեց. զուգաքանակ առ 'ի մեզ տպաւորեալ զգայարանացս: Զերկուսն ապաշխարութեան և աղօթից, սակս ողբաձայնեալ հոգեկան մասինն՝ որ ըստ աղախնացելոցն որ 'ի մեզ դաշնաւորեցաւ հեշտութեան ճաշակելեաց և հոտոտելեաց: Իսկ չորքն 'ի նոցանէ՝ պարզաբար առ 'ի նուագերգութիւն առեալք. որպէս թէ 'ի քառից աստի գեղեցկաձայնեալ 'ի տեսանելեաց և 'ի լսելեաց, 'ի խօսարանաց և 'ի շօշափելեաց: Քանզի երկուքս 'ի սոցանէ իմաստասէրք անուանին. իսկ զմինս՝ արքանեակ բանի և սպասաւոր խոհականութեան կոչէր Հերակղիտոս, զլեզու: Իսկ ձեռք առ հնարագիտութիւն հայելով, արարչականք անուանին. բայց առաւելագոյն բանին 'ի պէտս օգնականութեան ներկայացեալք և յարառօցեալք: Զի զոր լեզուով ազդմամբ՝ լսելեաց մատուցանէ զբանն, զնոյն սա տարրաբար տեսանելեաց առաջի դնէ: Այլ պարտ է ուսումնասիրացն և խոհականագունիցն՝ նուագարանօք քնարահարու լինել երաժշտական հոգւոյն. այլ և զբոլոր գոյացելոցս ըստ իւրեանց հնչեցուցանել ձայնից տեսակս: Այլ այս մինչև ցայս վայր:

## ԺԵ · ՅԱՂԱԳՍ ԵՐԵԿՈՐԻՆ ՊԱՇՏԱՄԱՆՆ

Իսկ երեկորին աղօթիցն հաւաքումն այսպիսաբար յինքեան ունելով զեկուցանէ մեզ միտս ։ Վասն զի 'ի զանազան տուընջենային տաժանմանց անտի աշխատեալ և խոնջեալ լինի մարդկային կազմած, և խնդրէ անդուստ իբր 'ի ծանրակիր ինչ բեռանց զերծանել, և գիշերային անկողնացն պատրաստութիւն հանգչել և զօրանալ ։ Նախկին մատուցեալ ասէ ցա̃ծ. «Խոնարհեցո՛ տ̃ր զունկն քո և լո՛ւր ինձ, զի աղքատ և տնանկ եմ ես »: Հայեցա՛ց տ̃ր, ասէ, յաղքատութի̃ և 'ի տնանկութի̃ բնութե̃ս, թէ զորպիսիս և զո՛րքանս զբօսանաց և զբաղմանց սաստկութիւն յայգուէ մինչև յերեկոյ միալուծ ձգեալ բերեմ ։ Այլ վ̃ս զի պատճառ այնոցիկ զպատրանս բանսարկուն սատանայի գիտէ. «Ա̃ծ, ասէ, անօրէնք յարեան 'ի վերայ իմ. և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ »: Այս ցուցանէ՝ թէ 'ի պատուիրանապահութե̃ն իմմէ զզարեալ, եկն 'ի խարդախել և 'ի խաբել զիս. «Խորհեցան խափանել, ասէ, զգնացս իմ. Թաքուցին ամբարտաւանք որոգայթ ինձ ։ Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց. շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ գայթակղութի̃ »:

Ապա զմտաւ ածեալ՝ թէ և ոչ մի ինչ իրօք զորոգայթս զայս փշրել կարիցեմ, եթէ ոչ այնուիկ՝ որով գթասիրեալ երկնային Հօրն, փրկանաւորեաց զմեզ արեամբ միածնին իւրոյ, զնոյն և մատուցեալ յիշեցուցանէ. զոր յընդերեկս աւուրն ուրբաթու զանապական մարմինն իւր 'ի հաճոյս Հօրն Որդին միածին պատարագեաց ։ «Ուղղեսցին, ասէ, աղօթք իմ որպէս խունկ առաջի քո. համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկորի »: Այսուիկ ուրախարար զոհագործութբ̃ ապրեցուսցես զիս յորոգայթէ յայսմանէ, որ թագուցաւ ինձ 'ի գայթագղութէ գործողին զանօրէնութի̃ ։ Այս վասն զի գիտէ, թէ ներկայ ամանակիս գիշերային հանգիստս՝ զապականութե̃ս ոչ կարէ յինէն մերկանալ զգտնուն, եթէ ոչ վերջնումն

այնմիկ աղաղականահալած և մահալուծող գիշերին երթեալ հանդիպախնամ, զայն և ընդունել հայցէ 'ի նմանէ, 'ի յանդգունս ածելով զերեկորին զկարգեալ սաղմոսն. «Հանցես, ասէ, 'ի բանտէ զանձն իմ, և գոհանամ զանուանէ քումմէ»: Բանտ՝ զկեանս աշխարհիս անուանէ. և հանելն 'ի սմանէ՝ առ հանդերձեալ աշխարհին կեանս զերանեալն ասէ. վասն որոյ և 'ի վերայ բերէ, թէ «Ինձ համբերեն արդարք՝ մինչև հատուսցես ինձ»: Ուէ և վասն իմ ոչ փութացուցանես հատուցանել զխոստացեալ քո զարքայութիւն, զարդարոցն ընդ միս ածցես պսակադրութիւն. զի և նոքա մեզ մնան ընդունել զաւետիսն:

Զկնի որոյ ապա զՃրագացն նուագեն զկցուրդ. որպէս թէ 'ի տասներորդ ժամէ աւուրն սկիզբն առբարեալ աղօթիցն, արեգականն լուսով մինչև ցայնժամ լինելին պայծառացեալ. իսկ ապա զերեկորոդն՝ որ աղօտաճաճանչն է՝ 'ի ներքս ածելով լոյս, մանաւանդ թէ փոխանակ զգալի լուսոյն՝ իմանալի լուսոյն ճառագայթիւք զսրտին խնդրեն լուսաւորել զաչս: Եւ վասն զի ընդ ձեռն բանից՝ յանմարմնականացն մօտք ալացեալ եղանեն 'ի բնակութիս [1], ընդ նմին և բարեձևանալ ցանկանորեն: Նահապետական նախադաշնութեան ձեռնարկեն զնախապատուելին պատուել. և զոր ինչ արարին յառաւօտին աղօթսն, զնոյն կարգ և աստ յառաջ առնլով, 'ի սաղմոսողգէն և 'ի հրեշտակական դասուէն սկսեալ՝ տանին յանգել յեպիսկոպոսն և 'ի քրովբէական դասն. ընդ որս և զերեքսրբեանն զուգաձայնեալ՝ երգակցեն զսրբասացութիւն: Եւ այսպէս զհանգստեանն նուագելով զսաղմոս, արձակեն:

Արդ չորք են ընդ ամենայն երեկոյին աղօթից սաղմոսք, առանց հանգըստեան սաղմոսին. թերևս ըստ չորից տարերացդ, որ 'ի նիւթականութեան մեր գտանի մարմնի: Զի զվեցն, որով իմանալի հոգին միջնորդէ ըստ զգայարանացն, յառաւօտին աղօթիցն յիշեցաք սաղմոս. և չորք և վեց գումարին 'ի տասն, որ է առաջին կատարեալ թիւ 'ի միակէն սկսեալ, և կատա-

1 Ցօրինակին 'ի լուսանցան 'ի բնակիս:

ընկալագունից Թուաց սկիզբն . և զուգաթիւ 'ի ձեռն Մովսիսի տէրունեան աւանդեալ օրինացն ։ Նոյն և բնականագոյնք, որովք զուգիւք ներգործել բնաւորեաց առաջնորդականն որ 'ի մեզ միտք . աչօք, ականջօք, ռնգամբք, բերանով և ձեռօք ։ Բայց և բանական մակացութեն սովաւ թովանդակին հնարք ։ Քանզի մի ըստ միոջէ համօրէն տասն Թուով սահմանեցին զսեռականագոյն զէակացն սեռս ։ Նա և եռանկիւնի, 'ի միակէն առ չորսն վերանալով . ա, բ, գ, դ . որոց շարադրութիւն բաղկացուցանէ զտասն ։ Նաև այս մեզ յաղագս Թուոյ քառակի և միակի, որովք առաւօտին և երեկորին աղօթք ասացեալ եղեն ։

ԺԶ . ԲԱՅՑ արդ այսոցիկ այսքան բաւական լիցի, սակաւս ինչ 'ի բազմաց նշանակելով, յոլովիցն 'ի գիտութի ածել կամեցեալ ։ Ան զի և չէ իսկ առաջիկայս մեզ զստեղծեալն եղծանել հակաճառութք տարօրէն սովորութիւն, այլ կանոնական սահմանադրութք ըստ իւրաքանչիւր գլխոց՝ զհիմնացեալ զանկարգութին քակել և 'ի բաց հանել յեկեղեցւոյ այ, և փոխանակ նոցա զբարեվայելուչսն և զօգտակարագոյնսն 'ի տեղւոջն արձանացուցանել ։

ԺԷ . ՈՐԴ որովհետև 'ի միասին հրաւիրեալ գումարեաց զմեզ ածային տեսչութեն հրամանն, որք մի անգամ հաղորդք եմք միմեանց առ ած խոստովանութեն և նախագահութք, այլ և սիրով առ իրեարս եռացեալք, ոչ ինչ արգելու զառաջին արկեալս 'ի գլուխ բերել մեզ հոգեւորական ջանն ։ Քանզի և զայս 'ի մէնջ պահանջէ՝ որ հաւատացն 'ի մեզ զվերակացութս այսորիկ շնորհ . շուրջ գալով միշտ, տեսանել հոգաբարձուք զհօտ Քի, զոր պատուական արեամբն իւրով փրկեալս ազատեաց . և յամենայն հարուածոց բանսարկութն բժշկեալ, առողջս և անարատս ինքեան յօրինեաց մարմին, զգուշացուն զանուանս գրելով 'ի դպրութեն կենաց ։ Զի մի գուցէ, որ առ մահն զմեզ ածէ, 'ի վերայ եկեալ ծուլութեն քուն՝ յափշտակել համարձակութի տայ զհօտս հանդերձ հովուաւն աներեւոյթն գազանի . որ յամենայն ժամ շուրջ գայ, և

խնդրէ կլանել՝ զորս եթուքն . և զատանիցիմք եղեալ պարտականք արեան անձանց և յանձնեցելոցս ։ Այլ պարտ և արժան է հանապազօր վարդապետական մեր բանիւն ամրացուցանել զառողջսն, և վիրաւորեցելոցն զբարեգործութեն հրաման տալով 'ի վերայ բերել ապեղանիս . որպէս զի հնար լիցի ամենայն անձինն Աստուածութեն երկրպագուաց ժառանգել զերկնից արքայութին 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս . ամէն ։

## ԺԸ . ՆԱՐԻՆ ԿԱՆՈՆՔ

ա . ԵՊԻՍԿՈՊՈՍ կամ քահանայ կամ սարկաւագ կամ ով և իցէ յուխտէ եկեղեցւոյն, յարբեցութեան գտեալ՝ մի իշխեսցէ պաշտել զկարգն . մինչև աւուրս ընդ մէջ արարեալ, սրբեսցէ զինքն ապաշխարութբ, պահովք և աղօթիւք. և ապա համարձակեսցի մատչել 'ի կարգն իւր և 'ի հաղորդութին ։ Իսկ եթէ յամառեալ 'ի նմին որկորըստութե յամեսցէ, լուծցի ։

բ . Աշխարհական ոք զնոյն առնելով, մի իշխեսցէ առանց զղջման և ապաշխարութե հաղորդել . ապա թէ 'ի նմին զեղխութե մնացեալ յերկարեսցէ, որոշեսցի ։

գ . Ոչ է արժան յաւուր շաբաթու և կամ Ճրագալուցի զատկին պսակադիրս առնել, զի որ աւուրք յարութեն առաջի կան . յորս պարտ է աղօթել և հսկել, և հոգևորական կարգօք մխիթարել զանձինս, և ոչ մարմնական զեղխութբ զաւուրս աւուրցն խորհրդոց արհամարհել և ընդ ոտն հարկանել ։ Իսկ եթէ ոք գտցի զայս արարեալ, պսակն անվաւեր լիցի, և պսակադիրքն ընդ պատժօք եղիցին, մինչև ապաշխարեսցեն . և եպիսկոպոսին տեսեալ, որպէս և կամեսցի՝ մարդասիրեսցէ 'ի վերայ նոցա ։

Դ. Ոչ է արժան, յորժամ առ վաղիւ պսակ ընդունելոց են, յերեկորէն ժողովս առնել և արբենալ և զեղխել. այլ պարկեշտութ̃ք և աղօթիւք արժանի առնել զինքեանս պսակին օրհնութե̃ն և ա̃ծային հաղորդութե̃ն: Ապա եթէ ոք գտցի զայս արարեալ, քահանայն զօրն 'ի բաց փոխեսցէ, և որպէս աստացաքն՝ յայլում աւուր հրաման տացէ զգուշութեամբ և արժանաւոր կարգօք պսակիլ և հաղորդիլ օրհնացն:

Ե. Ոչ է արժան 'ի աւուրս քառասներորդս զատկին և մինչև 'ի աւուրս պէնտակոստէն հարսանիս առնել, և զաւուրցն խորհուրդն թշնամանել. զի ամենայն օր կիւրակէ է, և 'ի նոսա կատարի աստուածային խորհուրդն:

Զ. Արժան է 'ի աւուրս քառասներորդս պահոցն՝ յաւուր շաբաթու և կիւրակէի պատարագ մատուցանել ահիւ և երկիւղիւ, ըստ սահմանելոյ սրբոց հարանցն յամենայն ժողովս իւրեանց: Իսկ եթէ ոք համարձակեալ ընդդիմասցի մերում հրամանիս, կամ բանիւ կամ գործով, թէ ուխտաւոր է՝ լուծցի, և թէ աշխարհական՝ որոշեսցի:

Է. Այլ վասն պահելոյ և լուծանելոյ զշաբաթ և զկիւրակէ 'ի աւուրս քառասներորդս պահոցն, այս յիւրաքանչիւր կամս թողեալ լիցի. միայն գոհանալով զա̃յ՝ առանց խղճի և հակառակութե̃ն, և առանց բամբասելոյ զմիմեանս, զոր կամեսցի և արասցէ հանդերձ պարկեշտութ̃բ. երկոքեան ընդունելի են առաջի ա̃յ, և յաւանդութե̃ն եկեղեցւոյ Ն̃րի:

Ը. Արժան է և զհացն՝ անխմոր, և զգինին՝ անապակ հանել 'ի սուրբ սեղանն, ըստ աւանդելոյն մեզ սրբոյն Գրիգորի. և ոչ խոնարհել յայլ ազգաց քրիստոնէից յաւանդութիւնս: Զի 'ի սուրբ Լուսաւորիչն՝ յօրինականէն բերեալ զայս, առաքելաբար հրաման ետ կատարել իւրոց վիճակելոցն. որպէս և զայն օրհնութե̃ն յազգապացն զենմունս խառնել, և ըստ կարգի ղեւտացւոցն՝ ազգաւ սեպհականել զեկեղեցւոյ

չնորհ. և մեզ 'ի նմին պարտ է յարմանալ, և չթողուլ 'ի բաց, և չառնել նորաձևս ինչ:

ԽԹ. Պարտ և արժան է զսուրբ միւռոնն, այս ինքն զիւղն անուշահոտութեան, հայրապետին օրհնել. և իւրաքանչիւրոց եպիսկոպոսացն միանգամ 'ի զատկին հինգշաբաթին օր, որպէս և հրամայեալն է: Եւ քահանայիցն 'ի նոցանէ ընդունել, և օծանել նովաւ զսեղանս և զեկեղեցիս և զխաչս. առ մկրտեալսն մատուցանել միայն յորդեգրութե̃ն օծումն, որ յետ մկրտութե̃ն լինի. և յայլ 'ի պէտս օծման մի խառնեսցէ զնա, և մի ընքեամբ յանդգնեսցի օրհնել քահանայն:

Ծ. Պարտ և արժան է զմկրտութե̃ն ձէթ՝ քահանային օրհնել մի ըստ միոջէ ընդ մկրտելն, ըստ բաւականի ժամուն պիտոյից. և նոյնժամայն առ մկրտեալսն մերձեցուցանելով զօրհնեալն սպառել, և մի իշխել զմիանգամ օրհնեալն բազում անգամ օրհնել. և միայն օծանել նովաւ զերեխայսն և զմկրտեալսն ընդ մկրտելն յաւազանին, և յայլ խորհուրդ օծման մի իշխեսցէ մատուցանել զնա:

Ծա. Արժան է զհիւանդացն զձէթ քահանային օրհնել ըստ իւրում աղօթիցն, և ըստ բաւականութե̃ պահանջելոյ ժամուն պիտոյից:

Ծբ. Ոչ է արժան զսեղանն, յորոյ վերայ պատարագն Քրիստոսի մատչի, փայտեղէն կանգնել և շարժուն. այլ քարեղէն և անշարժ հիմնացուցանել: Իսկ եթէ ոք հակառակեսցի, և ոչ արասցէ ըստ հրամանիս մերում, և ըստ աւանդութե̃ կաթողիկէ եկեղեցւոյ, եպիսկոպոսն լուծեալ եղիցի 'ի պատուոյն, և սեղանն արհամարհեալ և անգործ մնասցէ:

Ծգ. Ոչ է պարտ զաւազանն յայլ իմեքէ նիւթոյ պատրաստել, և կամ ուրանօր և կամեսցի. այլ աւազանն քարեղէն հաստատել 'ի նմին իսկ յեկեղեցւոջն, և կամ անդէն մերձ յեկեղեցին 'ի մկրտատունն:

ԺԴ. Պարտ և արժան է զերախայիցն ձեռնադրութեանն և զօծումնն և զխոստովանեալսն առ դրունս մկրտարանին կատարել, և ապա տանել 'ի ներքս՝ ուր աւազանն է, և մկրտել։

ԺԵ. Պարտ և արժան է զայնոսիկ՝ որք պսակել հանդերձեալ են՝ քահանային յեկեղեցին տանել, և 'ի վերայ նոցա կատարել զկարգ և զկանոն ըստ օրինաց քրիստոնէից, և անդ 'ի սրբութեան տեղւոջն պսակել. զի 'ի միում տեղւոջ վայելէ լինել պսակին, և որ ընդունի զպսակն։ Իսկ եթէ ոք ոչ այսպէս արասցէ, այլ որպէս և իցէ իւրով կամակարութեամբ և ծուլութեամբ անարգեսցէ զօրէնս և զկարգ ամուսնաւորութեան, քահանայն լուծցի յիւրմէ պատուոյն, և զպսակաւորսն վերստին պարտ է պսակել ըստ օրինաց քրիստոնէից. որպէս և առաքեալն պատուիրէ, թէ « Ամենայն ձեր ըստ կարգի և պարկեշտութեամբ եղիցի »։

ԺԶ. Իսկ զերկեակսն նոյնպէս պարտ է ըստ առաջին կարգին միջնորդօք և խօսնականօք հաւանեցուցանել յիրերաց յօժարութիւն, և յեկեղեցւոյն և 'ի քահանայիցն օրհնութէ ընդունել զնշան զուգաւորութեան իւրեանց։ Իսկ եթէ ոք ոչ այսպէս, այլ յառաջ խանծեսցին և պղծեսցին առ իրեարս, զայնպիսիսն 'ի բաց մեկնեսցեն 'ի միմեանց, և զշնացելոց կանոն և զսահման 'ի վերայ դիցեն։ Իսկ եթէ ոչ առնուցուն յանձն մեկնել 'ի միմեանց, յետ տասն ամի ապաշխարութեան ողորմութեամբ և արտասուօք արժանաւորեսցին խառնել յեկեղեցի այ։

ԺԷ. Արժան է շաբաթն օր երեկունն մարտիրոսաց պաշտել, և ծունր չկրկնել, և զճրագացն օրհնութիւն ասել՝ Լոյս զուարթ'ն։

ԺԸ. Արժան է գիշերապաշտօն առնել յայգ կիւրակէ. և հսկմամբ և աղօթիւք և յստանաւոր սրբնութեամբ զանցեալ շաբաթուն աւուրց զյանցանս ջնջել, և արժանաւոր առնել զինքն մեղսաքաւիչ և կենդանարար խորհրդոյն. և ակն ունել ամենայն զուար-

թութք̄ և փութով Տեառնագալուստ փառացն, և ան- ճառ յաւիտենական արքայութեն :

ԺԹ. Արժան է յերեկորին և յառաւօտին զկնի ամենայն պաշտամանն՝ նուագել զՍուրբ ա̄ծն. և ապա զՀետ ընթեռնուլ յերեկորինն զՀանգստեանն սաղ- մոս և յառաւօտինն՝ զԱրեւագալին սաղմոս: Իսկ յորժամ պատարագ մատչի, 'ի սկզբանն անդ պաշ- տամանն յիշել զՍուրբ ա̄ծն. և զսոյն խորհուրդն յառաջաբանի անդ հաւատեաւ յայտնեցաք :

Ի. Պարտ և արժան է զԽաչեցարն երից անգամ զՀետ ընթեռնուլ, ըստ երից անգամ կրկնելոյ սրբասա- ցութեն. և մի նուազեցուցանել, և նուազ գտանիլ 'ի շնորհաց խաչին Ք̄ի :

ԻԱ. Արժան է 'ի գիշերին, յորժամ ժողովին 'ի պաշտօնն, նախ զառաջաբանիցն ասել զերեսուն սաղ- մոսն միաբանութք̄ 'ի թիւ՝ խոնարհ ձայնիւ. Առա- ջին՝ զերրորդ սաղմոսն: Երկրորդ՝ զութսներորդ եւթ- ներորդն: Երրորդ՝ զՀարիւրորդ երկրորդն: Չորրորդ՝ զՀարիւրորդ քառասներորդ երկրորդն. և նոցին զքա- րոզութիւն և զաղօթսն զՀետ ընթեռնուլ, զոր 'ի նոյն խոր- հուրդ արարեալ է երանելւոյ Յոհաննու Մանդա- կունւոյ Հայոց կաթողիկոսի: Քարոզութի, Օր- թուցեալքս: Աղօթք, Օքէն գոհանամք. և զՃաշ- դիսան նորին, Նայեա տէր ողորմութք̄դ քով :

ԻԲ. Արժան է զառաւօտինն ամենեցուն նմանս միմեանց զնոյն և ըստ նմին կարգի կատարել. զի այսպէս վայելէ քրիստոսասիրաց, որ նորին լեզուոյ և ազգի են, միաբանութք̄ փառաւորել զա̄ծ, և յօրինել զվարս ուղիղս. զի գրեալ է զորոց առաքելոյն՝ թէ "Էին ամենեքեան միաբան յաղօթս": Արդ զկնի Հարցինն և Ողորմեցուոյն և Տէր յերկնիցուոյն՝ զՓառս 'ի բարձունսն պաշտել. ապա ըստ իւրաքանչիւր աւ- ուր զկցուրդսն, զոր առեալ է 'ի սաղմոսացն: Երկու- շաբթւոյն, Լոյս տուր տէր աչաց իմոց: Երեքշաբ- թւոյն, Ի քեն է տէր աղբեւր կենաց: Չորեքշաբթւոյն,

Ես ասացի տէր ողորմեա ինձ: Հինգշաբաթուոյն, Ես առ քեզ տէր աղաղակեցի: Ուրբաթուն, Մտցեն ա-ղօթք իմ առաջի քո տէր: Շաբաթուն, Առաքեա տէր զլոյս քո: Ապա զկնի քարոզութե՛ և աղօթիցն՝ զերեքսրբեանն երգել զփառաբանութիւն հանդերձ որբոյ ածածնին կցորդիւն: Ապա զԱրևագալին սաղ-մոսն ասել, ըստ դասուց վերաձայնութե:

ԻԴ. Նոյնպէս և զերեկորինան հանգոյն միմեանց ըստ այսմ կարգի և այսու օրինակաւ կատարել: Յա-ռաջագոյն պաշտել զԽոնարհեցո՝ վերաձայնութք ըստ դասուց. զոր երանելին Ներսէսի Հայոց կաթողիկոսի յաւելեալ է. որպէս թէ կամելով սկիզբն ամենայն վերերգակ սաղմոսիցն՝ յաղօթելոյ առնել. զի և սաղ-մոսս այս աղօթք Դաւթի են, ըստ վերնագրին յայտ-արարութե: Զկնի նորա զԱպրեցո՝ մի ըստ միոջէ զե-րեսին սաղմոսն զմիմեանց զհետ, ըստ դասուց վերա-ձայնութք: Իսկ զկնի Մեսեդի և Ուղղեսցին ասե-լոյ, քարոզել և աղօթս մատուցանել. յետ այնորիկ զԵրեքսրբեանն նուագել նովին նմանութք. և վախ-ճան ամենայն պաշտամանն՝ զհանգստեան սաղմոսն ասել, ըստ դասուց վերաձայնութք:

ԻԵ. Իսկ կիւրակէին աւուր առաւօտինքն՝ այսպէս-նի խորհրդով յօրինեալ բերէ զկարգն իւր: Զկնի Հարցինն՝ Մեծացուսցէ ասել, վասն զի հարկաւորա-պէս պարտի այն՝ որ զՅարութիւն Քրի ճառէ՝ ընդ-նմին և զգերեզմանն յիշել, և զսուրբ կոյսն: Զի եթէ ոչ էր ծնեալ, ոչ էր հնար և ոչ թաղել. և եթէ ոչ էր թաղեալ, ապա և ոչ յառնել. արդ գերեզմանն յընթեռնլոյ զաւետարանն յիշեալ լինի. իսկ զսուրբ կոյսն՝ 'ի Մեծացուսցէն ասելոյ յիշեմք: Զի որպէս ընկալան 'ի միմեանց զփրկիչն, յարութիւն՝ 'ի գերեզ-մանէն, և գերեզմանն՝ յարգանդէն, ըստ նմին և վը-կայք պարտին լինել միմեանց վասն յարուցելոյն. և այս է ճշմարիտ մարդեղութեն և մահուանն Քրի խոստովանութի: Այլ սակայն 'ի ծննդենէն առ յա-րութիւն զհետ երթեալ միաւորին, իսկ 'ի յարութե-նէն առ ծնունդն վերջադարձիլ անկարելի. զի չև

գործեցելոցն 'ի Ք՟սէ պատմութ՟ն առնել անհնար է։ Այլ յաղագս այսորիկ՝ աւետիքն և ծննդեան և մկրտութ՟ն Ք՟սի 'ի միասին առնել տօնախմբելն. և նոքա ամենեքին, և որ այլն ևս իցեն տնօրինեալք 'ի Ք՟սէ, 'ի յարութ՟ն միաւորեալ բովանդակին։ Այլ այս յաղագս Մեծացուսցէ առնելոյ յառաւօտինն յաւուր կիւրակէի։

Յետ որոյ դարձեալ՝ մինչ չև զաւետարանն ընթերցեալ, որպէս թէ տակաւին ևս 'ի թաղման վարկանելով զտէրն, արտասուօք 'ի գերեզմանն առ նմա աղաղակեցեմք ասելով թէ "Արի, տէր, օգնեա մեզ և փրկեա զմեզ". և թէ "Ա՟ծ լուր աղօթից իմոց, ունկն դիր բանից բերանոյ իմոյ". և եթէ "Թագաւորեսցէ տէր յաւիտեան"։ Իսկ յետ ընթեռնլոյ զաւետարանն, իբրու թէ զնոյն կնքեն զյարուցեալն անդէն և անդ ընդ աւետարանական բանին 'ի դէմս մեր բերելով, հրամայեմք միմեանց՝ թէ "'Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր 'ի սրբութի, և օրհնեցէք զտէր"։ Վասն զի լուեալ աղօթիցն մերոց, յարեաւ և օգնեաց մեզ, փրկելով զմեզ 'ի մահուանէ՝ և թագաւորելով մշտնջենաւորաբար ամենայն տիեզերաց։ Բայց զի գիշեր՝ ոչ այնքան զժամանակն, որքան թէ զհրէական զանհաւատութ՟ն անուանելով. որ զաղջամղջին խաւարի արդարև բերէ զօրինակ, ըստ Եսայայ պանծալի բանին, թէ "Գիշերեաց կանխէ հոգի իմ առաւօտել առ քեզ ա՟ծ". այս ինքն թէ 'ի մէջոյ ամբարշտաց համարձակիմ բարեպաշտել առ քեզ ա՟ծ։ Արդ զայտոսիկ այսպէս և այսու օրինակաւ յառաջ վարելով զկարգն, արժան է՝ զկնի Փառք 'ի բարձունսն՝ յարութ՟ի ասել. իսկ զՍուրբ ա՟ծն՝ հանդերձ սրբոյ ա՟ծածնին կցորդիւն 'ի վերջն անցուցանել, որպէս և յայլ աւուրսն ըստ ասացելումս պատճառին։ Այլ զկնի ամենեցուն՝ զԱրևագալին նուագել սաղմոս, զոր Եղիցի անուն ա՟ն ասել սկսեալ են 'ի ժամանակացն Եզրի կաթողիկոսի։

ԻՆ. Պարտ և արժան է 'ի գիշերապաշտամանն, զկանոնացն զհետ բերել զչորս զայս քարոզութիւն. Վասն 'ի վերուստ խաղաղութեան, Վասն 'ի գիշերի

և 'ի տուընջեան, Վասն ուղղելոյ զգնացս մեր, Վասն գտանելոյ մեզ շնորհ. զոր արարեալ է վասն նորին իրի սրբոյն Սահակայ Հայոց կաթողիկոսի։ Այլ ըստ իւրաքանչիւրոցն զաղօթս զայսոսիկ հանգըստուքն իւրեանց. Տէր ա̃ծ մշտնջենաւոր. Հանգիստ, Ընտր հաստու բարեաց։ 'Ի գիշերի և 'ի տուընջեան. Հանգիստ, Հովիւ քաջ։ Ընկեալ եմք առաջի քո. Հանգիստ, Ք̃ում ամենազօր տէրութեանդ։ Վերջին

Օրհնեալ ես տէր ա̃ծ մեր, որ և զմեզ զմեղաւորս արժանի արարեր փառաւորել զքեզ. ընկալ բարեբար և մարդասէր տէր զամենեցուն մեր աղաչանս[1], զխնդրուածս, զխոստովանութիւս, զգոհացողութիւս. և շնորհեա ամենեցուն մեզ զքո առատ ողորմութիւնդ և զգթութիւնդ։ Մի՛ թողուր տէր զժողովուրդս քո, և մի՛ մատներ 'ի սպառ վասն անուան քո. մի՛ ըստ մեղս մեր առներ զմեզ. և մի՛ ըստ անօրէնութեան մերում հատուցաներ մեզ. այլ արա առ մեզ զողորմութիւն քո 'ի հազարս և 'ի բեւրս։ Օգնեա զմեզ յամենայն որոգայթից սատանայի, և փրկեա զմեզ յարքայութիւն միածնիդ քոյ տն̃ մերոյ Յ̃ի Ք̃ի։

Հանգիստ.

Քեզ յանձն առնեմք զանձինս մեր, ա̃ծ ամենակալ, հայր տն̃ մերոյ Յ̃ի Ք̃ի, որ 'ի բարձունս բնակեալ ես, և զխոնարհս տեսանես յերկինս և յերկրի։ Հայեաց, տէր, յաղօթս մեր և 'ի պաղատանս. մի՛ ցրեր զուխտ քո, և մի՛ մերժեր զմեզ 'ի ժառանգութենէ քումմէ. այլ ըստ առատ քում բարերարութեանդ՝ արժանաւորս արա զմեզ ծառայս քո անճառ լուսոյդ երկնից արքայութեանդ Յ̃իւ Ք̃իւ տերամբ մերով, ընդ որում քեզ Հօր և սուրբ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 'Ի լուսանցին աղօթս։

ԽԶ. Պարտ և արժան է յայտնութեան աւուր՝ կատարել զՋրոյն օրհնութիւն 'ի վերայ Ջուրց ըստ պատշաճի 'ի տեղիսն հանդիպելեաց, ձէթ արկանելով 'ի նոսա և աղօթս մատուցանելով. 'ի ձեռն այնորիկ յիշատակել զառ 'ի փրկչէն վասն մեր 'ի Յորդանան զմկրտութիւն: Որպէս և 'ի գալստեանն աւուր ոստսն բառնալ, և ձօձանակս շարժել, զնմանութիւն բերելով մանկանցն եբրայեցւոց ծափելոյն և ոստսն մատուցանելոյ. զի և աշխարհիս մերոյ մարդկան, և ամենայն քրիստոնէից աւանդութիւն կալեալ է զոյն:

ԽԷ. Եթէ ոք խաչ արասցէ փայտեայ, և կամ յինչ և իցէ նիւթոյ, և ոչ տացէ քահանային օրհնել և օծանել զնա մեռոնաւ սրբով, ոչ է պարտ զնա 'ի պաշտօն ընդունել և երկրպագութիւն մատուցանել. զի դատարկ և ունայն է յա̃ծային զօրութենէն, և արտաքոյ աւանդութեան առաքելական եկեղեցւոյ:

ԽԸ. Նաև զայնոսիկ, զորս օրհնութեամբ և օծմամբ կատարեալ է, որք միանգամ և իցեն ա̃ծային խորհրդոյն գործարանք, պարտ է զնոսա պատուել և պաշտել, երկրպագել և համբուրել. զի 'ի նոսա բնակէ Հոգին սուրբ, և նոքօք մատակարարէ 'ի մարդիկ զպահպանութիւն և զշնորհս բժշկութեան ախտից հոգւոց և մարմնոց: Նոյն եթէ մեռանել հասցէ 'ի վերայ այնոցիկ 'ի ձեռաց հեթանոսաց, մի հրաժարեսցէ. զի մեծագոյն այնպիսւոյն առաջի կայ յոյս, և ընդ մարտիրոսս համարեալ է:

ԽԹ. Ոչ է պարտ ամենևին անխտիր լինել և հաղորդութիւն առնել ընդ հերձուածողաց. այլ խորշել 'ի նոցանէ, և չհաւասարել ընդ նոսա 'ի հոգևկան և 'ի մարմնական սեղանս. զի պատկառեսցեն և փափաքեսցեն միաբանել ընդ ուղղափառութեան աւանդիչս:

Ծ. Արժան է յայտնութեան աւուր 'ի Մատթէոսի գլխոյն զմկրտութեան կարգին ընթեռնուլ զաւետարանն: Նոյն յամենայն իսկ ուխտօրեայն խառնել պատ-

շամ վարկանիմ ընդ ծննդեան աւետարանին զմկըր- տութիւն աւետարանին․ զի որպէս տօնն հասարակաց է երկոցուն, հասարակաբար պարտի լինել կարգաց- մունքն և պաշտօնն ։

ԼԵ․ Սովորեցին ոմանք զկիւրակէն օր մինչև ցճաշն պատուել, և անտի յառաջ լուծանել զաւուրն խոր- հուրդ։ Յաղագս նորին հրամայեցաք մինչև ցերեկոյն նովին պատուով պատուել զօրն․ արգելուլ զինքեանս 'ի գործոյ և 'ի ճանապարհորդութենէ, և երեկոյին ծանր չկրկնել, և յարութեան պաշտել։

ԼԶ․ Ոչ է պարտ 'ի չարաղանդ մծղնէիցն տեղիս, որ կոչին Պօղիկեանք, օթևանել․ և կամ յարել և խառ- նակից լինել, և երթևեկութիւնս առնել։ Նա և ա- մենեքին հեռանալ 'ի նոցանէ, փախչել և ատել զնո- սա․ զի որդիք սատանայի են և լուցկիք յաւիտե- նականն հրոյն, և օտարացեալ են 'ի սիրոյ կամաց ա- րարչին։ Իսկ եթէ ոք իցէ՝ որ յարեսցի 'ի նոսա, և 'ի սի- րելութիւն և 'ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ է զայն- պիսին խոշտանգել, և ծանր պատուհաս 'ի վերայ ածել, մինչև զղջասցին և առողջասցին 'ի հա- ւատս։ Իսկ եթէ դարձեալ վերստին 'ի նմին գտցին, զայնպիսին հրամայեմք ամենևին հատանել և ար- տաքս ընկենուլ իբրև զժանտ ախտ յանդամոց եկեղե- ցւոյ Քրի․ « Ո ի մի արմատ դառնութեան 'ի վեր երե- ւեալ նեղիցէ, և նովաւ բազումք պղծիցին »։

# ՆՈՐԻՆ

## ԸՆԴԴԷՄ

# ՊԱՒՂԻԿԻԱՆՑ

*Եթէ՝ 'ի սկզբան անդ մարմնանալոյն Քրիստոսի դէպ եղեւ ասել աւետարանչին Յովհաննու յիւրում կաթողիկէի, եթէ “Բազումք են ելեալ յաշխարհ նեռինք, որով մարթեմք իմանալ թէ յետին ժամանակ է”. զի՞նչ եւս ասասցուք մեք, որ ոչ միայն զնեռինսն չարագոյնս եւ բազմապատիկս քան զնոյնս ընդ մեզ բերեմք, այլ եւ ստուգապէս վերջնումն աւասիկ եկեալ հանդիպեցաք ժամանակի. որք յետին յետնոց[1] գտանին արդարեւ քարոզք եւ վկայք. զժամանակս ասեմ, եւ զմարդիկ ժամանակիս: Քանզի ահա գտաւ որոգայթ իբրեւ զվարմ հաւորսաց ձգեալ 'ի մէջ ժողովրդեան ազգի իւրոյ՝ ըմբռնել զախմարս եւ զպարզամիտս 'ի մարդկանէ, որք չարեաց 'ի չարիս վերացեալ ելին. 'ի պատկերամարտութենէ 'ի խաչամարտութիւն եւ 'ի քրիստոսատեցութիւն, եւ անտուստ յանաստուածութիւն եւ 'ի դիւապաշտութիւն: Այլ եւ խորամանկեալ գտին չարութեան իւրեանց զէն խողխողիչ քրիստոսասիրաց անձանց, դաշնակից լինելով բռնակալաց . . . . եւ 'ի հնութիւն ածեալ նոցուն ստուերագիր առասպելապատում մատենիցն զհամբակացն իւրեանց խմբաւորութիւն: Օ՛հ որոց 'ի կամակորութենէ անխորժելի եղեւ բանսարկուին գալ*

1 'Ի լուսանցսն չէփնոյն:

'ի բարեկամութի̃, ոչ լինչ են զարմանք թէ և արքա-
նեկաց նորուն ընտանեացն համախոհութեամբ :

Այս ուղիղ և ա̃ծաւանդ կրօնիցն մերոց լուսաւո-
րութ̃ նախատել զմեզ յանդգնին պղծալիցն իւրեանց
շրթամբք, կռապաշտս անուանելով տէրունեան ա-
ղագաւ նշանապաշտութ̃. զոր անխտրապէս յանդե-
դեւուն մնաց առեալ մեք կապեցաք զհուշակելին
զայն նշան ընդ ամենայն նիւթս, որ և քերովբէիցն
է սարսափելի և պատկառելի, զզօրութիւն հոգեկանաց
մերոց և մարմնականաց ախտից, զպակուցանօղ և
զզարհուրեցուցիչ դիւաց : Նոյն և կենդանագրեալ
պատկերաւ մարդացելոյ Բանին Ա̃յ, պախարակել
զմեզ անամօթին, յիմարեալք և խելագարեալքն
յայսոսիկ անհաւատութեանց, զորոց մարգարէիցն
զբանս ընդդէմ մեր բերելով, զոր առ 'ի յանդիմա-
նութիւն հեթանոսական կռամոլութեանն է ասա-
ցեալ : Ոչ կարացեալ տեսանել խաւարեալքն մտօք,
թէ զինչ նմանութի̃ է ա̃ծպաշտութեանս մերոյ առ
բազմաստուածութի̃ն հեթանոսաց. մեք զմիայնոյ
միածնի Որդւոյն Ա̃յ պաշտեմք զպատկեր և զնշան
յաղթութեան. իսկ զհեթանոսս անհուն և անթիւ
պաշտամամբք մոլորեցոյց սատանայ :

Քանզի են ոմանք 'ի նոցանէ որք զաչացն զհետ
երթեալ խաբեցան. որ լինչ միանգամ 'ի տարերցդ
յերկինս և յերկրէ գեղեցիկ լինչ առ երեսս հան-
դիպաւ՝ ա̃ծս անուանեցին. զաստեղս, զլերինս,
զբլուրս, զծառս, զքարինս : Այլ են դարձեալ, որք
յուժգնութենէ կենդանեաց կամ 'ի դժնէութենէն
երկուցեալք և ահաբեկեալք՝ 'ի պաշտօն նոցին դար-
ձան, և ա̃ծս անուանեցին. որպէս առ բաբելոնացիսն
վիշապն պատուեցաւ, առ եգիպտացիսն կոկորդի-
լոսքն : Իսկ որք անչափաբար գիջական ախտին հոգ-
տարան՝ զարական և զիգական անդամն նոյնաձևա-
բար ստեղծեալ պաշտեցին, մովաբացիքն և սիդոնա-
ցիքն զՔամովն և զԱստարտն : Նոյնք դարձեալ
զօգտակարս և զպիտանիս 'ի տարերաց այսի առ կեն-
ցաղական պէտս ընտրեալ ա̃ծացուցին. որպէս Պար-
սիկք և Մարք զհուր և զջուր և զերկիր. մինչ թէ հա-
ճոյ թուեցաւ նոցա 'ի մեռանելն, զմարմինս իւրեանց

գազանաց և թռչնոց ծախել տալ՝ քան թէ ընդ երկրաւ ծածկել, և նեխութեամբ անպատուել զյիմարաբար պատուեալն ։ Այն ոմանք 'ի Նոցանէ, որոց տեսեալ զարիւնարբուս և զթարախածուծս 'ի կենդանեացդ՝ իբրև զախտաբոյժս և զցաւահալածս մեծարեալ զնոսա ածս անուանեցին. որպէս գազացիքն և ակկարոնացիքն զտզրուկս և զճանճս և զմժղուկս։ Այլք 'ի Նոցանէ զընդդիմամարտս այլոց կենդանեաց զկենդանիս 'ի պատիւ առեալ պաշտեցին. որոց յաղթահարելն զմիմեանս՝ օգնականութեան սպասաւորութիւն առնել է իւրեանց ստացողաց։ Որպէս հիւսիսայինք զձի և զշուն. զմին վասն երագաշարժութեան ոտիւքն, որպէս թեւովք թռչել հեծելոյն զկնի որոյ [1] հասանելն բաղձայ. և զմիւսն՝ 'ի գազանացն յափշտակութենէ զտէր իւր յապահովացուցանելոյն սակս։ Իսկ կամ որպէս առ նոսին իսկ, զորոց բանս, կատուապաշտութիւն է մեծարգի եղեալ՝ կերակուր իւրեանց զկերակրոցն ապականիչս առնելոյ աղագաւ։

Բայց ամպարշտագոյն գեր զասացեալսն՝ այս էր հեթանոսականացն, յինքն անձին իւրում երկրպագու և պաշտօնատար լեալ. զի որ առ ընկերսն մելորեցաւ ածութեան կարծեօք, յինքն իւր յինքեան խոնարհեալ երկրպագէ յիմարաբար։ Ի համեմատութիւն գալով առ միմեանս մարդիկն, որով իւիք նուազեալ գտանէին առ ընկերն՝ նորին պատճառաւ յարարչութեան ստրճանի զգերազանցեալն համեալ դնէր. և խելագարեալ, զինքն արարած խոստովանիլ լինել։ Ըստ այսմ օրինակի քաղդէացւոցն տեսեալ զտիտանեանն զայն վիթխարի և աշխոյժ, վաթմնականզնեան գոլով ըստ երկայնութեան հասակին, իսկ լայնութեամբն վեցաքանակս ունելով կանգունս, վասն որոյ զգերամբարձեալն մարմնոյն տրամադրութեամբ՝ ածօրէն իմն պատուով պատուեցին. և սորա խաւար չարապաշտութեան զբոլոր տիեզերս ընդ իւրև կալեալ կուրացոյց։ Ըստ իւրաքանչիւր լեզուաց այլաձևելով զնորա զանուն, քուշացիք Նե-

1 'Ի լուս, որոյ ։

քրոմէթ կոչելով, բաբելացիք Բէղ, փղշտացիք Բահաղ, եգիպտացիք Ոսիրիս, պարսիկք Որմիզդ, Հայք Արամազդ։

Այս զօրօրինակ սորա ըստ բարձրութեան հաստակին հիացեալք՝ խաբեցան, վասն այլոց այլով իւիք քաջահաճութեանց պատահմանց ՚ի զարմացուածս եկեալք՝ ածս անուանեցին. զԿռոնոս վասն յոխորտաբար առ կուսարարութեանն յարձակելոյ. զԱրէս՝¹ վասն արեան հեղլոյ. զՀերմէս՝ վասն քաջախօսնակ ճոռոմաբանութեանն. զԶեւս՝ վասն անընդդիմամարտ ներհակացն զուգախառնութե. զայլս վասն այլ իրիք քաջաբարատիկ զմնակամսն ունելոյ որակութիւն. յորոց անուն եւ զկուռս պատկերակերպս քանդակեալս ածս անուանեցին։ Այս վասն զի յաղծապղծից անուն եւ ՚ի վատթարագործաց կուռքն կանգնեալ լինէին, դեւն չարաբանէր եւ ճշմարտատեաց ՚ի ներքս մտեալ դարանէր. եւ զկռապաշտիցն, ընդ ձեռն երեւելի անդրեացն առ իւրեն ձգեալ, ընդունէր զերկրպագութիւն։ Յորմէ դատանէին եղեալ դիւցն երկրպագուք ոչ միայն տարրապաշտք, այլ եւ դիւապաշտք. առնլով ՚ի նոցանէ դիւացն պաշտօն, եւ տալով զինքեանս փոխարէն ընդ ծառայութե։ Վասն որոյ դիւաբնակք եւ դիւաշունչք կռոցն լինէին սպասաւորք. այլ եւ դիւցազունք անուանեալ, զեր ՚ի վերոյ մարդկայնոյս համբառնային բնութեան։

Այս արդ վասն զի բացայայտակի քողախնդրեալ զկռապաշտիցն հոլանեցաք զյիմարութի, ոչ ինչ են պէտք դերանունութե զայնոսիկ, յաղագս որոց բանս ընթանայր, նշանակել. զի համագործուն իրի յանդիմանակաց եղեալ, ոչ կարօտանայ անուանակոչութեան։ Արեգական երկիր պագանելով, նորայուածս ըծակցին երկրպագուաց. մկնորսակացն լինելով պաշտօնամատոյց, յայնոցիկ մղեալ անկանին խորխորատ՝ որք զձի եւ զշուն ընտրեցին իւրեանց լինել աստուածս. եւ կամ յեգիպտացւոցն ընկղմին գազանամոյց գետ։ Ընդ խաւար զխաւարայինսն կատարելով ծանակու-

¹ Յօրինակին Առէս, այլ ՚ի լուսանցսն Արէս։

թիս, 'ի պարականական մայրաքաղաքականութեանցն վայր մը-տանգեալ խորին խոհերս : Իսկ կամ վասն ինքն զՔա-մովսայն և զԱստարտայն անկեալ զգարշելի կուռսն ոզգքն : Օ կայծակնահանու զխելն զգեհենին հրոյ ցայտմունս բարեբանիչք լինելով ընդ Յանեսի և Յամբրեսի յԱղոմպիոս լերին զետնաթաւալ և փրփրե-բախ զխելն խոնարհեալ երկիր պագանեն : Տղայոցն արեամբ զանգեալ ալեւր, զանօրէնն ժուայթելով զօրէնս, անդր եւս քան զխոզիցն զտանելն զանզգայ ծնողականութի :

Որք և վասցին դիւակունս առ երդումքն ուրեմն 'ի տանիս զեղջերուս բարձրահայեաց և երկնապաշտ լինելով, երդնուն այլ ընդ այլոյ աստացեալք. Բարձ-րեալն գիտէ : Իսկ զարեգակն աղաչել կամեցեալ, ասեն. Տէրեսկ, Լուսինկ. և 'ի ծածուկ զօղայեն և ըղ-ձերնոտ դևոն կոչեն ըստ Մանեայ և Միմոշի կա-խարդի մոլորութեանցն : Դոյնպէս և զատացեալ զա-ռաջնածին կնոջ զմանուկն 'ի ձեռբաձգութենէ առ-իրեարս չարամահ առնելով, զայն՝ յոյր ձեռս ոգեւ-պառ եղեալ սատակի՝ յաղանդապետական կարգեալ պատուի մեծարեն : Իսկ յիւրաքանչիւրոցն անուն երդմունս կատարել զառածանին. Երդուեալ, ասեն, 'ի միածինն որդի : Իսկ դարձեալ՝ թէ Ա կայ ունիմ քեզ զփառս այսօրիկ, յոյր ձեռս միածինն որդի զո-հի իւր աւանդեաց :

Նոյնպէս ազգի ազգի խարեկանաց բանիւք զանձինս ծածկեն. և զանգէտս 'ի հաւատացելոց յինքեանս հնարին յանկուցանել : Իսկ որպէս ինչ զարտուղ առ-նեն ազգ, զանդամն մարմնոց իւրեանց 'ի լիճն առ-զանելով, զձայնն եւեթ բերանովքն 'ի դուրս առա-քեն, միանգամայն և զտանելն և կոչելն. սոյնպէս և աստացեալքս այսոքիկ, տղմաւէրք և ժանտագործք, առ միմեանս անպատկառացոյցք են պղծութեան, իսկ 'ի մէնջ վրիպանուն պատրողաբանութ՟ք զանխլանալ կարծեն : Ոչ գիտեն՝ թէ որպէս հատոցն անկարա-ծածկելիք են ; ինքեամբ առ հոտոտելեաւն բերեալ, բուրմունքն. սոյնպէս և վասն գործոցն հողմով համ-բաւուցն զյոլովից բախեալ զեկուցանէ զլսելիս : Այլ սակայն և դժուարագիտելի է յոքնազան և բազմա-

խուռն 'ի նոսա անտառացեալ չարութիւն ։ Քանզի որոշաբար սատանայականն ուսմունք 'ի մի իմն տեղի հաւաքեալ ծովացան ուղիղ ամպարշտութիւն նոցա ։

Նախկին մծղնէութիւն պայղակենաւն խեշերանք ․ որք խրատեալք, և ոչ իմաստնացեալք, 'ի Ներսէսէ կաթողիկոսէ, զկնի նորուն մահուանն խուսեալք չոգան ղօղեցին յոլորտս ուրեք աշխարհիս մերոյ ։ Այլ 'ի նոսա հաստուածեալք եկին յարեցան կշտամբեալքն 'ի կաթողիկոսացն Աղուանից պատկերամարտք ոմանք ․ զի սիրէ առ համանմանին իւր հասանել վրիպեալն 'ի ճշմարտութենէն ։ Այլ մինչ չև էր նոցա զօրավիգն գտեալ զկարապետս դերաքրիստոսին, երկուցեալք և սարսեալք կային յուղիղ և 'ի դերապանծ կրօնից քրիստոսականաց․ մանաւանդ թէ և ինքն զինքն դատապարտէ անզգամն, յիւրոց տանջեալ խորհրդոց ։ Իսկ յորժամ այսպիսի որպէս մեծագունի ինչ և նորոյ՝ հնացելոյս և աղօտացելոյ՝ հասանել կարծեցին, յայնժամ 'ի դարանամտութենէ իւրեանց սողեալ յորջից՝ յաշխարհամէջս և 'ի ժողովրդականս համարձակեցան յարձակել տեղիս․ 'ի հեղեղական հեղձուցիչ ջուրցն մամն հասեալ նմա, Ջրկայ անուանելով ։ Սուրանօր 'ի միասին ընթացեալ կուտեցան ամենայն ուստեք, որպէս անգեղք աշխարհաց 'ի նեխաշաղիղ ինչ գէշ ․ և զանուանն իւրեանց զաղտախինս յանդգնեցան կախել զայնցանէ, որ զերկնից թարուէցն թուռն հարեալ ունիցին յուսով ։ Ընտրեալք 'ի մարդկանէ և ածային բնակութենէ արժանաւոր լինել գտեալք, որք 'ի վերայ երկրի զերկնայնոցն հանդիսանան կատարել վարս, զայսպիսեօքն անամօթին փոխել զամպարշտութեանն իւրեանց զմաղձ ․ անզգայեալք յայտնի հայհոյութենէ, կռապաշտս ասելով ։

Ոչ նուաստանամ որով նախատել վարկուցեալք անուամբս, բարեպաշտաբար լուեալ ․ զի արդարև իսկ կռեմք և կոփեմք և քանդակեմք և քերեմք որովք միանգամ ածպաշտութեանս մերոյ կատարին կարգք, զեկեղեցիս, զսեղանս, զխաչս, զպատկերս ։ Այլ ոչ եթէ ընդ ձեռն ախոցիկ և համապաշտօն հեթանոսացն․ զի նոցա մեհեանքն կռոցն

ընդունարանք չինեալ լինէին . իսկ եկեղեցիք բարե-
պաշտացն տաճարք աղօթից և խնդրուածոց, և
ժողովարանք որոց առ ած մերձենալ կամիցին ։ Յա-
ղագս որոյ և կարի յոյժ աննմանք միմեանց են տա-
ճարն այ և մեհեանք կռոցն . որպէս և Պաւղոս ասէ .
Դարձեալ՝ նոցա ձեռագործքն յախտէ իմեքէ ըն-
կիզմն ընկալեալ՝ դրօշեցան, որպէս յառաջին առա-
ցի . և իւրաքանչիւրոցն ախտից դևն 'ի ներքս ընթա-
ցեալ, ըստ կարգին իւր զկռոցն առնէր զմեհեանս . և
այս է, զոր մարգարէն ասէ, թէ “ Ամենայն կուռք
հեթանոսաց, դևք են „ . կամ բարկութ դևն, կամ
ագահութ, կամ սպանութ, կամ պոռնկութ ։
Իսկ եկեղեցիք հաւատացելոց ածսիրութեանն փա-
փաքանօք չինեցան . յաղագս որոյ և ած 'ի ներքս ե-
կեալ դադարէ, և երկնայինքն դասակցեալք 'ի նոսին
պարեն զուարթունք ։ Զի ուրանօր ած յայտնեալ,
ամենայն իրօք և զհրեշտակացն իմանամք շուրջ կա-
ցեալ 'ի սպասաւորութ բազմութ ։

Դարձեալ՝ կռապաշտիցն զմեռելոց ոմանց զնմա-
նութ յանշունչ նիւթս կերպագործեալ պատուէ-
րով, յաղագս որոյ միանգամայն և 'ի նախատակէն և
'ի պատկերէն զրկեալ լինէր յուսոյ պատկերագործն ։
Իսկ մեք զկենդանին և զկենդանացուցիչն քս յա-
մենայն նիւթս մարդակերպ նմանութ նկարագրեմք .
նորին աղագաւ և հաստատուն է յոյսն մեր . զի “ Որ
հաւատայ ի նա, ասաց ինքն, զմահ մի տեսցէ . այլ թէ
և մեռանի, կենդանի է „ ։ Նոյնպէս Եսայիաս ասէ .
“ Տր ած Իսրայէլի, 'ի ծագաց երկրի արուեստս լուաք,
յոյս բարեպաշտի . և ասիցեն, խորհուրդ իմ ինձ և
իմոցն „ . այս ինքն 'ի ձեռագործ արուեստէն զառաջի-
կայ յուսոյն խորհուրդ երաշխաւորեալ, սեպհականէ
անձինն և իւրայոցն ։ Իսկ զնոցանէ ասէ . “ Նմանի նոցա
եղիցին արարօղք նոցին, և ոյք յուսացեալ են 'ի նո-
սա „ . և եթէ “ Ամաչեսցեն ամենեքեան՝ ոյք երկիրպա-
գանեն կռոց, և ոյք պարծին 'ի դրօշելս իւրեանց „ .
և 'ի նոցանէ ամենաչար դևքն ըստ իւրաքանչիւրոց
ախտիցն վերակացութ զպաշտելութիս պահանջեն ։
Որպէս վասն պոռնկութ դիւին գրեալ է . “ Մտին 'ի
Բեեղփեգովր, և օտարացան յամօթ իւրեանց . և եղեն

զարշելիքն իւրև զսիրեցեալս,,։ Յաղագս տարածման դևւին ասէ. «Զոհեցին զուստերս և զդստերս իւրեանց դիւաց, և հեղին զարիւն անպարտ,,։ Ընբեցուն դիւին ադագաւ ասէ. «Յարեաւ կաթեաց ՚ի նոսա այս մոլորութե գինի և արբեցութե,,։ Տարրատափումն դևն տեխակէ զիւրմն հնազանդեալս, որոց և դիպեցին բարեքամեաց տարերց և գեղեցկակերպից՝ երկիր պագանել. որպէս և ուսան իսկ առնել կարկանդակս տիկնոջ երկնից, և նուիրել նուէրս արեգական։ Նոյնպէս յերկրի առ փայտն աղաղակել վարդապետեր՝ հայր իմ ես դու, և քարին՝ քո իսկ ծնեալ է զմեզ. և ՚ի վերայ լերանց և բլրոց հրամայեր զոհել, ՚ի ներքոյ կաղնեաց և կաղամախեաց և վարսաւոր ծառոց։ Իսկ ՚ի մէնջ «Զի՞նչ հայցէ տր ած մեր, բայց առնել իրաւունս և գործել զարդարութի,,. և «Մի՛ չարի չար հատուցանել, այլ յաղթել բարեաւն չարին,,. և թէ «Խաղաղութի արարէք, և ած խաղաղութե եղիցի ընդ ձեզ,,։

Այլ և որ սոցին նման՝ սիրելիք մեզ լինել հրամայեալ յոյ, իսկ ՚ի նոցանէ ատեցեալք՝ դիւացն հրամանաւ, և որ ինչ միանգամ մեզ հրաժարելիք՝ մեծարելիք նոցա։ Վասնզի սկզբնաչար դևքն և մարդատեացք, ոչ միայն թէ զնոսա՝ որ նոցա ոչ են՝ կամին տեսանել չարչարեալս և նեղեալս, այլ և առ իւրեանցն զդրդուին պաշտօնեայս յարձակել չարաբարութբ և զխստահարութբ։ Զոր և տեսանեմք ՚ի ծառայութե զեկեալսն սատանայի խեղանդամս և ոգեհաշմս, ծիւրեալս, ծմրդեալս, և կասեալս ՚ի զօրութենէ։ Իսկ մարդասէրն մեր տր և բարերար ընդ ողջոյն ոչ միայն թէ ոչ մախայ ընդ առողջութի, քանզի ՚ի նմանէ իսկ և եղեալք և պահպանեալք այնպէս, այլ և ախտաժետացն ՚ի վերայ բերէ զբժշկութեն դեղս։

Եւ քանզի ՚ի մարմնի ելով մեր՝ ոչ կարէաք նովին կապանակցաւ ընդ իմանալեաւն խառնել, և յայտնապէս ՚ի դէմս մեր բերել զարարչին մեծութիւն՝ որ և քերոբէիցն է անտեսանելի, և ցանկայ միշտ բանական բնութիւնս գերագունի և առաջնոյ պատճառին հասանել տեսութեամբ, նորին աղագաւ

ընդ զգալիս յածեալ, և 'ի նոսին թափառեալ, 'ի նոցանէ և զխորհրդեալսն իւր յանձն առնու ընտրել։ Այլ քանզի ինքեան կամօք և ծառայեցուցանէ 'ի ստեղծանելն զնիւթն, և տիրացուցանէ 'ի պատուելն, ագահէ այնուհետև բազմաց լինել և արարիչ և պաշտօնեայ։ Յայսմանէ մոլորեցան մարդիկ զանց առնել զմի իշխանութիւն, և բազմիշխանութեան ծառայել. ստուերս և կերպարանսն այլայլեալ տգեղանայր ձև, զբազում ախտից և ցանկութեանց յինքեանս երևեցուցանելով շաղախմունս։

Մինչև գթացեալ ստեղծողի պատկերին, եղև պատկեր ստեղծուածոյն. և որ 'ի սկզբանէ արար զմարդն ըստ պատկերի իւրում և ըստ նմանութեան, ինքն եկն, և 'ի վախճանի ժամանակաց այսոցիկ զկերպարանս ծառայի էառ, և 'ի նմանութիւն մարդկան գտաւ եղեալ. զի 'ի ձեռն այսորիկ միւսանգամ զարդարեսցի գեղեցկագունութիւն յօրինեալ պատկերին ըստ առաջին աստուածատեսակ նմանութեան։ Այս այս է, որ զմարմնացելոյ Բանին մեր վարդապետեաց մեզ պաշտել զկենդանագրեալ մարդկային ձևով զպատկեր, և զպատուականին զայն յաղթութեան նշան։ Որոց երկրպագեալ, ոչ յերկուանամ՝ նախ ինքեան բազմեցելոյն 'ի նոսա Քրիստոսի զերկրպագութիւն մատուցանել, ոչ հայելով յերևելին առաւել՝ քան թէ զանտեսանելին 'ի նմա զանձեալ ընդ միտ ածելով։ Թէպէտ և 'ի զանազանից և յայլատեսակաց իցէ նիւթն, զմի և զնոյն յամենեսին տեսանեմ զօրութիւն.

Մի թէ յորժամ տեսանեմ քարեղէն կամ ոսկեղէն խաչ յօրինեալ և կամ պատկեր, 'ի քարն կամ յոսկին՞ դնիցեմ զյոյս իմ։ Ո՛չ նոցա է՝ որք ընդ քարին և ընդ փայտին չնային. որպէս մարգարէն ասէ, և զորոց Դաւիթն ասէ, թէ «Կուռք հեթանոսաց արծաթ և ոսկի են»։ Այլ մեք զայն միայն յիւրաքանչիւրոցն բացորոշեալ պատուեմք 'ի նիւթոց, յորոց վերայ զնմանութիւն պատկերին Քրիստոսի և խաչին իւրոյ ձևացուցանիցեմք։ Արդ զի անուամբ և նմանութիւն զերկուսին հարկեցուցանէ, Քրիստոսի բնակել 'ի նոսա, և մեզ աներկբայելի սրտիւ մեծարել։ Այլ ոչ

միայն այս, այլ և քահանայական ձեռամն և բանին զԵր-րորդութեան սրբոյ 'ի նոսա կոչեալ բնակեցուցանէ զօ-րութիւն. որով ձեռամբ և բանիւ պարգևք և պատու-հասք 'ի մարդիկ կարկառին, որովք և երկնային փակեալ և բացեալ լինին դրունք, որոց և տարերքս ամենայն տեղի տուեալ հնազանդի:

Եւ զի՞նչ ասեմ զբանն և զձեռն, որ և զի նոյն իսկ հոգւոյն սրբոյ առհաւատչեայն վստահացուցանէ զմեզ, իբրև 'ի գերագանցեալս ոմանս և յատուա-ծայինս 'ի նոսա մերձենալ և ապաւինել. զիւղոյն սրբոյ ասեմ զհեղումն, որով իւիք զքահանայսն և զթագաւորսն 'ի նախնումն աստուածեղէն հոգին յանցնիւրսն շարժէր ներգործութիւնս: Եւ ամե-նայն ուրեք առ ամենեսին պարգևաբաշխ հոգին իւղովս այսուիկ զիւրն գտանի կատարեալ խորհուրդ: Որօրինակ երկտեսակ բնութիւնս է մարդկային, երկպատկաբար և նորոգօղն հոգին առ մեզ մերձե-նայ. նիւթականաւն զզգալին զուարճացուցանէ, զի "Եւղ զուարթ առնէ," ասէ մարգարէն. և իւքեամբ զի-մանալին որ 'ի մեզ զօրացուցանելով. "Հրամայեաց, ա-սէ, ա̃ծ զօրութե̃ քում՝ զօրացուցանել զոր հաստատեցեր 'ի մեզ": Եւ զի մի կեղակարծելի ումեք թուիցի իրա-ղութեան իւրոյ գործ, մարմնաւոր տեսլեամբ 'ի սկըզ-բանն 'ի վերայ առաքելցն իւրոյ իջեալ հանգչիւր, առ-հաւատչեայ զայնպիսաբար երևելն աշխարհի կամե-ցեալ գործել աներևութապէս իւրոյ գալստեանն. որում աշխարհ ոչ կամեցաւ զաչացն տեսութե̃ սրտին կազմել տեսուե̃ ճանապարհ: Եւ այս է, զոր ասէր տէրն՝ եթէ "Աշխարհս ոչ ընդունի զնա, զի ոչ տեսանէ և ոչ ճանաչէ զնա. բայց դուք տեսանէք, զի առ ձեզ բնակէ":

Որպէս և ահաւասիկ մեք բանիւ առաքելոցն հա-ւատացեալքս ամենասուրբ Երրորդութեան, նկա-տեմք օծեալ իւղովն զփրկութեան գործարանս. զե-կեղեցիս, զսեղանս, զխաչս, զպատկերս, և հաւա-տամք ընդ նմին 'ի ներքս գալ ա̃ծային զօրութե̃ն: Եւ այսուիկ որոշեալ լինին նոքա 'ի համատեսակ յիւրա-քանչիւրոցն նիւթոց. զատանիմք և մեք յայնցանէ, որք 'ի համանգամայն նիւթ ա̃ծութեանն կարծեօք

խաբեալք գրաւին ։ Եւ նշանակ հաւատարմութեան այս է մերումս բանի . զզօրութիւնս և զնշանսն 'ի նոցանէ առ մարդիկ կատարել, դիւաց սաստել և փախըստեայ լինել ։ Ըստ գրեցելումն, եթէ « Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան », որ մանաւանդ անհաւատիցն՝ քան թէ մեզ 'ի դէպ էր ըմբռնել հիացմամբ և 'ի հաւատս հպել . զի « Նշանք անհաւատից և ոչ հաւատացելոց » ասէ Առաքեալ ։ Ոչ կարէին անշունչ նիւթք 'ի կենդանի մարդիկ օգնականութեան մատուցանել շնորհ, եթէ ոչ ած 'ի նոսա էր բնակեալ ։

Եւ մի՛ գայթագղիր տարակուսեալ, 'ի լսելն և ոչ ցասմամբ 'ի վերայ հարկանել հայհոյչացն և թշնամանողաց . քանզի հասարակաբար երկոքումբք տեսանեմք վարեցեալ զած՝ երկայնմտութեան և վրէժխնդրութեան, ոչ ամենայն տեղի կամ ժամանակ կամ դէմ երկոցունց կամ միոյ 'ի նոցանէ . այլ է երբեք, և ուրեք և ումեմն և ոմամբ 'ի նոցանէ, որպէս զկարգ ճանաչէ ածային կանխատեսութիւնն ։ Եւ մի՛ յամառեսցիս՝ անհաւատութեան խորհրդովք 'ի վայր անկեալ . իբր թէ անհնար է այ յամենայնսս լինել 'ի նմանէ գոյացելոցս տեսակս . « Ինև, ասէ, լի են երկինք և երկիր » . և « Լի են փառօք նորա ամենայն երկիր » . այլ առ ներգործելն այնոքիւք միայն տնօրէնել, որովք կամեսցի ինքն, և ժամանակին պահանջեն պէտք ։

Հերձանէր զծովն Մովսէս գաւազանաւն, և յամուլ վիմէն գետս զնացուցանէր . ոչ եթէ անշունչ փայտին զայնպիսիկ համարիցիմք առնել զհրաշագործութիւնս, այլ որ 'ի նմա դարմանեալն էր՝ ածային շնորհացն ։ Որգելոյր տապանակն զՅորդանան գետ . զնոյն և բաժանէր մաշկեակն Եղիայի ։ Երիքովի 'ի վայր կործանէին պարիսպքն 'ի տապանակէն ։ Ոզա մեռանէր յօգնելն տկար զօրութեան հզօրագունին . զայլազգիսն հարկանէր յերաստանս, և 'ի սրունս . զդագոնականն ընդ յատակս բագնին տապալեալ ցըրուէր զկուռս, կռապաշտիցն ածպաշտութեան շաւիղ ցուցանելով ։ Մի՛ թէ յանշունչ քարանց կոփեալ պնակիտքն զայսպիսիկ առնելով, եթէ ո՞չ ինքնին ած՝ որ

'ի նոսա միաւորեալն էր, ժամանակին զայն պահան-
ջեալ։

Նոյն արդ զի ցուցաւ՝ թէ 'ի հնումն և 'ի նորումն կամք եղեն ա՟յ յանշունչ նիւթս լինել, և 'ի նոցանէ առ մարդիկ զօգտութիւն մատակարարել զպէտս, ցուցցուք և զայս, թէ և պատուելի և պաշտելի մեզ այնոքիկ՝ յորս ա՟ծ իջէ։ Բայց մի 'ի վերայ վաղեսցեն պաւղաքար ասացելոցս քանորսակացն դրժողութիւք. իբրև թէ զի ամենայն ուրեք ա՟ծ, ապա ամենայն գոյքս պաշտելիք. անսուտ ուրեմն զարարածս փոխանակ արարչին մեծարօղք։ Քաւ լիցի. այլ 'ի հասարակացն միայն նոքա, զորս 'ի ձեռն առեալ՝ իբրև գործեաւ իւիք ա՟ծ զբարերարութեանն 'ի մեզ հեղու զխնամն։ Բազումք 'ի Բաբեղոնի պատուական անօթք ոսկւոյ և արծաթոյ, այլ միայն յաղագս ա՟ծային անօթոցն կրեալ զպատուհասն Բաղտասար արքայի. և յոքունք յաւուրս Դաւթի ոսկեզօծ յօրինեալ արկեղք, բայց կազմածն և նուագել միայն տապանակին ա՟յ առաջի 'ի Դաւթէ լեալ։ Ոչ ինչ պակաս և առ Սողոմոնիւ գեղեցկակերտեալք 'ի տեղիս տեղիս տաճարք, այլ յետ բայեղեանն ազգ յառ 'ի նմանէ շինեալն եւեթ ժողովեալք ամենայն ուստեք 'ի խնդրել զա՟ծ։ Բաս այսմ բանի և տէրն յանդիմանեալ սաստէր այնոցիկ, որ զպարունակօղսն անպատուեալ՝ զտաճարն և զսեղանն, պատուեցին յատուկ զպարունակեալսն առ 'ի նոցանէ՝ զպատարագն և զոսկին. ասելով, "Որ յերդնու յընկալեալսն՝ երդուեալ լինի յընդունօղս նոցին"։ Զնոյն և մեզ 'ի դէպ է ասել, որ պատուէ զխաչն Ք՟սի և զպատկեր նորին, զնոյն ինքն պատուեալ լինի զՔ՟ս. նոյնպէս և թշնամանելովն զնոսա, 'ի Ք՟ս լինի մեղուցեալ թշնամանիչն։

Եւ այս այնքան առաջի անկեալ ձգտեցաւ բանս, որքան թէ զկեղուապարիցն առ 'ի պապանձեցուցանել զաւելաբանութիւնս. որ ծամածռեալ խաթարել զմիտս մեր խորհին կռապաշտութե՟ անուամբ։ Եւ որս ասելի է. "Որ անօրինելոցն է, անօրինէ։ Բայց դուք ելէք 'ի միջոյ նոցա և մեկնեցարուք. և 'ի պիղծս մի մերձենայք։ Զի ա՟մ տուեալ, յա՟յ ոչ անկեալ, խլեսցի"։ Զոր և հրաւիրեալ առաջի կայցուք բարձրագոյն և

ամենազօր բազկին, որ կարօղն է խարշել իբրև զփուշս ապարանկի զհեթանոսական թոյնն, մղեղել և արտաքս ընկենուլ. և դնել զդաստարս նոցա 'ի բնակութիւն գազանաց երկրի և թռչնոց երկնից:

Արդ զմեզ յառաջ կոչէ նա[1] ինքն ընդդէմ յառնել երկակաց ոմանց առ միմեանս մենամարտուցելոց յայլազգեացն զնդից, և ամբարտաւանութք յառաջ կոչօղաց զմեզ, որպէս յանժամ Գեթացին զԴաւիթ: Այլ և զկենդանականն որ 'ի մեզ հաւատ, որեալ իբրև օձի խօսարանաց իւրեանց սրով սաստակել սպառնացեալ, որ ըստ նմանութեան թռչնոց ճախրեն դիւրադարձ լինելով, և գազանաբար խրոխտանան գոչել և պատառել: Յաղագս նորուն ապա և մեր ա̅ծայնոյն զինազարդեալ սպառազինութբ, հաւաքեսցուք 'ի հեղեղաձնաց կենցաղոյս՝ զզգայութեանցն որ 'ի մեզ զկարծրութիւն, 'ի հոգեկանութիւնս պահպանելով խորհրդարանի: Այլ և զկորովագոյնն 'ի նոցանէ ընտրեալ զքանին ճահաւորութիւն, դնելով յիմաստութեանցն մերոց պարսատիկս, ուղղաձիգ արարեալ ջաղխեսցուք զմեհագոյն և զգերակացեալն 'ի նոսա չարապաշտութեան անդամ: Նոյն նոցունն իսկ չարաչար աստուածոցն զինուք փնոսին սատակեսցուք, աւար առնլով և գերելով զհպարտացեալ նոցա խորհուրդս 'ի վերայ գիտութեան այ, որք նմանապէս են այ և մեր թշնամիք, և մերումն ոչ հաւատոյն՝ զուգահաւասար առ երկոսին ունելով թշնամութիւն. այլ զըպարտելով բամբասեն, և իրերաց գոլ ասեն զմեզ ձայնակիցս և համախոհակս: Նաւ այս է քան զամենայն դժնդակագոյն մեզ 'ի նոցանէ վտանգ. քանզի առ ընկերսն մըղել, և ձեռամբ առ ինքն յանգուցանել. օտարին վերոք խարել զսիրտն, և 'ի ծածուկ ընդ ինքեան յարահիւսել ջանալով. զայն միայն գտեալ անձին յաղթութիւն, զստել և նախատինս զմեոք արկանել զատարատեացն լուտանս: Իսկ մեք այսքան յերկոցունց 'ի նոցանէ հեռացեալ գտանիմք, որպէս ոչ է հաղորդութիւն լուսոյ ընդ խաւարի, և ոչ գայլք ընդ գա-

1 Ցորենակին եղծեալ եր նա :

ւանց ընտանեացին համակամութիւն : Բայց է և ոչ սուղ ինչ և զօր առ միմեանս ունիցին նոքա զթշնամութի . վասն զի ուրաքանչիւրոցն նոցա չարափառութիւն յոյժ աննմանիք են միմեանց և տարանջատականք : Ոմանցի մին միով ճանապարհով, և միւսն երկուք, որք ոչն են անմոլար, հակառակին անհասանելի մարդեղութեան բանին հասանել :

Եւ այս մինչև ցայս վայր եղիցի :

# ՆՈՐԻՆ

## ԸՆԴԴԷՄ

# ԵՐԵՒՈՒԹԱԿԱՆԱՑ

ՅՈՅԺ տենչալի էր ինձ և փափաքելի, ոչ այլոց զիս, և ոչ զայլս ինձ լինել 'ի թշնամութեան. այլ յամենայն ժամ զբարեաց զհետ երթալ ըստ առաքելական հրամանին՝ առ միմեանս և առ ամենեսին, 'ի բոլոր սրտէ առ համօրէն մարդիկ զխաղաղութիւնն ունել խնդրելով։ Որպէս զի նովին և զանձն սիրոյ և զխաղաղութեան 'ի մեզ հաւանեցուցանել հնարէաք բնակել տալ։ Բայց վասն զի զոր 'ի սկզբանն 'ի բաց հրամայեցաք դնել զպայմանութեանն գործիս, վերստին այժմ աւասիկ 'ի ձեռն առնլով մարդիկ պատերազմին առ միմեանս, և ընդ միոյ գլխոյն Քի անդամոց՝ բազում գլուխք և ցեղապետք նստեալ կացեն, ապա հարկ է մեզ՝ որ զմին միայն ընտրեցաք ունել զօրագլուխ և վերակացու կենաց մերոց, որք ոչ միայն այ զմեզ ասեմք, այլ և վասն նորա զիր հանեմք, և յանուն նորա խրախոյս բառնամք, յաղագս նորին ահաւասիկ և ատեամք զատելիս նորա. զկատարելագոյնն զնոսին ատեցուք զատելութի։

Այլ և ասացից առ նոսա. «Մի՛ կեցջիք, փոխանակ զի սուտ խօսեցայք յանուն իմ», ըստ մարգարէին ձայնի։ Եւ զի՞նչ ստել չարագոյն կայցէ քան զոչ խոստովանել զՔս մարմնով եկեալ. զոր մոլորեցուցիչ և Նեռն անուանէ մեծն Յովհաննէս։ Քանզի այն քան նրբէն և նուաղեցուցանեն նոքա՝ զորոց բանս է, որ վասն Քի մարմնոյն մտածութիւնք և ձայնք, մինչ

զի առ աչս երեւութե կարծիս արկանել մարմնացելոյ բանին, որքան 'ի զօրութե բանից նոցա 'ի միտ առնուլ է: Վասնզի զամենայնն 'ի Ք՟ս ըստ մարմնոյն կերպս՝ ոչ առնուն յանձն ասել ըստ մարմնոյ և կամ մարմնով. զի մի երկուց, ասեն, ակնարկութե տայցեմք բնութենց 'ի մէջ Ք՟ի. այլ ինքն իսկ Բանն ա՟ծ էր՝ որ ընդ երկուսին անցանէր, ասեն, ընդ մարդկայինսն և ա՟ծայինսն:

Զարմանամ ընդ այսպիսի կեղակարծ և դայթ 'ի դայթ խոստովանութիւնս. եթէ անմարմնապէս ըզմարմնականսն կամէին էր կրել Ք՟ի, ընդէ՞ր և մարմին զգեցաւ 'ի կուսէն՝ ինն ամսեայ ժամանակաց յղութե, և ծննդեամբ յառաջ եկեալ երեւեցաւ տղայ: "Գտանիցէք, ասէ, մանուկ պատեալ 'ի խանձարուրս, և եդեալ 'ի մսուր". և "Եղելոյ 'ի զաւակէ Դաւթի ըստ մարմնոյն". և "Յորոց և Ք՟ս ըստ մարմնոյն". և "Մեծ է խորհուրդ ա՟ծպաշտութեն, որ երեւեցաւ մարմնով". և "Ք՟ի չարչարելն մարմնով", ասէ. և "Մեռեալ է և մեռաւ մարմնով, այլ կենդանի է հոգւով": Բայց անկամայ կուրութե ցանկայ՝ ոչ տեսանելեացն լինել տեսող, իսկ կամաւոր կուրութե խնդրէ՝ ոչ լինել տեսանելեացն տեսող:

Բայց և ոչ 'ի կուսէն, ասեն, մարմնանալ, այլ 'ի կուսին. զի մի արդեւք 'ի կուսէն առեալ զմերս յիշեցուցեալ 'ի ներքս ածիցեն բնութի: Իսկ 'ի կուսին առացեալ ինքն ասա, ասեն, Բանն ա՟ծ մարմնացեալ լինի յարգանդի կուսին: Ըստ բնութեանն զմարմնանալն տայք բանին, հարցանեմ զձեզ, եթէ ըստ առինքն զառ 'ի մէնջն միաւորելոյ: Եթէ յիւրն ընկալաւ զայս գոյացութի, լուծեալ եղև յախմամանէ՝ յարամերն, 'ի նմանէ է և յոյս փրկութե մերոյ: Բայց կարծեմ զայլ ինչ երկնել մտաց ձերոց՝ այսպէս կեղծաւորելովդ: Զի՞նչ արասցես և զհրեշտակապետին ձայն. "Որ 'ի քէն ծնանելոցդ է", ասէ, և ոչ թէ որ 'ի քեզ. և եթէ "Առաքեաց ա՟ծ զորդին իւր, որ եղև 'ի կնոջէ". և թէ "Առաքեցաւ ա՟ծ յիս, և առ հոգի և մարմին 'ի կուսէ. և եթէ՝ "Ք՟ս 'ի կուսէ. կանայք, կոյսք լերուք": և եթէ՝ "Ծնաւ 'ի Մարիամայ սրբոյ կուսէ": Գիտեմ զի զայսոսիկ

լսեա, և ոչ հնազանդիս. զի եղիցիս 'ի կորուստ ան-
հնազանդելոյ որդւոց հարանց:

Այլ թէ յերկիւղէ տարակուսանաց է թերահաւա-
նելդ ձեր, զնմանն առնէք ախոյցիկ, որք 'ի սոյն
զարհուրանաց փախչելով դաւհամբէժք եղեալ մնա-
նին: Ըստ նմին և դուք երկուցեալք յերկուցն ասել
բնութեց` 'ի Պանդարոսին փախուցեալ անկանիք յա-
մարութի, որ զԲանն 'ի մարմնի և յոսկերս յեղեալ ա-
սէր: Զի եթէ ոչ խորհրդոյ ականք հայեալ զկատա-
ջիք յաւետարանական ձայնն, «Բանն մարմին եղև»
ոչ իւիք հեռանալ կարիցէք յառաւելոյ ացեալ հայհոյ-
ութէն:

Իսկ նմին օրինակի` զմին ասել բնութիւն, եթէ
որպէս պարզն է ասել` ըստ Աշխարհացութեան կարգի ոչ
ասիցէք, բազում շանց համառեալք եղանիցիք զհայ-
հոյութիւն բարբառողաց: Բանն առ այս` անհնարին
քրիստոսախոսաց լուսաւորեալ են մնաց ասէք. զի ոչ
է մի բնութի մարմնոյն և բանին ըստ նոյնութե բնու-
թե. զի ոչ մարդկային երկուքին, և ոչ ածային: Այլ
մարմնին յերկնից իջեալ` ըստ առաջնոյն Յուսիկեայ բա-
ջաղանացն, և ոչ ածն Բանն 'ի Մարիամայ առեալ ըս-
կիզբն, որպէս Փոտինոսի թուեցաւ ասել. այլ Բանն
անեղ` յանեղագոյնէն իջեալ հօրէ` մարմնոյ տացա-
կան յարգանդէ կուսին զգեցաւ: Այլ ուրեմն ոչ է
ըստ բնութե նոյնութե` մի բնութի. զի թէ և ասեմք`
մի բնութի Բանին մարմնացելոյ, ոչ այդպէս խեղայեղ
և ջաղջախ մտածութբ, որպէս թէ միոյն 'ի միւսմէն
'ի բաց բարձեալ. և կամ լուծեալք 'ի միմեանց` որ-
պէս խոնաւուտ բնութեանցն. յորմէ լինի և ոչ մի
բնութի: Այլ զոր էրն ոչ 'ի բաց թողլով, եղև` զոր
ոչն էր. և այսպէս բարձրագունին ծանուցաւ խոնար-
հութի. մնալով 'ի բարձրութե` զատ նոյն խնքն 'ի
խոնարհութե. որպէս մեծն Գրիգոր ասէ. «Ոչ էրպէս
և վասն մեր էջ յանարգութի, այլ կայ յիւրում բա-
նութեն. որպէս և խնքն իսկ ասաց. Ես նոյն եմ` և
ոչ փոփոխիմ»: Յայտնի եղև և մերն մեծուն. ու-
նելով զպատկեր ծառային` զգեցաք զպատկեր երկ-
նաւորին: Այս զայս` խնքն փրկիչն յայտնեաց ասելով.
«Ես եկի` զի զկեանս ունիցիք, և առաւել ևս ունիցիք»:

այս ինքն ոչ եկն զառեալն 'ի բաց բառնալ 'ի սկզբանն զգոյացութիւն շնորհ, այլ զա՟ծատեսակագոյնս զիւր 'ի վերայ նորուն հաստատել։ Քանզի ոչ եկն յեղծանել ստեղծողն զստեղծեալն յինքեանէ ստեղծուած, այլ վերաստեղծել զնոյն և նորոգել։ Նա և այսպէս 'ի գոլոյն ոչ 'ի բաց կալով, մարդկայինն և ա՟ծայինն այնուհետև ասին 'ի միաւորութէն և որոց ոչն էին գոյացութեան. այս է Բանն ա՟ծ մարդ լինելով և ասելով մնաց և այնպէս ա՟ծ. և ա՟ծանալով մարդս և անուանելով ոչ երբէք զիւրն 'ի բաց կորոյս գոյացութի։ Որպէս երանելին Եփրեմ ասէ. "Ոչ փոփոխելով մարմինն յանմարմնութի, այլ ունի զինքեան զմարմինն՝ որպէս ծնաւ 'ի կուսէն. և առաւել քան զմեզ, ըստ որում յանձն Բան միաւորեցաւ„։

Արդ՝ յայտ է թէ անհասանելի միաւորութիւնն, և ոչ բնութեցն այլայլութի առաջնորդեն մեզ զմին ասել բնութի մարմնացեալ Բանին։ Զնոյն և մեծահանճարն Կիւրեղ աւանդէ Աղեքսանդրի հայրապետ, ասելով. "Ոչ 'ի մարմնոյ բնութի փոխարկեալ Բանին, այլ և ոչ մարմնոյն 'ի նորայն, այլ 'ի յատկութեան ըստ բնութե երկաքանչիւրոյ մնացելոյ և իմացելոյ, ըստ այժմու մեզ աւանդեցելոյ բանին՝ անճառելի և անասելի միաւորութին՝ մի մեզ եցոյց որդւոյ բնութի։ Արդ 'ի յատկութե ըստ բնութեն ասել, զանշարժն մնալ ասէ յերկաքանչիւրսն՝ որոց էինն։ Իսկ 'ի գերազանց և 'ի սքանչելի միաւորութէն ոչ ինչ է արգել միութեան՝ զամենայնն խոստովանել 'ի Քնս, մի դէմ, մի անձն, և մի նորա բնութի. զի որ 'ի Հօրէ անմարմին բանն էր, 'ի Մարիամայ որդոյ կուսէն՝ այս ինքն 'ի մարդկային բնութէս՝ մարմին զգեցաւ. և զնոյն միաւորեալ ընդ իւրումն դիմի և բնութե, մի դէմ, և մի բնութի ասի և հանդերձ մարմնովն։ Ոչ եթէ անգոյ և կամ առանց մտաց և անձին, և թանց բնութե զմերն ընկալաւ 'ի կնոջէ, այլ ըստ ամենայնի կատարեալ առնլով առ իւրն միաւորեաց կատարելութի Բանն որ 'ի Հօրէ. և այսպէս ասի մի կատարեալ՝ զմի ունելով կենդանութիւն և զդէմ։ Ոչ 'ի միութէն զերկաքանչիւրոցն ուրանամ զկատարելութի, և ոչ յաղագս երկաքանչիւրոցն կա-

տարրելութե̃ զմին հրաժարեմ ասել կատարելութի̃. միութիւն յանայլայլութե̃, և անայլայլութիւն ՚ի միութեան խոստովանելով:

Այլ ուրեմն մի բնութիւն և մի դէմ Քսի, եթէ պարտ է համառօտագոյնս ասել, ոչ է ըստ նոյնութե̃ բնութե̃ կամ ըստ միանձնականութե̃. զի այս զերկոսին ՚ի միասին գրեթէ զրկեսցէ, զա̃ծ ՚ի մարդն լինելոյ, և զմարդն յա̃ծանալոյ. այլ է, որպէս բազում անգամ ասացի, ըստ անձնառ միաւորութե̃ Բանին ընդ իւրում մարմնի: Որպէս և սուրբն Գրիգոր ասէ. “Միացաւ ՚ի մարմնի բնութը̃, և խառնեաց զմարմինն ընդ իւր ա̃ծութե̃ն”: Նոյնպէս ըստ անձնառելի և անպարփակելի խառնմանն և միաւորութե̃ն համարձակիմք ասել մի բնութի̃ Քսի, և ոչ ըստ այլուրմիք յեղանակի: Սոյն և երանելին Յուլիոս ասէ Հռոմայ հայրապետ. “Որ ասէ զմարմինն առնելի առ անեղն ա̃ծ միաւորութը̃ ա̃ծային և երկրպագեալ, եւ զերկախումն իբրև մի անառնելի ա̃ծ, երանեալ եղիցի”: Նա երկուսին հաւասարապէս ունի երանութեւս բան, երկախումն խոստովանեալ ըստ բնութեց, և մի ըստ միաւորութե̃: Մի զմին ասելով զբնութեցն խզանել կամակորեսցուք զաղբեւրս, և մի յասելոյ անտի զերկախումն՝ պատառել կամելով զմիաւորութե̃ն պատմուճանն. այլ բարեպաշտաբար առ երկոսինն զալ գիտացեալ, միութը̃ն ճանաչել զբնութիւնն, և ՚ի բնութեց անտի ելանել առ միաւորութիւն: Որպէս Հռաշալին ասէ Յովհան Կոստանդինուպոլսի. “Միութի̃ խոստովանիմ, և ոչ քայքայումն ինչ և լուծումն այսր բնութե̃ յայն, կամ այնր յայս. այլ միացեալ, մի լեալ”: Արդ մի լեալ, որպէս յառաջն ասացի, ըստ միաւորութե̃ն գոլ ասէ զերևելին և զաներևելին, և ոչ ըստ համագոյութե̃. զի որպէս արդեւք եղիցի՝ որք ոչն են:

Բայց սակայն և զայս լսեմք ՚ի ձէնջ ասացեալ. “Մի բնութի̃ զա̃ծայինն իսկ ասեմ, զոր ՚ի Հօրէ ունէր զիւր զիսկական բնութի̃ն. զի ոչ ասի յարարածականաց ոք բնութիւն, քանզի արարչականն ասի միայն բնութի̃. իսկ զմարմինն՝ մարմին Քսի ասեմ, և ոչ բնութի̃ Քսի”: Փախչի՞ս ՚ի բնութեց անուանէ,

ընդ նմին և յերկուցդ ասելոյ. և ոչ գիտես թէ մարմին ասելով՝ յերկոսին 'ի ներքս ըմբռնես յորոց փախչիցդ: Արդ զնոյնս, որովք բարեպաշտելդ կարծես, հակառակ ընդդէմ քեզ եդից: Ո մարմինն՝ մարմին Բանին ասելով, և զԲանն առաջեալ մարմին ունել, զի՞նչ այլ ինչ թուիցիս ասել, եթէ ոչ կրկին: Իսկ դարձեալ՝ զԲանն 'ի Հօրէ ասելով, զՀօրն տացես նմա զբնութի. իսկ զմարմինն 'ի մարդկանէ ասելով զո՞յր ունել ասես նմա բնութի, եթէ ոչ զմարդկան: Բայց կարծեմ թէ կամիք և ոչ մարմին քո՞ ասել. զի թէ զմարմինն ճշմարտութե՟ խոստովանեիք ունել Ք՟նի, և զայն 'ի մարդկանէ և մարդկային, զնոյն և բնութիւն մարդկային ոչ արդեւք խղճէիք ասել: Քանզի նոյն է մարմին մարդկային ունել Ք՟նի, և բնութի մարդկային. և զի Ք՟ն առանց միաւորութեն ոչ ասի Ք՟ն Ա՟ծ, այլ Ա՟ծ Բանն: Որպէս ս՟րբն Բասիղիոս ասէ. " Ո՜ թէ ասիցէ ոք զմարմինն բնութի Բանին, և զԲանն բնութի մարմնոյն, ամպարշտութե՟ լի է այսպէս ասացեալքն ":

Իսկ եթէ զմի և զնոյն Ք՟ն յերկուց խոստովանեսցիս ասել բնութեց, այսինքն Ա՟ծային և մարդկային, ընդէ՞ր զարհուրիս և զայրանաս, և այլանդակ և հայհոյիչ շարադրութե՟ զբարեպաշտաց պղտորես զլսելիս: Քանզի ասես, որ 'ի Հօրէ գոյացեալ անձնն էր, նոյն անձնաւորեալ 'ի սուրբ կուսէն. և որ 'ի Հօրէ բնութիւն էր, նոյն բնաւորեալ եղև յարգանդի կուսին: Իսկ սակայն գոհութիւն Ա՟յ, որ յայտնէ ըզխորս խաւարի, և հանէ 'ի լոյս զստուերս մահու. զի թէպէտ և շատ ջանացար կուրաշաւիղ իմն արահետիւք ծածկել և թագուցանել զհաւաքեալ 'ի քեզ զդառնութե՟ մաղձ, այժմ յԱ՟ծայնոյն բռնադատեալ յակնարկութէ՟ տեսչութեն՝ 'ի վեր բղխեցեր: Արդ զի՞արդ անձնաւորեցաւ 'ի կուսին անձն Որդւոյ. թողլո՞վ զիւր գոյութիւն՝ յայլո՞ւմ գտաւ գոյութե, որպէս Պանդորոսն ասէ, եթէ յիւրումն մնալով զերևութականն միայն զձևն զինքեամբ արկաւ, առ աչօք և ձևով եւեթ ցուցեալ զմերն 'ի կուսէ, որպէս Իսաւոքէմն երկբորդ յիմարաբար բարբառի՝ ասելով. "Խոստովանիմ զԲանն Ա՟ծ յարգանդի կուսին կերպացեալ՝

տպաւորեալ, 'ի պատկեր և 'ի ձև մարդոյ եղեալ, այլ ոչ եթէ յարարածական բնութիւն ինչ յինքն խառնեաց. քանզի անխառն է ա̃ծութիւն և անյօղ „։ Տեսանեմս, որպէս համաձայնք առ միմեանս գտանիք յամպարշտելդ. դու ասես, 'ի Հօրէ անձինն Որդւոյ անձնաւորեցաւ 'ի կուսէն. և նա ասէ, ոչ ինչ խառնեաց 'ի կուսէն յանխառն ա̃ծութիւն։

Նաև եթէ ոչ գոյութիւն ինչ անձնաւոր զմերս 'ի կուսէ ընդ ինքեան միաւորեաց Բանն, զիա՞րդ ինքն զինքն մարդ և որդի մարդոյ անուանեաց։ Զիա՞րդ և տղայ երևեալ խանձարրապատեցաւ, և կաթնաբոյծ եղանիւր, և առ կատարելութիւն 'ի վեր ընթանայր աճմամբ հասակի, ըստ մեծին Աթանասի ուղղափառ դաւանութեանն. “Որքան ինքն, ասէ, հրամայեաց՝ զբնութիւն կատարելով յինքն ընկալաւ. որքան կամեցաւն, այս է՝ ծննդեանն 'ի կնոջէ, աճման հասակի, ամաց թուոյ, աշխատութեան, ծարաւոյ և քաղցոյ, և քնոյ, և տրտմութեան, և մահու և յարութեան „։ Այսոքիկ ամենեքին՝ նմանութիւք և երևութիւք թուիցին քեզ եղեալքն 'ի Բ̃նէ, թէ ճշմարտութի։ Ապա եթէ ճշմարտութիւն, որպէս և է իսկ. քանզի անհնար է անսուտն ա̃յ ստութեամբ ինչ կեղծաւորել 'ի գործս իւր. զիա՞րդ իշխես ասել զաներևոյթ և զանմարմին անձնն Որդւոյ մարմնաձևապէս անձնանալ յարգանդի կուսին, եթէ ոչ զկատարեալ մեր բնութիւս 'ի կնոջէ յինքն ընկալեալ՝ ընդ ինքեան միաւորեաց Բանն ա̃ծ առաքեալ 'ի Հօրէ։

Եթէ այդպէս ասեմք՝ ասեն, երկուս լինիմք ասացեալ դէմս, և երկուս բնութիւս։ Պարձեալ փախչելով 'ի մնոտի երկիւղէ, 'ի մեծագոյնն անկանիս չար։ Եթէ յերկուց ըստ բնութեան ոչ կամիս ասել զմինն, կարի յոյժ չարաչար ըստ բնութեան զմին գտանիս ասացեալ բնութիւն։ Այլ անմարմին բնութիւն ա̃ծային Բանին՝ զմարմնական բնութիւն 'ի կուսէն ընկալեալ, ընդ ինքեան միաւորեաց. որ է ըստ բնութեան յերկուց՝ ա̃ծային և մարդկային. իսկ ըստ միաւորութեան մի։ Զի եթէ այս երկուք գեղեցկագոյն հաւատոյ ոտիւք առ ճշմարտութիւն 'ի վեր կանգնեալ ոչ հաստատիս, առ որ և յենուցաւս առ մինն 'ի նոցանէ՝ կաղ

գտանիս առ խոստովանութիւն ճշմարտութեն. այլ կատարեալ՝ ըստ երկաքանչիւրոցն դիտելով զերկուսն, ըստ միաւորութեն մի կատարեալ, մի դէմ, և մի Որդի ած խոստովանելով. որպէս Տրն Բասիլիոս ասէ. « Երկուց գոյացութեց կատարելոց միաւորութի »։

Նա որ դու հակառակաբար ընդդէմ յարուցեալ՝ գրեցեր 'ի քում շարագրածութիւս անդ, և ասես. որ 'ի Հօրէ բնութիւն է՝ նոյն բնաւորեալ է 'ի սբ կուսէն։ Մինչ 'ի Հօրէ բնութի էր, զի՞նչ այլ ինչ բնուի յարգանդի կուսին գոյանայր։ Օ մտաւ ած, յորքանեաց չարաչար հայհոյութեց պատոյտս ընկղմիս՝ զայդ այդպէս ասելովդ։ Մե հարքն 'ի Նիկիա ժողովեալքն ասացին՝ զնոյն բնութի Հօր վասն մերոյ փրկութեան ծնաւ մարդացեալ 'ի Մարիամայ սբյ կուսէն Հոգւով սրբով։ Իսկ ապա 'ի չար արկեալ թուեն զկատարելուի բնութեւս մերոյ. հոգի, մարմին, և միտս. և նովին մարմնով համբարձեալ յերկինս. և նովին մարմնով գալոց է ասացին։ Իսկ դու ասես. որ 'ի Հօրէ բնութին՝ բնաւորեցաւ յարգանդի կուսին. և յաղագս այնր ասի մի բնութիւն։ Եթէ յարգանդի կուսին բնաւորեցաւ, ապա 'ի Հօրէ ոչ էր բնաւորեալ։ Պարձեալ՝ թէ յարգանդէ կուսին սկիզբն էառ լինել մի բնութի ընդ Հօր, ապա նախ քան զխոնարհելն յարգանդ կուսին՝ օտար գոյր բնութեն Հօր։ Իսկ զայդ այդպէս զաւզակատելովդ՝ Արիոսի եղեալ գտանիս չարապաշտութեն զուգաձայն։

Պարձեալ՝ զմի բնութիւդ ապաքէն ընդդէմ երկուս բնութիւնս ասողացն ասես զոլ. և որ երկուսն ասէ բնութիս, զածային ասէ և զմարդկայինն. դու զոմ ոք 'ի նոցանէ ասես՝ զմիդ ասելով, կամ ըստ որում յեղանակի։ Որդ այսպէս շամբուշ խորհրդով քանդագուշիս, և ոչ գիտես գտանել զշաւիղս այ զդիրինս. զի Բանն ած՝ գոյութի համդերձ մարդկային բնութե ընկալեալ յանարատ արգանդէ կուսին՝ ընդ ինքեան միաւորեաց անձառապէս գոյութեն և բնութեն, ոչ զյառաջագոյն գոյացեալն. քանզի « Օ գոյութի մարմնոյն՝ միաւորութե բանին ծանեայ, ասաց ոմն 'ի սրբոցն. և այսպէս ասի մի դէմ, և մի բնութի » Բանին մարմնացելոյ։ Ոչ ըստ ինքեան ասի մի

բնութ̃ և առանձնաւորութ̃ի. քանզի զայս 'ի Հօրէ
իսկ անժամանակաբար յինքեան բերէր Որդին ա՟ծ.
այլ ըստ անճառ տնօրէնութեն 'ի կուսէն: Որպէս
նոյն Բասիլիոս ասէ. «Ծնեալն 'ի Մարիամայ եղեւն
'ի նորա բնութենէն՝ ոչ էր ա՟ծ բնաբար, այլ միաւորու-
թ̃բ տնօրէնութեն. վասն զի որ 'ի բնութէ Հօր էր
ա՟ծ՝ Որդին, 'ի բնութէ Մարիամայ եղաւ զպատկեր ծա-
ռայի, և պտուղ որովայնի նորա գտաւ եղեալ»: Նու-
զայս նա: Ապա ուրեմն՝ ոչ բնութիւն ա՟ծային բնաւո-
րեցաւ յարգանդի կուսին, որպէս դու դանդաչես.
այլ ա՟ծն Բան 'ի Հօրէ՝ զմարդկայինն զգեցաւ բնութ̃
'ի կնոջէ: Որպէս և մեծն Աթանաս ասէ. «Վասն
զի բնութի մարդկութեան էր՝ որ ծնանելոցն էր, վասն
այնորիկ և չարչարեալ զնա նշանակէ»: Նոյնպէս
Հայրն:

Բայց դու թէ ասիցես՝ մարդ եղեալ ճշմարտապէս
'ի մարդկանէ զԲանն որ 'ի Հօրէ, ընդէ՞ր զանգիտես
զմարդկայինն 'ի Ք՟ս դաւանել բնութ̃. և աղամողիս
'ի բանս քո, և յայլմէ առ այլ վարեալ անցանես առա-
րապարտ մտածութիւս: Երկնչիս յերկուց ասել բը-
նութեանց. երկիւղ մեծ գոյ, եթէ ոչ արժանապէս և
զմին ասել Ք՟սի բնութ̃: Իսկ եթէ իրաւապէս և բա-
րեպաշտաբար զերկոսին լսես, ոչ ինչ է արգել զմին
ասելով յիշել և զառ 'ի յերկուցն. և դարձեալ՝ ոչ
մոռանալով զյերկուցն, խոստովանել և զմին: Ոյք և
որք Հարքն՝ բարեփառութ̃ հիմնացեալ հաւատով,
աներկեւան և անտարակարծ խոհականութեամբ՝ զէն
անվթարելի զերկոսին զոսա ընդ ինքեանս բարձեալ
բերէին ըստ պիտոյիցն իրակութ̃, զմի մի որք 'ի տո-
ցանէ շարժեալ շողացուցանէին ընդդէմ թշնամեաց
ճշմարտութեն: Որ՟ այնոսիկ՝ որք ըստ Նեստորեայ,
և կամ Յուլիանեայ չարապէս զմին իմացեալ ասէին,
երկակի ասացուածով զբանիցն իւրեանց յօրինէին
զառաջարկութ̃. քանզի իւրաքանչիւր ոք սոքա՝ առ
միմեանս բարեփառադաւանին առաջնորդեցեն մտաց:

'Ի պտղոյ անտի ծառն ճանաչի, և յարմատոյ անտի
ծաղիկն: Հարցանեմ զծաղկէն, արմատոյն ա-
նուամբ նշանակեսցի. եթէ անուանն 'ի միջոյ բարձցի,
ապա և Բանն. և շարաբարձումն անուանն և բանի

վերաձգեալ ածցիս . անուամբ արմատոյն, տեսութ՟ք գունոյն, 'ի բուրմանէ անտի հոտոյն, և համոյն ճաշակաւորութ՟ք: Ըստ նմին օրինակի և առ փրկչական մարմինն վերաթեւեալ համբարձցիս. դաւանելով զնա տեսակին անուամբ՝ մարդ-Յս՟ Քս՟ ասելով: 'Ի տեսութենէ անտի. «Շօշափեցէք զիս և տեսէք, զի ոգի մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիս տեսանէք՝ զի ունիմ»: 'Ի մարդկային կրիցն . «Որով ինքն չարչարեցաւ՝ զփորձ առեալ կարօղ է և փորձանաւորացն օգնական լինել»: 'Ի մահուանէ նորա վասն մեր . «Ք՟ս մեռաւ վասն մեր ըստ գրոց»:

Ապա ուրեմն թէ և միովն ոչ զգաստացար, առ այլմն մի ըստ միոջէ ընթացեալ հարցջիր . և հաւանեցուսցեն զքեզ համագոյ և համաբուն ասել զտէրունական մարմինն մարդկային բնութ՟ս . զի այսպէս յերկուց բնու՟ց խոստովանելով, նշանակեսցես զնա մարդ միանգամայն և Ա՟ծ : Իսկ մին ըստ բնութեան զնա ասացեալ՝ որպէս և ասէքդ իսկ, բացարձակ անուամբն ևեթ նշանակեալ լինի . զիարդ կարասցես մարդ զնա եղեալ ասել և մեռանել, և մահուամբն զանմահութեան 'ի մեզ աղբիւրացուցանել շնորհ: Այսորիկ աղագաւ անպատկառացոյցք որ հարքն երկուց բնու՟ց Ք՟սի Ա՟ծայնոյն և մարդկայնոյն լինեալք. Բնութ՟իք երկու ասելով, վասն զի Ա՟ծ և մարդ, և եթէ՝ 'Ի միասին եկին բնութիւքն, և եթէ՝ Հաւատի զերկոսին ունէր զբնու՟ս Ք՟ս . և եթէ՝ Կրկին է Ք՟ս . մարդ էր որ երևէր, և Ա՟ծ էր որ ոչն երևէր. և որ այլ ինչ սոյնպիսիք յայլոցն ասացեալ եղեն: Ոչ եթէ զյերկուցն ասելով հրաժարէին ասել զմին, և կամ եթէ զսորին հակառակն՝ զմին խոստովանելով յամառէին յերկուցն գալ խոստովանութ՟ն, այլ համարձակաբար երկոքումբքս այսոքիւք բարեփառու՟ն ղամպարօք փայլեալք պայծառանային, երկուս ըստ բնու՟ն, և մի ըստ միաւորու՟ն զՔ՟ս քարոզելով. ընդձեռն որոյ ցուցեալ լինէր Աստուծոյն Բանի բնու՟ն անեղանելի, և 'ի Հօրէ . իսկ մարմնոյ նորին գոյացութիւնն 'ի կուսէ, և արարածական . ասելով Ոչ զուգապատիւս ասեմ զաւետարանչացն ձայնս, և ոչ 'ի նոցունց արժանաւորութենէ ասացեալս .

այլ ոմն զբարձրութիւն ա̃ծութեանն , և ոմն առ նը-ւաստութիւն մարդկութեանս զիջանելն նշանակեն . և թէ՝ Չարչարելի մարմնով , և անչարչարելի ա̃ծու-թեամբն ։ Այլ համայն սա՝ որ այժմ անչարչարելին ասաց ա̃ծութիւն , յայլում տեղւոջ մականձայնէ Ա̃ծ չարչարեալ ։ Արդ որպէս զսոսա իմասցուք . միթէ մարտնչիցի՞ ինքն ընդ իւր վարդապետս , քաւ լիցի . այլ զառաջինն ըստ բնութեան տրամաբանէ , իսկ զերկ-րորդս՝ ըստ միաւորութեան բանի ։ Եւ յորժամ ըստ միաւորութեան ասէ , ուրանայ զհասարակականն , և ոչ դարձեալ ըստ հասարակականացն ինչ ասացեալ բանն՝ զմիութեան յերկուս բաժանէ միութիւնս . այլ յերկոսեն անչարաբարբոյական կամօք բարեպաշտեալ մերձենայ . զչարչարելին ըստ հասարակականին ան-չարչարելի 'ի միաւորութեան խոստովանելով , և զան-չարչարելին ըստ գոյացութեան բազմաչարչարելի ըստ միաւորութեան ։

Նմանակի ոմն և այլ ոք հարքն զիւրեանցն արձա-նացուցին խոստովանական բանն ։ Յորժամ ըստ բնու-թեան ինչ բարբառել համանէր , համարձակապէս զեր-կաքանչիւրոցն յիշէին զհասարակականսն . ոչ առ 'ի բաժանել զմին Որդի յերկուս որդիս , կամ յերկուս դէմս , այլ միայն յորոց էինն՝ ազդեալ նշանակէին , ասելով որպէս Պաւղոս . Սատակեաց յուղևորութեան՝ մարմնոյն և ջղացն յուղեգնացութեան յաւէտ ձգեցե-լոց . ոչ ա̃ծութեան աշխատութիւն տաժանեալ , այլ մարմ-նոյն որ 'ի բնութեան յարմարագոյն էր՝ զպատահումն ընկալեալ ։ Այլ որ այժմս ըստ մարմնոյն բնութեան զայս այսպէս մականձայնէ , այլուր ըստ միաւորութեան առ Բանն ա̃ծ զայսոսիկ վերաբերէ , ասելով ։ Այս զթաղումն մարմնոյն և զզգեստ նորա ասեմ Բանին . ոչ բնութիւն ա̃ծութեան , այլ միաւորութեամբ տնօրէնութեան ։ Որպէս զձայնս զանձնականս , և զչարչարանս զանձ-նականս , զտրտմութիւնն և զզոփալն , ա̃յ Բանին ասեմ . ոչ բնութեամբ ա̃ծութեան , այլ միաւորութեամբ տնօ-րէնութեան ։

Այլ այսպէս երկաքումբք այսոքիւք ուղղափառու-թեան շաւղօք առ խորհուրդ մարմնաւորութեան Բանին վերերթալ գիտացեալք ոք հարքն՝ համարձակէին և

զմիութեցն արժանաւոր բարբառել բանս, և զմիաւո-րութե անօրէնութեամն պատշաճագոյնս, ասելով. Քաղցեաւ ըստ մարմնոյն, ծարաւեցաւ վաստա-կեաց ննջեաց. և այնու ոչ եթէ զա՟ծութիւնն խոնջ թշնամանեաց, այլ վասն զմարմնոյն բնութե՟ ճշմար-տութե՟ յայտ առնելոյ : Եւ եթէ Անվիշտ և ան-մահ է Բանն որ յԱ՟յ Հօրէ. յաղագս այնր իւրացոյց իւր մարմնին՝ որ վշտանալն կարէ : Եւ եթէ Ընդ իւրում ա՟ծութեանն միացոյց զբնութիւնս մեր, և զամե-նայն ըստ բնութե՟ մարդկութեանս մերոյ առնէ և կա-տարէ միածինն Որդին Աստուածոյ. այլ ըստ ա՟ծութե՟ բնութեանն անախտ և անկարօտ, և լցուցիչ և կա-տարիչ ամենայն արարածոց :

Արդ այսպէս բազմերջանիկ հարանցն անուրաշաբար յիշել 'ի վերայ միոյ՝ Ք՟ի, ոչ առ 'ի բաժանել զմին Ք՟ս յերկուս դէմս, կամ յերկուս որդիս, քաւ լիցի. այլ զառաւելագոյն աստուած զամբութի առ ճշմարտու-թի հաւատոյն տնտեսել կամեցեալք. միանգամայն թէ և զչարափառացն տապաստ արկանելով խումբս, որք ընդ ձեռն միոյ ասելոյն Ք՟ի բնութե՟, ուրանային զանստուտ նորա մարդեղութեն խորհուրդ : Զվեր-ջինն Եւտիքէս, որ ոչ համագոյական կուսին դժոխա-բանէր զմարմինն Ք՟ի, և մի բնութի : Զառաջինն Եւտիքէս, որ յերկնից և անստացական ասէր զմար-մինն Ք՟ի, և մի բնութի. զՎաղենտիանոս և զՄա-նի; որ կարծեաւք ասացին զերևումն Ք՟ի, և միբ-նութի. զԱպողինար և զՍոփրոնիոս և զՅուղիանէ, որ կիսաբաժ և ոչ կատարեալ զմերս ասացին բնութի առեալ Բանին 'ի կուսէն, և մի բնութի. զԵւնոմիոս և զԱրիոս, որ զաներևելի արարած ընդ երևելի ա-րարածոյ շարակարգեալ ասաց զԲանն ընդ մարմնոյն, և մի բնութիւն :

Ոչ հեռի 'ի սոցանէ և զքոյդ կարծեմ ասել, մի բը-նութի. որ առ վտանգի խուշտանգանաց՝ մարմնանալ ասես ա՟յն Բանի. և յորմէ իցէ մարմինն, զայն ուրա-նաս : Օրինակ իմն, որք զթագաւորական գահոյսն պատուոյ արժանի վարկանին լինել. և յորմէ գա-հոյքն գեղեցկակերտեցան՝ զնիւթն իբրև զանարգ-ինչ անգոսնեալ 'ի բաց մղեն. ոչ գիտելով, թէ յայն-

ժամ պատուեալ երևի իմն, յորժամ առ հոմանեսակն իւր ասասցի. զի թէ այնմիկ ոչ ասասցի՝ յորմէ առեալն եղև, ոչ ծանիցի առաւելութիւն որում եհասն փառաց, և դարձեալ թէ 'ի նորին վերայ էութեն ոչ հասցէ փառացն մեծութի, ոչ ասի փառաւորեալ, այլ փոփոխեալ. քանզի այլ առ այլ ասի փառքըն և փառաւորեքն, և ոչ առ նոյն:

Արդ կամ էկ խոստովանեալ յառաջասացելոցն զքեզ մի ոք դոլ 'ի չարապաշտից. և ծանիցուք որ յոյժ ես մարդատեաց՝ զլանալով զնոյ մարդասիրութիւն. վասն զի նա առնլով յինքն մեծարեաց զբնութիւս, և դու ոչ խոստովանելովդ վատթարես: Ո՜վ ես ապա ընդ քեզ հարազատապէս մաքառեսցուք, որ ախորժեսդ հեթանոսաբար առ 'ի մէնջ մեկուսանալ. և այն զի հրամանն ընկալաք՝ զհեթանոսացն ոչ կոխել ճանապարհ, և 'ի քաղաքս Սամարացւոց ոչ մտանել: Ապա թէ 'ի չարաչար արմատոց անտի ոչ ես չարագոյն ընծիւղեալ շառաւիղ, խոստովանեսցես ընդ մեզ, մանաւանդ թէ ընդ հանրական կաթողիկէ եկեղեցւոյ՝ զմի և զնոյն ՔՍ ԱԾ միանգամայն և մարդ. զի ծանիցի անբաժանելի և անշփոթ միութի մարմնացելոյ Բանին Այ: Ընդէր լինիս իբրև զջուր հոսեալ ընդ զառ 'ի վայր՝ անդրէն ոչ կարացեալ դառնալ. կամ իբրև զկարկուտ հատեալ յամպոց՝ առ հալելն հուպ լինելով, քան թէ առ վերստին կապիլն յամպս: Ընկալ առանց խարդախութ զգրեցեալսն, և ճշմարտեա՛ զոր առ 'ի Փրկչէն կատարեցան իրագործութիւնքն: Սուտ համարեսջի՞ր լինել զքոյինդ ջաղջախս և սխալականդ խորհրդոց իմաստ, և մի զածայինն անսուտ գիր: Եթէ զրոցն դայթագղեցիս, գործոցն հաւատասցես. զի ապացոյցք բանի գործք 'ի Տնէն վկայեալ. «Գոնէ վասն գործոցն, ասէ, հաւատացէք»:

Մի բաղդատեր զյոյժ 'ի միմեանց տարբերեալսն. քանզի անդ անմարմնաբար և միայն ձևացութ ներգործութի. իսկ աստ մարմնով և հանդերձ ճշմարտութ: Կերակրեցաւ առ Աբրահամու. ճաշակեաց և ընդ աշակերտսն. անդ յանմարմնութե, և աստ 'ի մարմնաւորութե. ուստի յայտ է՝ եթէ այն նմա-

նութիւն գործոյ. իսկ այս գործ ճշմարտութ՟: Եթէ զգործս առ գործն տարեալ հաւասարեսցես, հաւասարեալ լինին և երեւմունքն՝ առաջինն և վերջինս: Զնորին հետ երթիցէ ծնունդն, աճումն, մահն, թաղումն, յարութին, համբառնալն. ընդ որս ինքն անցանելով ըստ նմանութե՟ գլխոյ՝ զբոլոր զառ 'ի յեկեղեցւոյ զհետ հրաւիրեալ կոչէ զպատշաճեալ իւր անդամն. և ամենայնքս մեր ըստ քեզ, ստուեր և երեւութիւնք առ 'ի յոյսն ակնկալութիք: Աստուստ ապա և Մանի և Մարկիոն կենդանասացին՝ զկնի այնքան ամաց՝ տեսանելով զքեզ իւրեանց եղեալ զարմ: “Կորուսանես, ասէ, մարգարէն զսուտ խօսօղսն„. եթէ կորուսանէ բանն, առաւել ևս գործն ընձեռէ կորուստ: “Աբրահամ հայր մեր ո՞չ ապաքէն 'ի գործոց արդարացաւ„, ասաց մեծն Յակոբոս. ընդէ՞ր զստուգն, և ոչ զհաւատս 'ի բանս և 'ի գործս առափորձիս ցուցանել, կամելով լինել որդի անդրանիկ 'ի հօրէ սատանայէ:

Հիմ Ջանաս փոփոխել զմակագրութի անուանն, և դնել զայլոյ ուրուք անուն, յորմէ հեռի ես ստացուածքն. և կամ թէ յեղանակել զբանն՝ ոչ որպէս ինքն խնդրէ: Տո՛ւր զքեզ ներխորհրդումն բանի, և մի զխորհուրդ բանին առ քեզ բռնադատեալ թիւրեսցես: Ակայեա այնոցիկ բանից, որոց ածն Բան վկայեաց ընտրել. և մի զքոյդ արդարացուցանել՝ 'ի բազմաց կրեալ ստգտանս և ապաքանութի: Ուսանիր, զո՛ ոք 'ի նոցանէ ըստ բնութե՟ է ասացեալ. և ո՛յք այնոքիկ իցեն՝ որ ըստ միաւորութե՟ն տրամաբանեցան: Եւ այսպէս լուսաւորագոյն իմացուածով կարասցես 'ի միտ առնուլ զերկաքանչիւրս գրեցելոցն բանից խոհականութիս:

Քանզի բազում ինչ անյայտութիւն և տարակուսանք յաւետարանականն գտանի ձայնս և յառաքելականս, առ որ եթէ խաւարազգած ոք 'ի ներքս յառեալ նայիցի հոգւոյն ակամբ, նոյն ինքն մոլորութ՟ պատճառ ճշմարտութե՟ն նմա եղանի ասացուած: Որպէս յիմարամիտն այն Ապողինար՝ լսելով յառաքելոյ, “Որովհետև մանկունք հաղորդեցին արեան և մարմնոյ, և ինքն իսկ մերձաւորութե՟ կցորդ եղև նո-

ցուն». աստուստ ապա զմարդկայինն 'ի բաց կրճատեալ եհան 'ի մարմնոյն Քրիստոսի զբանական հոգին, ասելով. Ծնեալն էր հոգիացեալ հոգեւորութիւն։ Նոյնպէս եւ այլով իւիք բանիւ այլ ոք վրիպեալ մոլորեցաւ, յասել անդ Փրկչին. «Ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից որդին մարդոյ՝ որ էն յերկինս». կարծեաց Նուսիքէս առաջին յերկնից բերեալ, եւ յանձայնն բնութեն հայթայթեալ Քրիստոսի մարմնն, եւ իբրեւ ընդ խողովակ վնոյն անցուցեալ ընդ մէջ կուսին. ոչ իմանալով թէ յաղագս առ երկնայինն միաւորութեն որ յերկրէն էր՝ ասիւր այս այսպէս։ Որդ է ուրեմն յաստուածային գրեցեալն բան՝ որ ըստ բնութեն է ասացեալ եւ իմանի, եւ է որ ըստ միաւորութեն անօրէնութեանն։ Ո ի յորժամ ասէր Փրկիչն ցՓիլիպպոս, «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ». եթէ զտեսանելս զայս՝ առ բնութեն տեսուչ զոր ունի Որդի զՀօր, ոչ առաջնորդեսցես մտացն աչաց, ոչ միայն թէ որդեհայրութիւն 'ի ներքս ածեալ մուծանես, այլ եւ մարմնն եւս զՀօր շնորհեսցես՝ որպէս եւ Որդւոյ։ Իսկ նմին եւ յորժամ ասէր, թէ «Ես եւ Հայր իմ մի եմք», ոչ ըստ դիմաց եւ առանձնաւորութեան զմին ասէր զոլ, այլ ըստ բնութեան։

Եւ որ դու կուրացեալ միտք հայելով ոչ դիտացեր զանազանել, այլ մեղադիր եղեալ առաջնոցն աստուածխօսութեն գրեցեր եւ ասացեր, թէ Ո ինչ պարտ է զճարտարքն Յունաց համարել, որք ասեն զԵրրորդութիւնն դիմօք եւ առանձնաւորութեամբ բաժանեալս, եւ անձնութեամբ միաւորեալ։ Ուստի յայտ արարեր, թէ դու եւ ոչ զմի յերկոցունց յայտնեալս ոչ ընդունիս. եւ այդպէս ոչ բաժանելով ըստ դիմաց՝ լինիս սաբելացի, եւ ոչ միաւորելով ըստ բնութեն՝ արիոսեան։ Իսկ եթէ ոչ բաժանի ըստ դիմաց, զմարդառանձնաւորութիւնքն կարեն անշարժ մնալ. զոր մեծն Գրիգոր ասէր Նազիանզու, թէ՝ Ո երիս գոյութիւնս ոչ միոյ իմանալ ժողովման, կամ լուծանելոյ 'ի միմեանս, եւ կամ խառնակութեն. եւ դարձեալ, Եթէ ոչ անձնութեամբն միաւորես, օտար ազգաքէն 'ի ներքս ածես բնութիւն, եւ յանհաւատարս զգուգահաւատարն դնես գոյացութիւն։ Որդ այսպէս ընդ խաւար զճշ-

մարտակոցին շօշափեցեր լոյս . և զկուրութիւն մտաց քոց զօրբովքն արկանես հարամբք, զորս Ճարտարս Յունաց անուանեցեր . և զայս 'ի քեզ հայելով տեսցեր . զի թէ դու 'ի գիտութէ էիր եղեալ, զայլս ոչ անուանէիր գիտունս : Իսկ մինչ Ճարտարս զնոսա խոստովանեցեր, զատ 'ի նոցանէ իմաստաբար տեսցեալսն էիր ոչ ընդունիցիս : Բայց իցեն ո՛վ արդեւք Ճարտարքն այն Յունաց, հարցանեմ զքեզ՝ թէ զՃըշմարիտն ասասցես . զի թէ և դու կամիցիս ստել, ամբաստանականն քո բանն որ զնոցանէն՝ յանուանէ մեզ զստացօղս բանիցդ այդոցիկ ցուցանէ : Ասացեր, թէ դիմօք և առանձնաւորութ̃ բաժանեն, և ծ̃նութ̃ն միաւորեն : Այս 'ի սմ̃ց հարանցն ասացեալ եղև . Ոչ ծանօթութիւն յիւրաքանչիւր ումեքէ բարձեալ լինի, և ոչ առանձնաւորական նմանութիւն յայլում ումեք երևեալ : Դու եթէ՝ Բաժանի անբաժանաբար, և միաւորի որոշմամբ . ոչ զմիաւորութիւն խառնակութ̃ի գործելով, և ոչ զբաժանումն՝ օտարութ̃ի : Դու եթէ՝ Պարտ է զմի ա̃ծութիւն պահել, և զերիս դէմսն խոստովանել, և կամ զերիս գոյացութիւնս . և զիւրաքանչիւրոք հանդերձ յատկութեամբ : Դու եթէ՝ Ոչ անգոյք են անուանքն, կամ միոյ դիմաց . մինչ զի լինել Ճոխութիւն մեր անուամբք, այլ ոչ իրօք :

Այս են երջանիկ հարանցն ա̃ծաբանական դաւանութիւն . որովք բանիւք դու հերձուածօղս առաներս զնոսա, և ոչ զանգիտես և զարհուրիս՝ զթունալից որպէս զօձի զլեզուդ քո շարժել ընդդէմ նոցա, որք արբանեակք և սպասաւորք եղեն Բանին ա̃յ . անյողդողդելի հաւատով զնորայն հիմնացուցին զեկեղեցի : Դու զի՞նչ զարմանք են յա̃ծազանիցն ոչ պատկառել քեզ արանց . որ զի և առ նոյն իմքն վեհագոյն բնութիւնն անամօթեցար զհայհոյութեանդ քո ձգել բանս, ոչ խոստովանելով 'ի միում անեղ բնութ̃ե զերիս դէմսն և զերիս առանձնաւորութիւնս, զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին : Ընդ ձեռն որոյ 'ի բաց բառնալով զպատՃառն՝ որով իւիք միմեանց են և ասին, ընդնմին բարձեալ լինի և իւրաքանչիւր ուրուք նոցա գոյութ̃ն . ընդ որով ապա և ոչ Աստուած, և մնալ քեզ անաստուած, որ այդպէս յանդուգնդ ես յա̃ծատե-

սուտս․ որ իմաստասիրեսդ և ասես, թէ որ 'ի Հօրէ անձնն էր՝ նոյն անձնաւորեցաւ 'ի սբ̃ կուսին ։

Յորժամ ընդ Հօր զնա ա̃ծաբանէիրն, ոչ շնորհէցեր նմա զկատարելութի̃ ունել դիմի․ իսկ այժմ երկուցեալ՝ թէ մի գուցէ խոստովանել հասցէ 'ի կուսէն, այսինքն 'ի մարդկային բնութէս, զկատարելագոյնն տալ նմա գոյութի̃ մարդեղութե̃, անձն 'ի Հօրէ զնա անուանեցեր ։ Իսկ մինչ անձն ասես, ընդէր հրաժարես զնա դէմ ասել․ եթէ արդեւք վարդապետեցար 'ի քում արուեստաբանիդ՝ այլ գոլ զանձն, և այլ զդէմս․ որ թէպէտ և է ուրեք՝ որ զանազանի 'ի զանազան տեսակս, սակայն առ մի և նոյն առեալ իրակութիւն զնոյն երկոքին ակնարկեսցեն ։ Վասնզի զուժեմնէ ասի, թէ անձն և եթէ դէմ․ և այս հասարակաբար զՀետ երթիցէ մարմնական և անմարմին տեսակացն․ քանզի իւրաքանչիւր առանձնաւորեալքն 'ի տեսակին՝ դէմ անուանի․ որպէս 'ի մարդկանէ Պաւղոս յատկացեալ դէմ առկոչի․ իսկ յանմարմնոցն՝ Գաբրիէլ առանձնացեալ դէմ անուանի․ սապէս յանեղագոյն էութէն, Հայր կամ Որդի կամ Հոգի առանձնակի յիշեալ՝ դէմ առասի ։ Այլ արտաորոշեալ ճանաչի 'ի նոսա դէմն այսուիկ․ Հօր ծնօղ գոլ․ Որդւոյ ծնունդ․ իսկ Հոգւոյ ելումն ։ Այլ նոյն սա է առանձնաւորու̃․ զի որով իւիք նշանակեսցի դէմն, նոյն և առանձնաւորութիւն նմին եղիցի ։

Արդ զիա՞րդ դու մոլորեցար՝ կամ ոչ իսկ ասել դէմ և առանձնաւորութիւն երեքանձնական զօրութե̃, և կամ թէ ասել՝ չարաչար ասել ընդ Լիբէացւոյն ելանել սուր․ փոխանակ երից դիմաց և առանձնաւորութեանն՝ մի ասել դէմ և առանձնաւորութի̃ ։ Այլ համայն հիացեալ եմ մեծապէս՝ զնորանշանդ 'ի քեզ տեսանելով ձևացութի̃․ զի այլք յաՀեկականացն զմի մի ինչ 'ի սատանայական ուսմանցն բարձեալ տարան շահս․ իսկ դու յոյժ ագահելով և ոչ զմի ոք անտուստ 'ի կողմանէ թողլով տենչացար․ մինչ թէ զնոյն զմարգարէին առ քեզ բարբառել իրաւացի է․ “ Ամբարձ զաչս քո յուղղութի̃ և տես, ո՞ւր ոչ թաթաւեցար 'ի ճանապարհս քո „, և որ 'ի կարգին․ առամենեսեան անամօթեալք, և 'ի խոստովանական,

և 'ի կարգս , և 'ի կրօնս , առանց ամենեցուն հոլանեալ , և զամենեցուն 'ի տեղի արարեալ լցեր զհայհոյութեամբն չափ ։

Դու հնար թուեր զխինձս հեղեղատի , և զաւազ ծովու , և զշիթս անձրևի , և ոչ զատեղծեալն առ 'ի քէն նորագիւտ բանս և իրս ։ Ընդ հակառակս ելանել ամենայնոյն խորհեցար գրոյ. "Լցցի, ասէ, երկիր գիտութ̄ տն̄ իբրև զջուրս բազումս՝ որ ծածկեն զծովս ,,։ Այսպիսակ և դու հրապուրողականդ քո բանիւք ծավալեցուցեր , զա̄մ օր և ժամ և ամիս՝ քեզ նորաձևութեան ։ Ո՞ւր տարցուք զառ 'ի քէն հասեալ 'ի մեզ աղէտս . ո՞ւմ պատմեսցուք զչարիսս , կամ ո՞ւմ գոյժ տացուք զանջատելոյդ 'ի կաթանէ , զհատուցելոյդ 'ի ստենէ . որ եդիր յերկինս զաթոռն քո , և զլեզու քո անցեալ զերկրաւ . որ ջանասդ մերժել 'ի մէնջ զօրէնս ա̄յ մերոյ , և պատմել մեզ փոխանակ այնոցիկ այլ մոլորութ̄ի . որ իբրև զձի ըստ քիմաց մտեալ՝ ոչ կասես յընթացից քոց . և ոչ ասացեր՝ թէ Ընդ հանգեայց . զի զայն առ ուժի գործէիր ։ Այլ յոյժ պնդունիս զմիտ ասել բնութ̄ի . և ասելոյդ քո խորհուրդ 'ի վաղենտինեայցն և 'ի մանիքեցւոցն հայի աղճատանս ։ Իսկ զառ 'ի յերկուց բնութեանցն ասել՝ ոչ միայն թէ լսել ոչ կարասցես , այլ և վատթարագունի իմն նմանեցուցանես տարացուցի . որ է ըստ քում ա̄ծախօսութեանդ և տարացոյցն քո ։ Իբր յաղագս այդր երկիւղի , թէ մի գուցէ զփրկչական մարմինն 'ի մարդկայնոյս ասել հարկեսցիս բնութ̄է , 'ի հանուր իսկ էակացս 'ի բաց բարձեալ տարար զանուն բնութ̄ե , ասելով . Ոչ ասի այլ բնութիւն , բայց արարչականն և եթ . և ա̄մքս 'ի նմանէ ածանցոցեալք՝ զնա ունին միայն իւրեանց բնութ̄ի ։ Որպէս զի ըստ քեզ՝ յերկուց մին պատկանեսցի , կամ զարարիչն թուել ընդ արարածս , որ է անա̄ծութ̄ի , և կամ զա̄ծութ̄ե կարծիս բերել 'ի վերայ արարածոյս , որ է բազմա̄ծութ̄ի . և նոյնպէս երկոքին անա̄ծութ̄ի ։ Այս է քո պանծալի ա̄ծաբանութ̄իդ , մանաւանդ թէ յիմարութ̄եդ ցոյցք , զնիւթս զայս յաւէժակից ասել արարչական զօրութ̄են . բնութ̄ի , և ոչ ստացուած նմա զաս համբաւել ։

Նաեւ տակայն լիրբ եւ չար լինելով զամպարշտութեդ-ոչ դիտացեր զկապարդ . որպէս ասէ մարգարէն : Յորժամ տեսանես զմարդկային ինչ ուրուք ճառ-եալ զԱյ կրից, յանդգնիս աներկիւղաբար 'ի գրե-ցելոց անտի՝ որ զայնն քարոզէ՝ 'ի բաց ընջել զբանն . եւ ասես՝ Որոմնացանն մշակացն է զայդ սերմանեալ : Որ ոչ միայն է անհաւանական՝ զոր ասես, այլ եւ անհաւատալի : Յորժամ չար մշակքն 'ի վերայ բարի սերմանն որոմնացանուք լինել հանդիմանային, ա-մենեքին առ հասարակ եկեղեցականացն 'ի բաց բար-ձեալ եղեն հոգաբարձուք . անտեղինչ 'ի Ած առ-մի հաւաքեալ զաւիթ շրջէին հօտիցն բազմութիւն . ոչ որք տեսանէր, եւ ոչ այն որ լսէր : Արդ եթէ էին ոմանք, այլ եւ յոլովք եւս կենդանիք մնացեալք, զի՞արդ էր՝ եթէ զԹիւրութեան արտահալած առնելով զա-ւանդիչս, զխուրեանցն 'ի ձեռս նոցա տային առ 'ի թիւրել զուղղասացութի :

Նա կամ զորս 'ի մէնջից աստի Հոգին սուրբ զար-թոյց՝ լինել զկնի առաքինոյն լուսաւորիչք . զերկուսին զնոսա ասեմ սիրս՝ զՍահակ եւ զՄաշտոց, եւ զաշակերտ-սին զընտրեալսն զարբանեակս նոցուն եւ զգործակիցս, զԵղնիկ եւ զայլսն . եւ կամ որ ըստ նոցանէ, եւ ոչ հեռի 'ի նոցանէ՝ զմեծն իմաստասիրաց եւ զհռչա-կեալն ընդ տիեզերս զՏէր Մովսէս . որք էին միանգա-մայն արուեստաւորք թարգմանիչք եւ ուղղափառք : Նոքա եւ այնքան ոչ կարացին ճանաչել զօտարոտի խառնուածն . փոխանակ անխարդախ կաթինն հրա-պոյրս պղտորս խուրեանցայոցս արբուցին համազանց . վարձկանք եւ ոչ հովիւք լինելով անփոյթ արարին զոչ-խարացն : Ի ձեռն հնչեաց բանն այդ, եւ առ ձեռն միայն եհաս աւետարանն : Դուք ուրեմն հովիւն քաջ 'ի Ած զինքն ասացեալն . ամենեքեան՝ որ յառաջ քան զձեզն էին՝ գողք էին եւ աւազակք :

Նա եւ ասէք . ածսիրութեան միանգամայն եւ ուսու-մնասիրութեան ըմբռնեալ ցանկութի, որոց եւ հան-դիպել կարացին գրեցելոց՝ թարգմանեցին եւ բերին :

Օ՜ ինչ ասէք . ածասէրք լինելով ածատեցութեն յանդգնէին չուցանել գործ . եւ յուսումնասիրութե անտի կանխեալք՝ ելանէին առ յիմարութի՞ւն, զշառնն

քաղցր վարկանելով, և դնելով զխաւարն իբրև զլոյս. զչարն ընդ բարւոյ փոխանակել, և բառնալ բերել զմարգարէականն 'ի գլուխս իւրեանց վայասացուն :

Այսպէս մնոտիս զմտօք պատէք, որպէս ասէրն Յովբ. և դնելով սուտն 'ի յոյս ձեր՝ ընդ ստութեան և մտեալ ծածկիք ըստ Եսայեայ բանին : Եւս քաղցնուլ գրեալ յաւետարանին զՅիս, և զուղիս այնու-հետև 'ի շատխօսութեանն հոսանս ասելով. Որպէս վայել է մ̃յ քաղցնուլ՝ զքաղցն իմանամ, և ոչ մարդկայնովս օրինակեալ ներքատակեմ զնորայն : Զի մարդումս քաղցնուլն զապականութիւն ներգործէ, և նոյն ինքն քաղցն ոչ է այլ ինչ, եթէ ոչ ապականութիւն :

Այլ ես նախկին, զի և ոչ իւիք գիտեմ զանծայրին հարկաւորագունիցն ներքոյ անկեալ բռնութե. զի թէ այս էր, հարկ էր և մարմին ասել գոլ զպարզն և զանմարմին զօրութիւն : Եւ սուտ լինի ըստ ձեզ 'ի կնոջէ մարդ զնա լինել գրեալն. այլ զինքեանն բերեալ երեւեցոյց մեզ յերկնից մարմին : Ընդ ձեռն որոյ երթեալ համդիպիս զոր միշտն խնդրես, Եւտիքեայ առասպելականին : Օրինակ իմն, մանուկ մոլորեալ՝ ուրանօր և երթիցէ, զմայրն վերաձայնեալ կարդայ :

Դարձեալ զի և որ 'ի մեզ բնաւորականքն են՝ հոգեկանք և մարմնականք, ոչ են ապականիչք և կամ ապականութիւն բնութեանս մերում : Քանզի ապականութիւն՝ ներլինելութեան ներհականայ. և ներհակքն ոչ կարեն համանգամայն 'ի միում և 'ի նոյն ժամանակի բաղկանալ. իսկ քաղց և ծարաւ և աշխատութիւն և տրտմութիւն և հոգք և երկիւղ և ցասումն՝ եւս և անգիտութիւն և որ սոցին նմանք, համանգամայն ընդ ներլինելութեանն բանի առեալ լինի մարդումս. ապա ուրեմն ոչ են այսուքիկ ապականութիւն. զի եթէ էր ապականութիւն, ոչ կարէր 'ի միասին ընդ գոլոյն բաղկանալ. այլ են բաղկացականք գոյացութե : Քանզի ասէր գոյացուցիչն մերում նախահօրն. "Յամ ծառոյ՝ որ են 'ի դրախտիդ, ուտելով կերիցես ": Այս՝ ո՞չ ապաքէն ըստ բնութեան պատշաճեալ կերակրոցականին առաջի դնէր զպէտս. զի եթէ ոչ այս այսպէս, աւելորդ վարկանիմ զամենապտուղն զայն տնկագոր-

ծողլին անկեալ զդրախտն. և 'ի նմա դնելով զմարդն՝ հրամայեալ անդուստ վայելել նմա ։

Այլ դարձեալ թէ՝ « Ի պտղոյ ծառոյն՝ որ 'ի մէջ դրախտին, մի՛ ուտիցես, զի մի՛ մեռանիցիս » ։ Այլ թէ ոչ երկիւղին տրամադրութի 'ի բանականութեանն նորա բնաւորեալ էր յոգւոյն, զխո՞րդ զգուշացուցանէր, և կամ զգուշացեալ լինէր, և կամ մեղադրիւր յետ ոչն զգուշանալոյ ։ Այլ յառաջ քան զայս գրեալ է, գործել զնա և պահել զփափկականն զայն դրախտ՝ զոր անկեացն ։ Առաջինն զաշխատութիւն, և երկրորդն զհոգալն ըստ ինքեան շարամանեալ ունի ։ Իսկ զքը նոյն ունակութի բացայայտակի 'ի գրեցելոց անտի բանից ծանեաք. « Արկ, ասէ, ած թմբրութի 'ի վերայ Ադամայ՝ և ննջեաց » ։ Ոչ արտաքուստ 'ի նմա բերելով զքնոյն իրակութի, այլ բնաւորականին ըստ պիտոյիցն 'ի վերայ անկեալ կրից ։ Իսկ զցանկութի՝ յորոց ցանկացաւ հրաժարեցուցեալն պտղոյ՝ իմանամ ։ Այլ զոր ասէն, « Ադամայ ոչ գտաւ օգնական նմա՝ » այսուիկ զտրտմութի նշանակէ զնախաստեղծին, զայլս 'ի կենդանեացն զուգակենակցաբար ըստ ազգի տեսանելով վայելչացեալս, յաղագս նորին տրտմէր ըստ իւրն միայն անտուն ամայութի և զրկանս ։ Այլ և զյառաջգիտութեն ոչ ըստ բնութե 'ի նմա ասեմ զոլ նախատեսութի, այլ յածայլին հոգւոյն ազդմանէ, որ երբեմն շարժէ, և երբեմն առ ինքն ամփոփեալ՝ թողացուցանէ զմտաւոր և զբանական հոգին. զի այսպիկ ոչ ոք յարարելոց աստի արժանացաւ հասանել գոյից. միայն արարչականին այս հետեւեցի. որպէս և ինքն Եսայեաւ ասէ. « Զի՞ք այլ ոք բաց յինէն, որ գիտիցէ զվերջինսն՝ մինչև եղեալ իցեն, և միանգամայն կատարեսցին »։

Արդ յայտ է, եթէ ըստ բնութեան և նախ քան զյանցանելն այսուքիկ, և ոչ յետամտականաբար 'ի մեղացն 'ի ներքս անկեալ 'ի բնութիս. որպէս և քեզ թուեցաւ ասել ։ Բայց վասն զի մի և նոյն անձնիշխանութի առաջնորդականին՝ յերկուս կողմանս հակամիտեսցի յարձակմամբ ցանկութեն, երկատեսակ իմն սոցայն կարծեսցի զոլ տրամադրութի. որ մին հոգւոյն անուանի, և միւսն մեղաց ։ « Օրէնք հո-

գւոյն կենաց ազատեցին զիս յօրինաց մեղացն և մա-
հու՝» Պաւղոս ասէ. և եթէ «Տեսանեմ այլ օրէնս զինեալ հակառակ օրինաց մտացս , և գերեալ զիս ա-րինօք մեղացն որ են յանդամս իմ»։

Արդ ոչ եթէ ներքսածողականք են մեզ մահուն և ապականութեան քաղցն և տրտմութին և այլքն ամենեքին , և կամ ինքեանք սոքա ապականութիք իցեն. այլ 'ի ձեռն առնլոյ առաջնորդականին , որպէս երկրագործն զսերմանսն՝ սերմանելով նոքօք առ մարմին՝ 'ի մարմնոյ անտի հնձեսցէ զապականութի: և սերմանելով 'ի հոգին՝ 'ի հոգւոյ անտի հնձեսցէ ըզկեանսն յաւիտենից։ Ոչ էր ինքն տրտմութին մահ, այլ աշխարհի տրտմութին ներգործէ զմահն. իսկ որ ըստ ա՟յ տրտմութին է՝ անզղջականին հանդիպեացի փրկութե։ Նաև ոչ այս միայն, այլ և որ փոխանորդենն զնոսա հակակայքն՝ նոյնաձևապէս իմն երբեմն առ կեանս , և երբեմն առ մահ պարապերելով ածանին. քանզի ուրախութի փոխանորդի տրտմութին , և զուարթութին՝ որ չարութին է չարամանեալ առսուգ և տրտմուի՝ 'ի բաց հալածել սպառնայր մեծն Յակոբոս. «Ծաղր ձեր, ասէ, 'ի սուգ դարձցի, և ուրախութի ձեր 'ի տրտմուի»: և նովին այսուիկ ուրախութի՝ որ առ ա՟ծ , սիրովն ընդարձակեալ հոգին , յա՟մ ժամ ուրախանալ հրամայի 'ի Պաւղոսէ։ Նոյնպէս և ուտելն որ յորկորստութենն է դարովլն. իսկ այն որ ա՟ծայնն փառացն է լրումն՝ սեղանն , բարերանեալ լինի , ըստ նորին իսկ առաքելոյ բանից. «Եթէ ուտիցէք, ասէ , եթէ ըմպիցէք , զա՟մ 'ի փառս ա՟յ արասջիք»։

Արդ յայտ է յասացելոց անտի՝ և վասն նախաստեղծին ասել, թէ ցորքան զպատուիրանապահութին թևակոխէր,նոքումբք այսոքիւք բնաւորականօքս ընդդիմամարտուցեալ 'ի բաց յինքենէ հալածէր զմահն և զապականուի. և այնպէս յարատևողագոյն գոյացութի՝ անձառնելեաց երթեալ հանդիպանայր կենաց։ Իսկ յորժամ առ պատուիրանազանցութին 'ի վայր սողոսկեալ անկաւ, յորմէ և մեղացն եղև բողբոջ, յայնժամ ընդ լծով մահու և ապականութեան մտեալ հնազանդիւր։ Նաև այսպէս ոչ ստեղծիչն , և

ոչ ստեղծեալն 'ի նմանէ, այլ ինքնակամութեան ստեղծուածոյն և պատրանք բանսարկուին զմահն և զապականութիւն 'ի մեռուն յարադրեաց բնութեան : Բայց սակայն դժուարաշարժ առ մեղսն յայնժամ, և դիւրաշարժագոյն առ բարին. որպէս և այժմիկ յապականացուս մնկեալ կեանս՝ հակառակաւն այսօրիկ վտանգիմք, դիւրաշարժ առ մեղսն, և դժուարաշարժ առ առաքինութիւն փոփոխելով :

Եւ զայս այսպէս որպէս յընթացման ըմբռնեալ բանիւս՝ քոյինն սակս բանի. զի զնոյն ինքն բնաւորականս՝ ապականութեան թարգմանեսցէք. ոչ միայն որք ընդ մարմնում են յարահիւսեալ աշխատութիւն և քաղցն և քունն, այլ և որ յոգւոյն են եռատեսակ մասունք, խոհականն և ցանկականն և ցասմնականն. [1] որք են՝ ոչ այլ ինչ, այլ բնաւորականք և բնութիւնք մարդկային կազմածիս, հակառակամարտք զինեալք պատուիրանապահութեան առ մահն և ապականութի. իսկ 'ի պատուիրանազանցութեան վահանընկէց լինելով մատն եղանին թշնամեացն :

Արդ զի երևեցոյց բանս՝ ոչ մեղք և ոչ ապականութիւնք հոգեկանացն և մարմնականացն մերոց լինել կրից, այլ որակք ոմանք, և որակութիւնք մարդկայնոյս պատուշաճեալ գոյացութեան. զի՞նչ զարմանք են, թէ՝ և Փրկիչն սոքօք 'ի կենցաղավարելն ընդ մարդկան վարեցաւ, ուրանօր և կամեցաւ, և յորժամ և որքան. ոչ օտար յեղանակաւ և կամ ստուերաւ իւիք, այլ ճշմարտութեամբ. և զմերն իսկ առաջի արկանելով բնաւորականս՝ թուլացուցեալ մարմնոյն կրել զիւրան : Սուրբն Գրիգոր, ասէ, Նիւսացի. Քանզի անսուաղ ասէ զքառասուն օր մնացեալ՝ յետոյ քաղցեաւ. և ետ յորժամ ախորժեաց բնութեանն զիւրն կատարել :

Ապա ուրեմն ըստ օրինի մարմնոյն իւրոյ՝ զոր 'ի մէնջն ընկալաւ, զմերն կրէր կիրս. և ոչ ըստ ածութեն, որպէս քեզ թուի ասել : Զի եթէ ըստ ածութեանն հնար էր զմարդկայինսն կրել Քնի, ապա թերևս ոչ մարմին էր զգեցեալ 'ի կուսէն 'ի մերմէ բնութենէս, այլ զնոյն զնախահարցն էր պահեալ զեր-

1 'ի լուսանցս. ցասմնականն.

ւութեական տեսութեն ․ որպէս առ Աբրահամաւն ե-
կեր, և ընդ Յակոբայ եղև կառակից ․ ցԱդամ և
ցԿայէն անգիտաբար հարցանէր ։ Իսկ եթէ այն նը-
մանութիւք և օրինակք էին ճշմարտութե, իսկ այս
նոյն ինքն ճշմարտութիւն և ոչ օրինակ, ապա յայտ է
ուրեմն, թէ ճշմարտութի էր և երևումն, ճշմար-
տութի էր և երևեալն, ճշմարտութի էր և կերելն,
ճշմարտութի էին և կերքն ։ Այլ թէպէտ և ածային
զօրութիւն կարող է և 'ի նմանութե զճշմարտութիւն
պահել, որպէս ասաց ոմն 'ի սրբոց մերոց Գրիգորիոս,
սակայն առ վերջնովս զառաջինսն յիշեցեալ զերև-
մունս և զկերս՝ նմանութի և օրինակ զնոսա ասելն
է, և ոչ ճշմարտութի ։ Իսկ ճշմարտութիւն կոչեմ
զկերն, և ոչ զանուննն միայն ։ Արդ որպէս իր էր ե-
րևելն 'ի կնոջէ, իր ուրեմն էին և ներգործեալքն 'ի
նմանէ և կրեցեալքն ։ Այլ որպէս զմարմինն Բանին ոչ
յայլմէ իմեքէ ծանեաք, այլ 'ի կուսէն, այսինքն 'ի
մարդկային զանգուածոյս, նոյնպէս և զկերսն մարդ-
կայինս ըստ մեզ և զմերոն ասեմ կրեալ Քնի, և ոչ
ըստ ածայնոյ, և կամ զայլոյ ուրուք ։ Որպէս և մեծն
Գրիգոր ասէ Նազիազու ։ Կրկին էր՝ ըստ որում
վաստակեցաւն, և երկեաւն, և արտասուեացն, և
քաղցեաւ, և ծարաւեցաւ օրինօք մարմնոյն ։ Կրկինն
ասել զած Բանն, և զնորայն յայտնեաց մարմինն. և
օրինօք մարմնոյն ասելն՝ ըստ մարդկութեն, և ոչ ըստ
ածութե նշանակէ կրել զկերսն ։ Զոր դու և ոչ զմի
զոք յայդցանէ կարես առնուլ յանձն. յաղագս որոյ
զնոյն ինքն ընքեան զմարդկային կազմածս մեզս ա-
սացեր դու ։

Զորմէ առաւելաշնորհն Սեւերիանոս ասէր զա-
բաղացւոց եպիսկոպոսն 'ի տնօրէնութեն Փրկչին բա-
նի ․ Անշարչարելին, ասէ, չարչարի չարչարելեաւն ․
ոչ ընդ այնու կարեօք եմուտ որ 'ի մեղսն տանիցին,
այլ որ զհասարակաց բնութիւս պատեալ է ։ Քանզի
ոգի և մարմին ծառայեն կարեաց՝ որ 'ի մեղսն տա-
նին, և այնց կարեաց՝ որ արտաքոյ քան զմեղսն ի-
ցեն ․ այսինքն քաղցնուլն և ծարաւելն, և վաստա-
կելն և ննջելն՝ մարմնոյն կարիք են, այլ ոչ եթէ 'ի
մեղս համարեալ իցեն ․ իսկ պոռնկութի և պղծութի

և հակառակութիւն այն կարիք մեղաց են ։ Նոյնպէս և ոգին ունի պատեալ զիւրև կարիս յարարչէ բնութեան ընկալեալ զօգտակարսն և զկարևորսն, զերկիւղն և զտրտմութիւնն և զցասումն ։ Այլ եթէ ընդ առանձինն քննիցեն, կարիք կոչին . իսկ չափով և ըստ ժամանակի՝ օգնականութիւն են բնութեան ։ Զայս ասաց, և ՚ի վերայ եբեր՝ ասելով . Զկարիս մարմնոյ և ոգւոյ՝ որ արտաքոյ քան զմեղսն իցեն, կալաւ յանձին կենարարն . քաղցեաւ ըստ մարմնոյ, ծարաւեցաւ վաստակեցաւ ննջեաց . և այնու ոչ եթէ զաստուածութիւն ինչ թշնամանեաց, այլ վասն զմարմնոյն բնութիւն ճշմարտութեամբ յայտնելոյ ։ Նոյնպէս և ըստ շնչոյն՝ երկեաւ տատամնեցաւ, տրտմեցաւ . « Տրտում է ասէ շունչ իմ մինչև ՚ի մահ ». և դարձեալ թէ՝ « Սկսաւ տրտմել և հոգալ ». և այն չէին կարիք մեղաց, այլ բնութեան մարմնոյն ծանուցիչք ։ Այլ դարձեալ ասէ ։ Զի յառաջագոյն կարկեսցէ զբերանս հերձուածողացն, և յայտ արասցէ, թէ զայս մարմինս զգեցաւ, որ ընդ բազում կարեօքս մտանէ, որ զանգիտէ ՚ի չարչարանաց, որ դողայ ՚ի բռնութենէ մահու, որ խռովի և տրտմի ընդ վախճան կենաց ։

Ահաւասիկ յայտնի բանիւ երևեցոյց սուրբ հայրս՝ ոչ մասունս գոլ մեղաց և ապականութեան, որ ՚ի մեզ գտանին կիրքս, այլ բնական մարմնոյ և ոգւոյ կարիք . առ որս կամաւ և ըստ կանխատեսութեան խորհրդոյ յայնոսիկ խոնարհէր տէրն, և ոչ եթէ բռնազբօսութեամբ զփրկչականն զիւրեամբք ածել կարէին զմարմինն . զի այս սոսկ մարդոյ է՝ բնականացն ՚ի հարկէ կալ ծառայութեան կարեաց ։ Իսկ Բանն Աստուած ընդ ինքեան անքակաբար զմերն միաւորեաց . յորժամ կամէր ինքն, յայնժամ ակնարկէր մարմնոյն իւրոյ յառաջ ունել զբնականսն, առ ՚ի ճշմարտելոյ զբովանդակն ընդ ինքեան միաւորել զմարդկայինն զոգի և զմարմին ։ Որպէս հրաշալին ասէ, Յոհան Կոստանդինուպօլսի . Այլ զիա՞րդ այդուցն քաղցնոյր . յորժամ կամէր և թոյլ տայր, ասէ, մարմնոյն, յայնժամ զգայր իւրոց կարեացն ։

Եթէ այդպէս է ասեն ; ապա փոփոխելի էր Բան. Երբեմն տկարանայր մարմինն՝ թոյլ տալով նմա բա-

նէին, և երբեմն զօրանայր՝ ընկալեալ 'ի բանէն ։ Պատ-ճեալ Թիւրահաւատք առ 'ի Թիւրել յանդգնեալք զհաւատս ուղիղս ։ Ո՞ր ինչ ասեն և զմտաւանելն վասն մեր զՔ՛Ս. եթէ ըստ քեզ է, կամ մնաց և փոփոխեցաւ, և կամ թէ ոչ փոփոխեցաւ և մնաց ոչ ։ Ապա եթէ և մնաց և ոչ փոփոխեցաւ, ըստ նմին և ընկալաւ զկերպն, և ոչ այլայլեցաւ 'ի կերպն. և որպէս 'ի մահուն զմերն ընկալաւ զմահ, այս է որո-շեալ զշունչն 'ի յիւրմէ մարմնոյն, սոյնպէս և 'ի կերպն՝ մերումն նոյնաձևապէս հաւասարեաց կերպ ։ Որպէս սուրբն Բասիլէոս ասէ յառ. գոհութեանն Ճառի՝ ասելով. " Արդ որպէս ընկալաւ զքաղցնուլն Տէր՝ հաստատուն կերակուրն չնչեցեալ 'ի նմանէ, և զծարաւելն իրաւացոյց խոնաւութեան ծախեցելոյ որ 'ի մարմնին. և վաստակեաց մարմնոյն և ջղացն յու-ղեգնացութիւն ձգեցելոյ. ոչ Աստուածութեան աշխատութէ տաժանեցելոյ, այլ մարմնոյն. որ 'ի բնութեան յար-մարագոյն է՝ զպատահումնն ընկալաւ. նոյնպէս և զարտօսրն իրաւացոյց, զմնականն լինել 'ի մարմնի ըն-պատահումնն Թուլացոյց ,, ։ Նոյնպէս 'ի մեծ հայրն ։

Աւստի յայտ է՝ թէ հաւատապէս բնականացն Թոյլ տուեալ՝ զանցնիւրան¹ իրողութիւն առ իւրն անսա-պականապէս ազդել մարմնն և հոգի ինքնիշխա-նական կամօք՝ յորժամ և կամեցաւն. ոչ անուանն և ձևոյն ևեթ, այլ առաւել իրացն՝ որոց և անունն՝ յիւրաքանչիւրումն համբերեալ. և այսր աղագաւ ըն-մերն ասի ընդունել կիրս ։ Այլ և ըստ մեզ, եթէ ոչ յոյժ զայթագղեցիս բանիւս, զապականութեան ընդ-միտ ածելով տեսակս. քանզի ես զբնականացն ասեմ բուռն հարկանել զՔ՛Ս. դու զանբնականսն 'ի ներքս մղես, այս է զապականութի և զայլայլութի ։ Ոչ էր սոսկ մարդ, բայց և ոչ Ած մերկ. այլ մանաւանդ Ած և մարդ միանգամայն. էր ինչ որ ըստ մեզ, և էր ինչ որ ոչ ըստ մեզ՝ յինքեան ցուցանելով Տէրն. քաղցեաւ ըստ մեզ, և քաղցելոյն ոչ ըստ մեզ՝ առ յագեցուն երկնային բարութեան զմեզ փոխաբերեաց ։ Եթէ յա-տուկ մարդ, ոչ ևս ընդ կքելն ներգործեալ կարող.

1 'Ի ըստ աւանդից. զանցնիւրեան ։

և եթէ միայն ած, ոչ ևս ներգործելովն կրել զի-
տակ։ Բայց այժմ առ երկոսին միանգամայն քաւա-
կան լինել, առնլով յինքն զտկարութիւնս մեր և ըստ
մեզ, եղեալ և մեք զօրութեն նորա հաղորդք և ըստ նմա։
Ընդխտացաւ, և նովին մարգարէաշնորհս զմեզ
յարդարեաց։ Մեռաւ ըստ մեզ՝ թաղմամբ տալով
զիւրն մարմին, և ստուգապէս մարդկային շնչովն առ
դժոխականսն ժամանեալ. յորոց միովն՝ զմահուն
ընկալաք լուծումն, և միւսովն՝ զապականութեանն զքակ-
տումն։ Նա միանգամայն առնել, թէ զամենայնսն իւր
ընտանեցոյց զմերումն բնականս, որովք իւրումն զմեզ
ընտանեցուցանէր բնականաց։ Նա զայս լուսաւորա-
գոյնս մեծն Աթանաս ասէ Աղեքսանդրի. «Համ-
բերեալ Բանին ծննդեանն մարմնապէս. և զնորին ա-
րարածն 'ի մեղս և յապականութեան և 'ի մահու ցըն-
դեալն՝ ինքեամբ ժողովեալ նոր պատկերաւ. վասն
որոյ զմեղացն դատապարտութիւն յերկրի .արար, և
զանիծիցն քարձումն 'ի վերայ փայտին, և զապակա-
նութեան քակտումն 'ի գերեզմանին, և զմահուն լու-
ծումն 'ի դժոխս։ 'Ի վերայ ամենայն տեղւոյ եւ, զի
ամենայն մարդոյ փրկութիւն գործեսցէ, զպատկեր
մերոյ կերպարանիս յինքեան ցուցանելով։ Բանզի
զի՞նչ պէտք էին այ ծնանել 'ի կնոջէ, առնել հաստակաւ
և ամաց թուով, որ և զյաւիտենականն արար. և կամ
դարձեալ խաչին և գերեզմանին և դժոխոցն, յորս
մեք անկաք. եթէ ոչ զմեզ խնդրէր՝ 'ի ձեռն մերոյ
պատկերիս կենագործելով զմեզ, և յիւր միաբանու-
թիւն և նմանութիւն կատարեալ պատկերին կոչիցէ
զմեզ»։

Զայս այսպէս առնելով ածազանն հօր յայտ արար,
թէ ոչ մեծազօրն ևեթ իւրով զօրութեամբ և կամ իշ-
խանասաստ հրամանաւն զմերն տանջեաց տանջիչս
Բանն ած, այս է զմեղսն և զապականութիւն և
զմահ, այլ մարմնով իւրով որ 'ի մէնջ, և բանական
հոգւովն 'ի նոսա հպեալ՝ զյաղթութիւն ցուցանէր։
Նա այսպէս երկրորդս Ադամ առաջնոյն գտաւ նորո-
գող. զի զոր օրինակ նա վիրաւորեալ 'ի մեղացն՝ հա-
կառակորդին ետ զինքն 'ի ծառայութի, սա անմե-
ղութ մերձեցեալ զմեղսն դատապարտեաց. և վերա-

ւորեցելոյն 'ի վերայ բերելով զողջութիւն՝ ծառայեցուցանել զծառայեցուցիչն հրամայեաց ծառայեցելոյն ։ Եւ զայս գտեալ մեր զազատութիւն 'ի տնէն՝ ոչ այլով իւիք օրինակաւ, այլ 'ի ծառայական կերպն առնուլ, զոր կատարեաց իւրով մարմնովն հնազանդլեալ ^ օր մահու չափ. որպէս թէ 'ի տկարութեան զաւրութիւն ցուցանել, և 'ի խոնարհութեն գործել ճանապարհ առ բարձրութիւն ։ Զայս և մեծն Գրիգոր 'Նազիանզու ընդարձակագոյն բանիւ բարբառեալ ասէ. "Սերպարանէ զօտարին բովանդակ յինքեան զիմ՝ բերելով համդերձ իմովքն, զ՞ինքեամբ ծախեսցէ զչարութիւնն իբրև զմոմ հուր, և կամ իբրև զգոլոշի արեգակն. և ես հաղորդեցայց նորայոցն յաղագս խառնմանն. վասն այնորիկ գործով պատուէ զհնազանդութիւն, և զփորձ առնու զնորա 'ի չարչարելն ։ Զան զի ոչ էր բաւական սէրն, որպէս և ոչ մեզ, եթէ ոչ և գործովք կատարեալ էր մեր. քանզի գործքն ցոյցք էին սիրոյն ։ Ոչ ինչ է վատթարագոյն թերևս և զայն զմտաւ ածել, զի փորձէ զմեր հնազանդութիւնն՝ և չափէ զամենայն իւրովք չարչարանօքն՝ արուեստիւ մարդասիրութեան, որպէս թէ ունիցի գիտել իւրովքն զմերս,, ։ Եւ զայս նա ։

Բայց մի զամենայն զմարդկական կարիսն 'ի միում շարի հարեալ ընդ մի համարիցիս. իբրու թէ նմանապէս ամենեցուն զմաւորելն տոցա առ մեզ վարկանելով. որովք և ոչ ամենեքումբք այսոքիւք զփրկչականն պարտ և արժան է ասել զկիրընդունակութիւս ։ Քանզի ոմանք 'ի նոցանէ ընականք ասին՝ ըստ բնութեան 'ի մեզ տրամադրեալք. որպէս քաղցն և ծարաւն և քունն և աշխատութիւն, տրտմութիւն և երկիւղն և ցասումն և անգիտութիւն ։ Իսկ ոմանք յետամնականք 'ի մեզ եղեն. յորոց մին 'ի նոցանէ՝ 'ի մէնջ ընկալաւ զսկզբնաւորութիւն, այս ինքն մեղքն, որ զպատուիրանն ուսոյց արհամարհել. իսկ ոմն յարարչէն պատուհաս ընդ յանցանացն 'ի վերայ եդաւ՝ մահն ։ Իսկ ապականութիւն հետևանք ասին մահուն. ոչ 'ի մէնջ և ոչ յարարչէն յարեալ եղև 'ի բնութիւս,

1 'Ի լուսանցսն գրչ. ։

այլ որս գտեալ և կերակուր արարեալ իւր զմոդ մա-
հուամբ անկեալսն . քանզի ներլինելութեն է ներ-
հական, որպէս յառաջն ասացի, որ ապականէ զկրն,
և գոգցես թէ յանգոյութի զգոյն խնդրէ ներածել :
Որով առաւել խնդայր, և չարաչար յուսոյն զուար-
ճանայր խաբեբայ և պատրիչն մերոյ նախահօր, որ-
պէս թէ յաղթեալ նախանձելւոյն . և զանուանեալն
'ի բոլոր գոյացելոցս պատկեր արարչին խափանել կա-
րացեալ, որում ոչ իցէ հնար լուծեցելոյն առ նիւթն՝
յորմէ գոյացաւ՝ վերստին միւսանգամ գոյանալ վս-
տահանայր . և վասն այնորիկ անշունչ և անշարժ նիւ-
թոյն անփոյթ արարեալ՝ միայն բռնացեալ պահէր
զկենդանական շունչն : Սորին աղագաւ ոչ տուեալ
թոյլ ապականութեանն առ իւրն մերձենալ մարմին՝
որ կենագործեսն եկն զմեզ Բանն ած, որ հանդեր-
ձեալն էր քակել զսա 'ի մեռանելն իւրում : Օրինակի
իմն՝ չինուածոյ զհիմնն 'ի բաց առեալ, և կամ կոր-
ծանումն քաղաքի եղեալ՝ 'ի տապալել զպարիսպն :
Իսկ մահուամբն թէպէտ և պատժեաց զմեզ՝ որ ի-
րաւապէսն դատիւր, այլ սակայն երկեակս 'ի նմին 'ի
մահուն մի ըստ միոջէ զօգտութեն ծածկեաց զսեր-
մանս, որք են այսոքիկ . յորմէ վտանգեալ լինիմք՝ 'ի
վախճան հասանել մեղացն, և անլուծականի կենդա-
նութեան լինել սկիզբն : Եւ յաղագս այսորիկ ամ
փութով եկեալ յանձն առնոյր զսա տրն . զի մեղացն
արասցէ լուծումն, և զապականութեն խափանեսցէ
զյափշտակութի . զի և յարութեն կոչեսցէ զմեզ առ
վերին կեանսն :

Բայց կամիմ սակաւուք ևս ձգտել՝ որ յաղագս ա-
պականութե իցէ բանս . զի և արժան իսկ է զառա-
ւելագանցս զայս չար մարդկայինս ազգին՝ յոլովագու-
նիւք հրապարակել բանիւք . զի գիտասցէ խոհեմա-
գոյնն, թէ որպիսի՞ պատուով յիսկզբանն յայ ստեղ-
ծաւ բնութիս . և յորպիսի՞ և յո՞րքան յինքնակա-
մութեն սայթաքեալ եկն յանարգութիւն . և կամ
զիա՞րդ եղև փոյթ արարչին մերոյ սակս մերոյն փըր-
կութե մարդ լինել, և արեամբ խաչին իւրոյ ազա-
տել զմեզ միանգամայն 'ի մեղաց և յապականութէ,
և 'ի ծառայութէ բանսարկուին բռնութե : Արդ է

ապականութիւն բոլոր իրի քակտութեան պատճառ՝ այլայլութ̃ 'ի վերայ հասեալ. քանզի բոլորն 'ի մասանց բաղկանայ. և զբաղկացեալն 'ի մասանց քակտէ ապականութիւն, զայլայլութիւն 'ի գործ արկանելով: Օրինակ իմն. որպէս թէ առաջի կայցէ բանիս՝ տունկ ինչ 'ի տնկագործողէն իւրմէ խլեալ. առ որ մերձեցեալ ապականութիւն՝ փախուցանէ 'ի նմանէ՝ նախկին հրաման տուեալ այլայլութեան, զմնականն որ 'ի նմա որակութիւնս. և փոխանակ այնոցիկ զանվայելչագոյնսն 'ի ներքս ածէ զորպիսութիւնս. և ոչ տայ թոյլ մնալ նմա յայլայլութեան յայնմիկ, այլ 'ի վայր քարշեալ՝ անցնիւրցն մատուցանէ զնա յորոց բաղկացաւն տարերց. զոր ապա կարողութիւն է միայն ամենազօր ձեռինն՝ միւսանգամ զքայքայեալն նիւթ առ նոյն հաւաքելով հաստատել տեսակ:

Արդ երիս եցոյց մեզ բանս զկործանմանն մերոյ տեղիս. զառաջինն մեր իսկ գտեալ և անձին մատուցեալ զմեղսն. և զերկրորդն որ դատէրն զմեզ՝ զպատուհասն 'ի վերայ ընկէց ա̃ծ զմահն: Իսկ զվերջինն՝ հետևանս ասացաք լինել մահուն զապականութիւն. մանաւանդ թէ յաղթանակ հակառակորդին գտեալ զսա խաբէութեան իւրոյ հանդիսի: Զի թէպէտ և ասաց ստեղծիչն հողածնիցելոյն, «Հող էիր և 'ի հող դարձցիս», ոչ հրաման տալով, այլ առ որ ինչ երթալոցն էր զկնի մահուն, մակձայնելով զայն ասէր: Զի որ օրինակ՝ քար ինչ 'ի բարձուստ ուստեք հոլովեալ, որ մօտն կայցէ՝ ասասցէ, երթալ ունիս՝ մինչև ուրանօր արժանն իցէ երթալ:

Արդ են ծայրքն պարզաբար ասացեալ չար՝ և անուամբ և իրօք. իսկ միջին ոչ պարզաբար և ոչ նոյնպէս, այլ 'ի միմեանց ընկալեալ, և շարամանեալ ընդ միմեանս: Քանզի որ ասի մահն, նոյն և քուն ասի. և որ կենացն է վախճան, սկիզբն է կենաց: Իւ ծայրիցն՝ մարդն եղև գտօղ, և բանսարկուն. ոմն զմեղսն, և ոմն զապականութիւն բնութեանս առթելով: Իւ յաղագս այսորիկ եղեալն վասն մեր մարդ՝ և անուանեալն երկրորդ Ադամ մեղս ոչ արար. «Վասն զի ոչ գտաւ նենգութիւն 'ի բերան նորա. և ոչ մարմին նորա ետես զապականութի», զի զոր ոչ իւր ինքեան եղեալ

'ի բնութեն, և ոչ հպեալ 'ի նոսա: Քանզի աւելորդ և վայրապար վարկանէր՝ յորոց ազատեն զմեզ խորհեցեալ՝ զնոյնս ինքեան մատուցանել. իսկ 'ի պատուհասէ անտի ոչ հրաժարէր: Ո՛ր օրինակ բժիշկն արբուցանել զդեղն հիւանդին հանդերձեալ՝ արասցէ իւրով ճաշակմամբն հաւատալի. զի ոչ էր մեղք և ոչ ապականութի պատուհասն, այլ որ զնոսա 'ի բնութէս հալէր և 'ի բաց ջնջէր՝ որպէս յոսկւոյ անտի հուր զժանգն: Եւ զայս կամաւորապէս կրել կարողութիւն է[1] միայն Քնի, և որք 'ի նմանէ զօրացեալք՝ զորդեգրութեն արժանաւորեցան ընդունել փառս. «Կցորդ լինելով չարչարանացն՝ եղեն և փառացն նորա հաղորդք». ո՛պ ասէ Առաքեալ: «Քանզի զոր սիրէ Տէր՝ խրատէ, տանջէ զամենայն որդի՝ զոր ընդունի»: Եւ սոյն սա՝ Թէպէտ «Առ ժամանակն ոչ ուրախութե թուի, այլ յետոյ պտուղ խաղաղութե նովաւ կրթելոցն հատուցանէ յարդարութե»:

Իսկ խաղաղութե պտուղ զնոյն ինքն ասեմ, «Որ արարն զերկոսին մի, և զմիջնորմն ցանկոյն քակեաց զթշնամութին 'ի մարմնի իւրում»: Եւ զի՞նչ քան զայս վեհագոյն և գերաշխարհիկ խաղաղութի, ընդ Ածայնոյն միանալ մարդկային բնութես, և լինել մի գերագունին յաղթելով: Եւ այս է՝ որպէս ինձ թուի ասելն Որդւոյ առ Հայր: «Փառաւորեա՛ զՈրդի քո առ 'ի քէն փառօքն, զոր ունէի յառաջ քան զլինել աշխարհի առ 'ի քէն»: Եւ զայսց բանից զարմատս ինքն իսկ եկեալ ուսուցէ մեզ Տր, հարցեալ 'ի նմանէ: Ասես, ո՛վ Տր, Հայր քեզ զԱծ. ապա ուրեմն էութեան նորա ես Որդի. յայտ է՝ թէ և փառակից նորուն. իսկ զի՞նչ այդ՝ զոր ասեսդ, «Փառաւորեա՛ զՈրդի քո առ 'ի քէն փառօքդ». և զայդ ճշմարտես՝ թէ ունէի զփառսն, և առ 'ի քէն ունէի, և յառաջ քան զլինելն աշխարհի ունէի: Իսկ մինչ զառ 'ի նմանէ փառսն ունէիր 'ի սկզբանէ աշխարհի, այժմ ո՞ր է՝ զոր խնդրեսդ. ունէիր յայնժամ, և այժմ ո՞չ ունիս: Այլ անհնար է մշտնջենաւորի էութենդոլ առանց փառաց. զի թէ փառքն ոչ են առ քեզ,

1 'Ի լուսանցսն էր:

ոչ է ապա և էութիւն. և եթէ առ քեզ ոչ են, ապա և յորմէ ունէիր 'ի Հօրէ բարձեալ եղեն : Զի՞նչ ես խնդրես 'ի Նմանէ, յայտնեա՛ մեզ աղաչեմք զքեզ, տէր. զի 'ի քեզ են ծածկեալ ամ՟ գանձք իմաստութեան և գիտութեան : —

Անարգանս ինձ կրել առաջի կայր, զթուք և զապատակ ընդունել. քացախ և ղեղի ճաշակել. զմահ խաչի յանձն առնուլ. աղաչէի զՀայր՝ որպէս անարգեալ զոք, զի վերստին առ իս դարձուսցէ զփառսն.—

Այս զիա՞րդ. մերկացա՞ր արդեօք յանարգանացն զփառսն. եթէ այդ է, ապա և 'ի մահուանէ անտի զանմահութիւն կորուսեր, և միանգամայն ասել՝ թէ. և ա՟ծութիւն մարմնոյդ աղագաւ հեռացաւ 'ի քէն : —

Ո՛չ այդպէս. ոչ եթէ ես յիմոց անտի փոփոխեցայ, այլ կարծիք մարդկան՝ զոր ունէին վասն իմ, փոփոխեցան : Յորժամ 'ի բժշկութեանցն սքանչելիս վայելէին՝ զարմանային հաւատային բարեբանէին ըստ արժանի իմոց փառացն. իսկ յորժամ անարգեալ զիս տեսին, գայթագղեցան վասն իմ. թողլով զպատշաճն ըստ իս՝ յանպատշաճագոյնն իմ ընկղմեցան խորհուրդս. որպէս և Եսայիաս զսոյն յառաջաձայնեալ վասն իմ ասէր զսոցանէ : Արդ խնդրեմ 'ի Հօրէ, զի մերկացուսցէ 'ի կարծեաց մարդկան զանհաւատութեանն անարգանս, և զհաւատոցն զգեցուսցէ խորհրդոց նոցա զփառս : Մի՛ հայեսցեն առ այս՝ զոր տեսանեն այժմ, այլ զոր ինչ ընդ ձեռն այսորիկ լինելոց է մշտնջենականի փառացն իմոց մեծութիւն : Գիտասցեն այնոքիկ՝ որոց իմաստութիւնն իւրեանց առաջնորդեաց նոցա առ մոլորութիւն, թէ պարտ է « Յիմարութեամբ քարոզութեան ապրիլ հաւատացելոց ». յանարգանաց անտի իմոց վերստին գտանել զոր կորուսին մարդիկ զփառս. 'ի մահուանէս զոր ճաշակեմ, ստանալ զանմահութիւն. և միանգամայն ասել, թէ լինելովս 'իմ որդի մարդոյ՝ արժանաւորեսցին լինել որդիք մարդկան որդիք ա՟յ : Զսոյն և Հայր ինձ պատասխանեաց յերկնից. « Փառաւորեցի, և դարձեալ փառաւորեցից » : —

Որպէս նախքան զմեռանելդ քո՝ զօրութ՟ք սքանչելեաց քոց ոմանք ապրեցան մարդիկ, առաւել ևս զկնի

կամաւոր մահուն քո բազմացին հաւատացեալք 'ի քեզ, այլ և հանդերձ գերազանցութ̃. զի սակաւք են յանձահրաշիցդ քոց նշանաց ընտրեալք, և անթիւք 'ի մարդկանէ՝ զորս ծառ խաչին քո ժողովեսցէ՝ լինել ժառանգորդ արքայութեան քում[1] : —

[1] Գաղափարօղ այսր գրչագրիս մերոյ 'ի հին օրինակին իւրում գըտեալ զՅիշատակարան Գրիգորի Վկայասէր Հայրապետին, հաւատարմութ̃ փոխադրէ որպէս և էրն, և ապա ինքն եւս յաւելու այլ յիշատակարան : Զերկաքանչիւր զսոսա առ յիշատակէ իրացն կամեցաք և մեք պահել 'ի կատարած ճառիս, որ ունին օրինակ զայս :

« Այս է գիրք կոչակի ուղղափառութեան հօր մերոյ սրբոյն Յովհաննու կաթողիկոսի Հայոց և Իմաստասիրի Օձնեցւոյ : Եւ ես Գրիգորիս նուաստ՝ նորին հաւատոյ որդի և աշակերտ՝ ձայնակից եմ այսմ խոստովանութեան և աւանդման. և որք այլապէս դաւանեն քան զայսոսիկ, և նորաձևս առնեն »*. . . . . . . . . .

. . . . . . . . . . . . .

« Եւ տրուպս Գորգ, որ 'ի Թիկունս լերինս Արմենի նստեալ յանապատս Յովաննիսի, պատահեցայ օրինակի գրոցս Յովհաննու Օձնեցւոյն, յարկերս մեծ վանացն Սկեւռայի, և խոշոր գրով փոխեցի զսա. և 'ի վերջս օրինակին կայր գրեալ՝ թէ « Տեառն Գրիգորիսի է գիրքս Հայոց քահանայապետի » և այլ 'ի խոնարհ իւրովք ձեռօքն գրեալ փոքր Յիշատակարանդ՝ զոր տեսանես. և առ ու կէս քերած էր. և յայտ է թէ բԱՆԱդրանքն է ՔԵՐԱԾՆ, թէ որ այլապէս դաւանէ՝ նզովեալ է : Արդ փոխեցի զսա 'ի յօգտուն պիտանացուաց իրաց պէսպէս աւանդից 'ի զգուշութիւն ինձ, և համաշունչ յարակցի եղբօր Խաչատրոյ վարդապետի և Աստուածատրոյ, և զինի մեր որոց տէր յաջողեսցէ. գրեցաւ ՉԽԷ Թուիս 'ի փառս Այ̃. ամէն »:

* 'Ի լուսանցսն « Այլն առ ու կէս քերածէր »: Որպէս և 'ի յիշատակարանէ նորին գրչին քերեալ են գիրս քանի մի զորս պատշաճ թուեցաւ մեզ երկաթագիր կոչեցեալ տառովքն 'ի կարգի յիշատակարանին իմանալի առնել խնդրողաց :

# ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆԻՍԻ

## ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

### ՑԱՂԱԳՍ ԿԱՐԳԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

### ՔՐԻՍՏՈՍԻ

ՕԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ *և զկենդանարար Հոգւոյն Սրբոյ զօրութիւն յայտնելով երբեմն, որ խնկակից էր Հոգւոյն, "Հողմ ուր կամի, աւէ, շնչէ." այս ինքն է՝ որ յամ մարդիկ մատակարարէ զիւրոյ զխորհրդոյն զզօրութիւնս. ոչ միայն յարժանաւորսն, այլ և յանարժանսն ցուցանէ զիւր զբարերարութիւնս վասն բազմաց օգտի: Նշանաւոր Բաղաամայ, որ զյայտնեալ Բանին ա̃յ բարբառեցաւ, որ՝ ի վախճան ժամանակաց և ՝ի կատարման ժամանակին՝ մարդ եղեալ յերկրի երևեցաւ, ընդ մարդկան շրջեցաւ: Նամ խոնարհագոյն քան զինքն զէշ նորուն մարդկեղէն բարբառովն բարբառեալ, արգելելով զմարգարէին զանօրէնութիւն: Նամ զանշունչ գաւազանն Ահարոնի պտղաբերեալ ՝ի խորհուրդ եկեղեցւոյ:*

*Ապա չէն ինչ զարմանք եթէ մեղաւորաց և անարժանից թողացուցանէ ա̃ծ փոքր ինչ մասն խորհրդոյ քննել յեկեղեցւոջ, ՝ի հնգից անտի քանիցն Պաւղոսի, առ ՝ի յօգուտ ուսմնասիրաց եկեղեցւոյ մանկանց: Յաղագս այսպիսի մարդասիրութեան՝ թերևս և զիմն ոչ յիշեաց Քրիստոս ա̃ծ զբազմութիւն յանցանացս, և ոչ ընդդէմ եբեր զանախորժելի զյանդի-*

մանութեան, եթէ «Դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւնս իմ, կամ առնուս զուխտ իմ ՚ի բերան քո»: և զպատճառն յայտնէ յասելն. «Վասն զի դու ատեցեր զխրատ իմ, մերժեցեր և յետս ընկեցեր զամենայն զբանս բերանոյ իմոյ»: և որ ՚ի կարգին է:

Զի թէ արտաքնոցն ասացեալն ՚ի խորհուրդ եկեղեցւոյ վերաբերին, ՚ի Պաւղոսի յասելն, եթէ «Արի որ ննջես դու և կանգնեաց ՚ի մեռելոց, և լուսատու լիցի քեզ Քրիստոս»: և կրետացւոց սուտ մարգարէին վկայութեան առ Տիտոս զարմանալի. որչափ ևս առաւել որ ուղղափառ հաւատով խորհրդաբերին, ներէ նոցա և առաջնորդէ առ բարեացն գիւտն. ըստ այնմ եթէ «Զ կամն երկիւղածաց իւրոց առնէ տէր, և խնդրուածոց նոցա լսէ», տալով նոցա լեզուգիտութեան խօսել ՚ի ժամու զբանն: Որպէս և աստ նոր և հին շնորհօքն այ պարգևեցաւ համարձակութեանս:

Եթէ ընդէ՞ր ՚ի մէջ գիշերին հինգ սաղմոսիւքն նախ երգեն. եթէ զի՞նչ խորհուրդ բերէ քարոզն, և քահանայական աղօթքն:

ՎԱՍՆԶԻ յաստուածային խաղաղուն ժամանեալ մարդկային բնութեան, խորհիւր ազատել ՚ի չարէն վըրդովմանց սուրբ եկեղեցի. և որպէս յանդիման կալով առաջի մեծի թագաւորի, նախկին համարձակուն հայցէ ՚ի բանալ բերանոյ իւրոյ, յասելն, «Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւն քո»: Իսկ յետ այնորիկ համարձակեալ պատմեաց զնեղչացն դառաճանութիւն, և զազգի ազգի ալէկոծութեան. յասելն՝ «Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ, և բազումք յարեան ՚ի վերայ իմ»: Ի սկըզբանէ կենաց իմոց թշնամիք ՚ի դըրախտին հակառակամարտ զօրութիւքն. և «Բազումք ասէին զանձնէ իմմէ թէ չիք փրկութեան սորա առ այ իւր»: Վասն որոյ աղաչէ՝ օգնական լինել տկարութեան բնութեանս՝ առ ՚ի խորտակել զյարձակումն լլկողացն, և ոչ անտես լինել մարդկային բնութեանս ՚ի բարեգթութենէն

մն. զի լցոյց չարչարանօք մեղաց զոգի իմ, և ըղկեանս իմ՚ի փառաց դրախտէն ՚ի դժոխս մերձեցոյց. « Եւ համարեցայ ես ընդ այնոսիկ՝ որք իջանեն ՚ի գուբ ». և որ զկնի սաղմոսն պատմէ զանազան փորձութիւնս վարարկեալ որպէս վարմի :

Արդ ընդ այս ամենայն կիրս փորձութեանց անցեալ եկեղեցւոյ, սակայն ոչ լքանի յարարչական խնամոցն որ՚ի դրախտին. ամենևին արտաքս սահմանեալ զինքն ՚ի բարձրութենէ խոնարհեցուցանողին, գոչէ քաջալերաբար և ասէ, « Օրհնեա՛ անձն իմ զտէր, և ամենայն ոսկերք իմ զանուն սուրբ նորա ». և եթէ « Օրհնեա՛ անձն իմ զտէր, և մի՛ մոռանար զամենայն սքանչելիս նորա », զառաջինսն և առ յապայսն. որ պսակելոցն է զկամար արմն իւրով ողորմութեամբ : Եւ այսպիսի աստուածաշնորհ յուսով զօրացեալ՝ հրամայէ երկնայինն զօրացն, առ ՚ի յօգնականութիւն փառաբանութեան իւրեանց տեառնն [1] օրհնել զտէր:

Եւ այսպէս սրբեալ և ամրացեալ և զգաստացեալ հինգ սաղմոսիւք, յաղագս հինգ զգայութեանցն մաքրութեանն, խնդրեաց յԱստուծոյ զսուրբ Հոգւոյն զշնորհսն յօգնականութիւն, առաջնորդ լինել յերկիր բարութեանցն, ուստի ելաքն մախանօք չարին. յասելն, եթէ « Հոգի քո բարի առաջնորդեսցէ մեզ յերկիր ուղիղ »: զոր և քարոզն պատուիրէ պահել զպատուիրանն, զի երկայնօրեայք լինիցին յերկրին բարութեանց, որպէս ՚ի դրախտին սակաւօրեայք: Եւ ապա քահանայական աղօթքն հայրաբար զփրկեալսն իբրև զորդիս լուսոյ կենաց մատուցանէ առաջի Հօրն երկնաւորի, և երկրպագուս և փառաբանիչս ամենասուրբ Երրորդութեան. Նմա փառք յաւիտեանս. ամէն:

Եւ եթէ ընդէ՞ր եօթն գոբաղայիւք կանոնեալ է սաղմոսն Դաւթի. և եթէ վասն ի՞նչ պատճառի իբրև զթերի իմն խորհրդով զայլոց մարգարէիցն ՚ի վերայ բերելով օրհնութիւն ձայնեն. և ապա յետոյ քարոզ և քահանայական աղօթքն:

՚Ի ՀՐԱՇԱԿԵՐՏ փառազարդութեանցն Աստուծոյ զամենայն գոլ բարեօք տեսանեմք. Եւ առաւել զգերազանց զպայծառ և զանեղ լոյսն զսահմանօղ տուընջեան և գիշերի, որով

1 Յօրհնակին փեսանին :

վարէն ժամանակաց շրջմունք եւթնօրեայք շաբաթացեալք ։ Արդ թէպէտ յոլովք կամ եօթներեակք ’ի վ̃ր այլոց աւուրց շրջագայից , այլ ինձ մերձ թուի գոլ սաղմոսիս մտօք եօթն գոբաղայիւքն կանոնեալ ․ զոր ոչ օտար քան թէ Հոգւոյն Սրբոյ իմաստիւքն վարկանիմ երանելի հարցն մերոց զեօթն գոբաղայսն կանոն անուանեալ, այս ինքն է անշարժունի ․ որ ըստ համեմատութեան ընդ եօթն աւուրս շաբաթուն՝ գաղափարէն մի մի գոբաղայ առ օր մի , գոլով վեցն ըստ վեց աւուրցս տարժամանաց ․ իսկ եօթներորդն զգլուխն և օր կատարման , յորում աւուր և սուրբքն ճգնեալք ’ի Քրիստոս պսակեն ։

Բայց չև ես կատարումն եօթներեկին․ զոր յայսմ վայրի զօրհնուն զայլոց մարգարէիցն ’ի վերայ բերելով, որ նշանակէ զութերորդ դարուն զխորհուրդն, և օրն զդարուն, որպէս օր միաշաբաթուն , և խորհուրդքն ’ի նմա ութերեակք , և ինքն սկիզբն լինելոյն աշխարհի ։ Աստանօր յանգումն բերի աղօթից մերոց և ամ̃ տնօրէնութեանցն Քրիստոսի ․ զմահն ասեմ, և զթաղումն, և զյարութիւն, որպէս յետս լքանելով զեօթնօրեայ ժամանակս, որ է ըստ մարմնոյ երկրաքարշ տարժամանացս ․ և առ ութերեակն ճախրել զխորհուրդն առ Քրիստոսի յարութեան օր ։

Մերձ յասացեալսն վարկանիմ և զղևտացւոցն օրէնսն և զքահանայիցն զկատարելութիւն ութօրեայ դեգերեալ առ դուրս խորանին վկայութեան , զոնեա տիպք օրինակի եօթներորդացն , որ առ ութերեակն համեն քրիստոսեան խորհուրդն․ զոր որում իմաստունն Սողոմոն , ’ի Ժողովողն խրատուն յորդորէ՝ տալով մասունս եօթանց , այլ և ութից ։ Կամ ’ի սաղմոսն Դաւթի՝ որ վասն ութերորդացն գրեալ է ․ կամ բաղարջակերաց աւուրքն ․ կամ տաղաւարահարաց տօնին գուշակումն, որ յերկնայինսն բերէր զմեզ ’ի վայրսըն ։ Քանզի ամ̃ծնորդումն հետևիմք ’ի լեառն բարձու առանձնանալ ընդ Երրորդութեան փառաց ․ յորմէ զրկեալ ’ի սկզբանն ’ի գերակայ բարեացն , մարդկային բնութիւնս՝ յերկնիր կործանեցան ։ Ըստ այսմ Գաղափարի և որդի թագաւորազնւոյն յետ եօթներորդ ժամու աւուրն ապաքինէր յախտէն , յՈրդւոյն

միածնէ բժշկութեամբ. նա և յութներեակսն լինէր նորոգումն ընդ Քրիստոսի յարուցեալք։

Այս մեծի խորհրդոյ խորհրդազգած եղեալ եկեղեցւոյ, 'ի բոլոր ժամանակաց լրմունս, բարեփառ հաւատով երջանկացեալ 'ի Քս, պատուիրէ 'ի կենցաղումն արթուն և զուարթուն լինել առաջի նորա, և մատուցանել նմա զբանաւոր զպատարագս 'ի հոտ անուշից, և արժանաւոր լինել խոստացելոց բարեացն՝ զոր պատրաստեաց հաւատացելոցն միածին Որդին այ. նմա փառք յաւիտեանս. ամէն։

Եւ եթէ վասն է՞ր պատճառի զընդ երից մանկանցն համապատ երգեն 'ի գիշերին. և ապա քարոզ և քահանայական աղօթք, և զկնի Ողորմեա սաղմոսն. և նոյնպէս քարոզն և քահանայական աղօթքն. յետոյ Տէր յերկնից, առանց միջնորդի յետոյ Փառք 'ի բարձունս յօրինեն. և եթէ զի՞նչ այսորիկ յայտնեն խորհուրդքն՝ շնորհօքն այ ակնդին արասցուք յայտնութիւն։

ՔԱՆԶԻ ածն յաւիտենական որ զամենայն արարածս բանիւ գոյացուցեալ, ուսուցին մեզ գիրք սուրբք յոչընչէ լեալ զամենայն։ Իսկ զԹագաւորական զպատկերն յետոյ 'ի պատիւ տէրութեան իւրոյ զարդարէր, ինքեան ստեղծանելով ձեռամբն՝ առաւել մեծարեալ, զանարգ նիւթն յերկինս հանելով 'ի տէրութեան փառսն, որ է ըստ պատկերի և ըստ նմանութեան, յաղագս որոյ հրամայէր արձակապէս քաղաքավարել, զի ինքնայօժար ընթացիւքն ըմբռնեսցէ զառաջադրեալ զխորհուրդսն։ Այսանօր 'ի վերայ հասեալ չարին, զանհասանելին ինքեան յափշտակելով զբարձրութիւն, որում անհանդուրժելի հասանէին աղէտքն. զի զորոյ 'ի սիրտն ընկալաւ փափաքանօք զխրատն, նովին ձեռամբ յառաջադիմանայր. ուստի կապեալ իբրև շղթայիւք 'ի խորս անգիտութեան անդանէր, ած իւր յօրինելով զկործանիչն. ընդ որոյ հովանեաւն լծեալ, զնորինն ժառանգէր զխաւարն. և ամենևինմբ ընդ մահու կորստեամբ գրաւեալ, յայ և 'ի դրախտէն արտաքս անկանէր։

Իսկ այսորիկ այսպէս եղելոց, սակայն ոչ կարաց ժուժկալել իւրում պատկերին՝ յաղթեալ 'ի մարդա-

սիրութենէն Հայրն . այլ ընդ առաջ ելանէ նմա մար-
գարէական քարոզութեամբ, գիրկս արկանէր և համ-
բուրէր զդարձեալն 'ի խողագնաց շաւղէ կռամոլու-
թենէն . պատմուճան փառաց և մատանի հրամայէ
ագուցանել նմա զառաջինն, զոր մերկացաք մախա-
նօք չարին . ապա զմեծ և զանպարագրելի զեզն, զան-
մահ իւր Որդին և զԲանն տայ 'ի զենումն և փրկու-
թիւն աշխարհի, յոր և կոչէ 'ի հարսանիս երկնաւոր
Որդւոյն իւրոյ զտիեզերս : Եւ այսպիսի փրկական
ամենօրէնութեամբք տիեզերք նորոգեալք կենդանացան ,
զորոց երկուց աւուրցն զխորհուրդս հրամայէ 'ի կիր
արկանել . զծննդեանն ասեմ և զյարութեան . ոչ մի ան-
գամ և երկից, այլ ամի ամի զնոյնն վերստին առնելով .
նա և յամենայն շաբաթու տօնէ եկեղեցի զփրկու-
թիւն նախաստեղծին զոր, արար միածին Որդին այ :
Բայց նախադասելոյ պատճառ զօրհնութիւն ե-
րից մանկանցն քան զՈղորմեա սաղմոսն այս է . վասն
զի երգք երից մանկանցն յաղագս նախահօրն փըր-
կուէ ձևանայ, որ մախանօք չարին 'ի մէջ հնոցի կեն-
ցաղիս դատապարտեալ մարմնով, ճնչով և հոգւով .
վասն այնորիկ նախ զարուին զփրկութիւն յառաջ բե-
րէ : Իսկ Ողորմեա սաղմոսն ունի զնախամօրն ապա-
տութիւն սրբոյ ածածնի ծնընդեամբն, ոչ ևս անօրէ-
նութք յղանալ և որդիս ծնանել յանէծս . վասն զի
լուծաւ դատապարտութի սուրբ և ածածնին ծնըն-
դեամբն, և բարձան ամենայն պատճառք մեղաց, որ
յանիծիցն մօրն յաշխարհս, մարմնով Որդւոյն այ և
թաղմամբն և յարութեամբն նորին : Ընդ նմին թա-
ղեալք մկրտութեամբ 'ի մահ, և ընդ նմին յարուցեալք
'ի թաղմանէ մեղացն՝ այ ազդեցութեամբ . նա և հա-
մարձակիմ իսկ ասել՝ եթէ ընդ աջմէ Հօր նստեալք :
Արդ որպէս յառաջագոյն շնորհեցաւ 'ի Հոգւոյն
սրբոյ կարգեալ խորհուրդ պաշտաման եկեղեցւոյ օր-
հնութի երից մանկանցն, մահու և յարութեամբն
Քրիստոսի յաղագս նախահօրն փրկութէ . և Ած
քաւեայն զխոնարհութէ պաղատանս՝ համապազօր
երրեակ միութեն մատուցանել արժան է ամենայն
քրիստոնէից :
Իսկ Մեծացուսցէն և Ողորմեայն սաղմոսն ունի

վնախամօրն ազատութիւն որդւոյ Աստուածածնին ծննդեամբն ։ Եւ այսպէս ազատեալք 'ի նախամօրն անիծից մանկունք եկեղեցւոյ, և յառաջին յօրհնութիւնն հաստատեալք, և ընդ անմարմնոց բնութեցն պար առեալ, զերգս օրհնութեանն, յասելն, թէ « Օրհնեցէք զտէր յերկնից, օրհնեցէք զնա 'ի բարձանց »․ և եթէ « Օրհնեսցեն զնա ամենայն հրեշտակք նորա »․ և այլ մի ըստ միոջէ որ 'ի կարգին է ։ Եւ յետ այնորիկ 'ի ստորինս զբանն ածէ յասելն, եթէ « Օրհնեցէք զտէրն յերկրէ վիշապք և ամենայն խորք »․ և եթէ « Թագաւորք երկրի և զօրք իւր, և իշխանք, և երիտասարդք, և կուսանք »․ և որ 'ի կարգին է․ և այսպիսի մարդասիրութ̃ ազատեալք մանկունք եկեղեցւոյ 'ի մեղաց ծառայութենէ, օրհնեն զտէր յօրհնութ̃ նոր, օրհնութ̃ նմա յեկեղեցւոյ սրբոյ․ և եթէ ուրախ եղև նոր Իսրայէլ յարարիչն իւր․ որդիք Սիոնի, որ յԵւայէն, ցնծացան 'ի Թագաւորն իւրեանց, որ 'ի Մարիամայն ծագեաց փրկիչ նոցա, որ յարուցեալ 'ի մեռելոց փչեաց յԱռաքեալսն, ասելով, « Առէք զՀոգի սուրբ », զհեռացեալսն յԱդամայ՝ 'ի բնութենէս, յաղագս ոչ 'ի ճաշակմանն պտղոյն գիտութե̃ բարւոյ և չարի ։

Արդ յառաջասացեալ օրհնութիքն զներկայումս և զարդիս ունի զդիտաւորութ̃․ իսկ Փառք 'ի բարձունսն զապառնեաց և զհանդերձելոցն օրհնութե̃ցն բերէր զնմանութ̃, և զազգակցութ̃ մարդկան ընդ վերնոց բնութե̃ցն․ և միաբան փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութե̃ն․ նմա փառք յաւիտեանս, ամէն ։

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի Փառք 'ի բարձանցն աւուր աւուր այլ այլ երգք առաւօտուն ։

ՕՈՐ թուի ինձ թէ ըստ աւուր ժամուցն պաշտմանցն խորհրդեանն կարգեալ են ։ Երկշաբաթին ըստ առաւօտին պաշտմանն խորհրդեանն կարգեալ է, յորում ժամու միաբանգամ զգալուստն փրկչին պատմի․ վասն այնորիկ առաւօտին աղաղակեն ողբերգականն ձայնիւն, եթէ « Դու ես տէր, տէր, աչաց իմոց, զի մի երբէք ննջեցից 'ի մահ » ըստ յիմար հինգ կա-

տանաց ։ «Մի՛ ասասցէ թշնամին կենաց թէ յաղթե-ցի նմա, կամ նեղիչք իմ ցնծասցեն թէ ես սասանե-ցայց» 'ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալն է սա-տանայի և հրեշտակաց նորա ։

Իսկ երեքշաբաթին ըստ երրորդ ժամու խորհր-դեանն կարգեալ է, յորում ժամու գալուստ Հոգւոյն հեղաւ՝ 'ի յառաքեալսն. զորոյ զկենարար զգալստեանն զփորձ առեալ մանկունք եկեղեցւոյ, առաջի անկա-նելով աղաղակեն. եթէ «'Ի քեզն է տէր, աղբեւր կե-նաց, և լուսով քո գալստեամբդ տեսանեմք զլոյս». և եթէ, «Օրհնեալ, տէր, զողորմութիւն քո 'ի պաշտօ-նեայքս և յերկրպագուս ամենասուրբ Երրորդութեանդ» ։

Իսկ չորեքշաբաթին ըստ վեցերորդ ժամու պաշտա-մանն խորհրդեանն կարգեալ է, յորում ժամու հի-ւանդութեան նախահօրն պատմի, և 'ի նմին ժամու բժշ-կութեան վիրացն չարչարանօք խաչին տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի. ըստ պիտառութեանն Յովհաննու աւետարանագրի յասելն՝ թէ «Էր ժամ վեցերորդ և ուրբաթ զատկին, և հանին զնա 'ի խաչ». և զայս պիսի փրկական տնօրէնութեան խորհուրդ ծանուցեալ մանկանց եկեղեցւոյ, աղաղակեն գոհանալով. եթէ «Ես աղաչեմ, տէր, ողորմեա՛ ինձ, և բժշկեա զանձն իմ ես մեղայ քեզ ։

Իսկ հինգշաբաթին ը̃ իններորդ ժամու խորհր-դեանն կարգեալ է, յորում ժամու 'ի խաչին աղա-ղակէր, զելի ելին ասելով միածին Որդին ա̃ծ, և 'ի նմին ժամու ընդ երեկս աւուրն զլուսաւորսն 'ի խա-ւարէն փարատէր[1], ըստ մարգարէական ձայնին, նոր առաւօտ ծագելով նստելոցն 'ի խաւարի և յս-տուերս մահու. ուստի լուսաւորեալ մանկանց եկե-ղեցւոյ. աղաղակեն առաւօտին յասելն. եթէ «Ես առ քեզ տէր աղաղակեցի, առաւօտիս աղօթքս իմ ժամանեսցեն առ քեզ». և որ 'ի կարգին է ։

Իսկ ուրբաթին ըստ տասներորդ ժամու պաշտա-մանն կարգեալ է, ըստ որում ժամու 'ի գերեզմանն ասի իջեալ տէրն արարածոց, և իւրով անապական մահուամբն զանապականութիւն մեզ շնորհելով, աղա-

1 Յայլում օրինակի. խաւարէր ։

տեալ 'ի դժոխոց և 'ի գերութէ սատանայի. յորմէ փրկեալ մանկանց եկեղեցւոյ, աղաղակեն գոհանալով յասելն, եթէ «Տէր Ած փրկութե իմոյ, 'ի տուէ կարդացի, և գիշերիս առաջի քո»․ և եթէ «Մտցեն աղօթք իմ առաջի քո»․ և որ 'ի կարգին յարմարի պաղատանաց բանն ։

Իսկ շաբաթուն ըստ հանգստեան աղօթից խորհրդոյն կարգեալ է. վասն զի շաբաթ՝ հանգիստ ըստ եբրայեցւոց ձայնին է, և կատարումն յաւիտենից. յորում և մարտիրոսացն հանգստից յիշատակն պատուի, որք զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին կարեօք և ցանկութք հանդերձ, խաչակից լինելով առաջին վկային 'ի խաչ ելելոյն, և զնա ժողովողին. յոր ապաւինեալ մանկանց եկեղեցւոյ 'ի նոցա կարող բարեխօսութին, աղաղակեն ողբերգական ձայնիւ, եթէ «Առաքեա՛ տէր, զլոյս քո և ճշմարտութիւն քո», զի նոքա առաջնորդեսցեն ինձ մոլորելոյս 'ի գիտութի ճշմարտութե. հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո, զանապատացեալս 'ի գերակայ բնութենէն 'ի սորին նուաստութիս ։

Եւ յետ այնորիկ զգոհացողական քարոզն ծաւալեցուցանէ, յաղաչելն զամենակալն Ած՝ որ այսպիսի սքանչելեօք բարձրացոյց զազգս մարդկան, անխառն պահպանեալ 'ի ներկայումս. և աղաչէ զի յապագայն անփորձ պահեսցէ զեկեղեցի իւր մինչև 'ի գալուստ միածնի իւրոյ. զոր և առ նմին առեալ քահանայն զաղօթս ժողովրդեանն մատուցանէ առ Ած, հաստատուն կալ և մնալ 'ի կամս պատուիրանապահութե նորա. և առաքելական խաղաղական քարոզութն վարիլ 'ի կենցաղումս, առ 'ի լինել տաճար մաքրութե սրբոյ Երրորդութեն. և արժանաւոր ձայնիւ և սուրբ խորհրդով փառաւորել զմիածին Որդին Այ, սրովբէիցն երեքկին սրբասաց ձայնիւն, յասելն՝ թէ «Սուրբ Ած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա՛ մեզ»։

Այստանօր սրբաշինքն 'ի Յունաց կարգեցին. իսկ առ մեզ պայծառանայ երեքկին սրբասացութին, որ քարոզեցաւ 'ի սրովբէից ձայնէ 'ի մէջ մարդկան. զառ 'ի նոցանէ ասացեալն զաղօտաբար հնչումն առեալ

մարդկան՝ շարակապեցին ընդ այ Հզօրի և անմահի. ոմանք միանձնական զնա Երրորդութեն, և այլք 'ի վերայ Որդւոյ միայն զայն վարկանելով. և յախմմանէ ատելութեն և թշնամութեն և հակառակութեն մեծ։

Իսկ աստ ապաւեղլից 'ի բանիս մերոյ տեսութեն, և լուծումն առաջակայիս։ Արդ որպէս ինձ հաստատեղև, եթէ ամենայն տեսութիւք մարգարէիցն պատգամացն Որդւով մնօրհնեալ յօրինուն, և մի է յԵրրորդութենէն տէր մեր Յիսուս Քրիստոս, զոր Եսայեան եաես նստեալ յաթոռ փառացն, որով սրովբէքն շուրջ կալով զաղօտաբարն նուագէին զհնչումն. և ևս առաւել մեզ քան թէ յայնժամ մարգարէիցն եկեալ 'ի յերևումն. զի այն նմանութեն էր նորա համե դերձեալ մարդեղութեն։ Սրովբէքն ակնակառոյց եկեղեցւոյ մանգանց հիացեալ հնչեցուցանէին զօրհներգութեն նուագսն. ուստի համարձակահայեաց լինելով մեք 'ի նոսա, և զառ 'ի նոցանէ ասացեալսն զաղօտաբար զհնչումն առեալ ճշմարտապէս նուագեսցուք ասելով. Ո՜վ յաւիտենականդ, 'ի վախճանն ժամանակիս հաճեցար լինել 'ի նմանութեն արարածոց. հզօրդ, զտկարութիւս մեր 'ի քեզ բարձեր. անմահացու բնութիւդ, հաճեցար վասն մեր համբերել մահու խաչի. յաղագս այսպիսի բազմազութ մարդասիրութեդ ողորմեսցիս մեզ։

Նա վասն զի առ Որդի վերաբերի եկեղեցւոյ սրբաստացութիւն, և յայտնի աստուստ եղև, զի ամ երեկորին և առաւօտին պաշտմունք մեր՝ առ նա իբրև զանուշահոտ խնկոց բուրմունս յընծայանելութեն այ մատուցանեն. և յայտ յերաւի։ Վասն զի զխաչի Քնի ճառս յինքեանս բերէ, որով հաշտեցաւ իսկ արարիչն ընդ արարածոց իւրոց. զոր և անմարմին զուարթունն 'ի գերեզմանին 'ի սփոփանս մխիթարութեան տրտմեցելոց կանանցն աւետաւորէ, ասելովն, եթէ "զՅս խնդրէք զնազովրացին զխաչելեալն, յարեաւ,,։ Ուստի և Պաւղոս խրատեցաւ ասել, թէ "Ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն 'ի խաչն տեառն մերոյ Յսի Քսի,,. և առ Տիմոթէոս գրեալ, եթէ "Մի ամօթ համարիր ըզվկայութեն տեառն մերոյ Յսի Քսի, որ վկայեացն առաջի Պիղատոսի պոնտացւոյ զբարւոք վկայութիւն,,։

Զայս և յառաջագոյն 'ի Հնումն գուշակեալ Մովսէսի՝ որ 'ի Քրիստոս լինելոց էր Ճշմարտութիւն, գառն մի երեկորին, և գառն մի առաւօտին հանապազորդ առաջի Ա՟յ ողջակիզեալ մշտնջենաւորապէս։ Իսկ զառն անմեղ վարեալ 'ի սպանդ, ծանեաք զնոյն ինքն զտէր մեր Յիսուս բարձօղ մեղաց ամ՟ աշխարհի. զոր տեսեալ Յովհաննու որդւոյ Զաքարիայ, և զաղաղակ բարձեալ ասէր, եթէ “Ահա գառն Ա՟յ, որ բառնայ զմեղս աշխարհի”. ըստ որում և մեծ մարգարէն յառաջագոյն տպաւորեաց յասելն, եթէ “Նա զմեղս մեր բառնայ, և վասն մեր չարչարի”. ըստ աւետեացն Գաբրիէլի, թէ “Նա փրկեսցէ զժողովուրդ իւր 'ի մեղաց իւրեանց”։

Եւ եթէ ընդէ՞ր յարձակ աւուրսն յիշատակի բարեխօսութե՟ն Մարիամայ Աստուածածնին, և 'ի խորհրդականս ոչ։

ՎԱՍՆ զի 'ի խորհրդականս աւուրսն հրաւիրեն զմեզ առ հոգեւոր սեղանն, յանդիմանս լինել Ճշմարիտ պատարագին մարմնոյ և արեան միածնին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, չլինի պէտք բարեխօսութեան Մարիամու։ Իսկ յարձակ աւուրսն քրիստոնեանն ոչ մատչի պատարագն, փոխանակ սուրբ և տօնականի պատարագին՝ զկարող բարեխօսութիւնն Մարիամայ ա-ժընդակ և Ջատագով առնումք սրբասացութեանն. զի աղօթք մեր ժամանեսցեն 'ի յականջս տեառն զօրու՟ց՝ որ նստի 'ի քրովբէս, և փառաբանի երեքսրբեան ձայնիւ. որ գթացաւ առ հողանիւթեայ և անարգ բնութիս. և ընդ վերին զօրացն դասակցեաց 'ի փառաբանութի՟ զուարթնոցն, յասելն՝ եթէ “Յարուցանէ զաղքատն յերկրէ, և բարձր առնէ զտառապեալն յաղբեւաց”. և “Նստուցանէ ընդ իշխանութիս վերինս”. և եթէ “Բնակեցուցանէ զամուլն 'ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ. պատմել զօրհնութիւնս տեառն 'ի դրունս դստեր Սիովնի և 'ի նոր Երուսաղէմի”։

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի առաւօտին աղօթքն, որ ընդ արեւագալն կատարին։

Ա՛ՅՍ աղօթքս զմիւսանգամ զգալուստն Քրիստոսի նշանակէ, և յարութիւն մարդկան 'ի գերեզմանացն, յաւուր միաշաբաթու յառաջին ժամուն. վասն զի յայնմ ժամու լինելոց է յարութիւն ամենայն մարդկային բնութեանց, թէպէտ և գիշերի ասի՝ ըստ տէրունական առակի։ Այլ նա է առաւօտ և սկիզբն ծագման արեգականն արդարութեան. և լինելոց է այն յառաջին ժամուն մեծի աւուրն. վասն զի յայնմ ժամու վարկանիմ ստեղծեալ զմարդն առաջին, յորում ժամու միւսանգամ կենդանանայ 'ի գերեզմանէն. այսմ խորհրդով բազումք վարեն 'ի ներկայումս, ունելով առաքելական խոստմանցն, եթէ « Փող հարկանի և մեռեալքն 'ի Քրիստոս յարիցեն յառաջագոյն, և մեք նորոգեսցուք »։ այլոցն հանդերձ։ Ըստ նմին օրինակի և իմ պատկառելին և հայրապետն սուրբն Գրիգոր, ըստ տէրունական առակին զյարութիւն մեռելոց բուսոց և տնկոց օրինակէր 'ի գարնան բուսաբեր, և 'ի դալարանալ մարդկան 'ի գերեզմանէն. քանզի յետ անցանելոյ ձմերանւոյն և լինելոյ գարնանւոյն, և հաւուցն լինելոյ մերձ յառաւօտն լինել ձայնք, զյարութիւն մարդկան 'ի գերեզմանացն նշանակեն։

Վասն այնորիկ սթափեալ 'ի ժամուն յայնմիկ աղօթեմք, ունելով միւսանգամ նորոգմանն՝ յարութեանն մեռելոց. և զուարթաթուիչ լուսով ձեպեալք 'ի հանդիպումն ամպովք երևեսցելոյն, և հատուցանողին իւրաքանչիւր ումեք զարժանն։ Վասն այնորիկ կարգեցան 'ի ժամուն յայնմիկ աղօթք իբրև արժանի լինել մեծի առաւօտի լուսոյ ծագմանն, և զմեր փառաց առանց անձթոյ տեսանել 'ի նոր յաւիտենին, 'ի կատարումն եւթներեկին 'ի նախկին ութերորդ դարուն մտելոյ՝ յամեցելոյ փեսային 'ի վերջ նուամ գիշերին, 'ի տրոհել օդեացն և այծեացն՝ յընդդրմանն որոմանն և ցորենոյն. որ օրն մեծ և երևելի 'ի մարգարէիցն դաւանեալ. յորում աւուր յանդիմանս

լինել մեզ կայ առաջի բեմին Քրիստոսի, զի ընկալցի իւրաքանչիւր ոք իւրով մարմնովն զոր յառաջ գործեացն՝ եթէ բարի և եթէ չար. յորում աւուր փայլեն արդարքն որպէս զարեգակն 'ի յարքայութեան երկնից, յորոց կայ ա̃ծ 'ի մէջ աստուածոցն և թագաւորեցելոցն, որոշելով և բաժանելով զարժանաւորութ̃ անդր երանութեանցն. որոց և մեք արժանի եղիցուք հասանել խոստացելոց բարեացն, շնորհօք և մարդասիրութ̃ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Նմա փառք յաւիտեանս. ամէն:

# ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ

# ՅՈՎԱՆՆԻՍԻ

## ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### ՅԱՂԱԳՍ ԿԱՐԳԱՑ

### ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԻՍԿ 'ի տուընջեանն որոշեալ սահմանք աղօթիցն այս ըստ յանցմանն ժամուն նախահօրն հեշտասիրութեանն և մեղանացն, և 'ի նմին ժամու բժշկել զյանցանսն չարչարանօք խաչին տէրն մեր Յ՟ս Ք՟ս. զի որպէս Ադամաւ ամենեքին մեռան, նոյնպէս և Քրիստոսիւ ամենեքեան կենդանանասցին յիւրաքանչիւր յիւրում կարգի ։ Զի յորում ժամու յանցեաւ Ադամն առաջին, և յետ յանցանացն յամեաց 'ի դրախտին, նոյնչափ և Քրիստոս եկաց 'ի վերայ խաչին 'ի բժշկութիւն վիրաց նորա ։

Իսկ յերրորդ ժամու աւուրն կարգել զժամս աղօթիցն, քանզի յերրորդ ժամու ասաց Մարկոս 'ի խաչ ելանել միածնին Որդւոյն Ա՟յ. որով յայտնի է՝ թէ և 'ի նմին ժամու եղև ընդունել Եւայի զհրապուրանս բանսարկուին, և ցանկանալ պտղոյն ճաշակմանն ։

Իսկ վեցերորդ ժամուն կարգեալ աղօթքն, որով յայտնի է 'ի նմին ժամու անցանել ընդ սահմանս պատուիրանացն, և ճաշակել 'ի պատրանաց պտղոյն, և 'ի նմին ժամու փոխանակ նորա քաղցր ճաշակմանն

մեղացն , Ճաշակեաց Քրիստոս զքացախն ընդ լեղի խառնեալ , 'ի բժշկութիւն պտղոյն դառնութեան ։

Իսկ յիններորդ ժամուն կարգեալ զաղօթսն , այս վասն անդարձ խոստովանութեան մեղանացն Ադամայ . յորում ժամու դատապարտեալ ելաւ 'ի դրախտէն , և'ի նմին ժամու աղաղակաւ աւանդեաց զոգին փըրկիչն աշխարհաց , և զԱդամ եհան 'ի դժոխոց ։

Իսկ 'ի տասներորդ ժամուն , յորում ժամու տէրն արարածոց 'ի գերեզմանս իջեալ ասի , և իւրով անսապական մահուամբն զանապականութիւն մեզ շնորհելով . և ըստ այսմ խորհրդոյ կարգեալ են զերեկորին պաշտօնն . զոր հարիւր երեսուն և իններորդ սաղմոսն ուսուցանէ զչարչարանս փրկչին լինել , և յօձնման չարուն կատաղեալ ժողովրդեանն . և որ զկնի սաղմոսն , զանօրինաբար աղօթել փրկչին , վասն յանդըգնութեան ժողովրդեանն . եթէ “Հայր , թող սոցա , զի ոչ գիտեն զինչ գործեն ,, ։ Նա և ապա յաղքատուն բնութեանս նայեցեալ , իբրև ծանրակիր բեռամբ մեղացն ըմբռնեալք , նախկին մատուցեալ խնդրեաց յայ , եթէ “Խոնարհեցո՛ , տէր , զունկն քո և լո՛ւր ինձ , զի աղքատ և տնանկ եմ ես ,, ։ Հայեա՛ց ասէ յաղքատուն բնութեանս , և մի՛ թողուր 'ի ձեռաց , եթէ յորպիսի՛ և յո՛րքան չարութիւն ըմբռնեցայ . և պատճառ այնոցիկ զպատրանս բանսարկուին դնէ . “Ած , ասէ , անօրէնք յարեան 'ի վերայ իմ'ի դրախտին , և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ հակառակամարտ զօրութեան , և ոչ համարեցան զքեզ ած առաջի իւրեանց ,, . և եթէ “Խորհեցան խափանել զգնացս իմ 'ի պահպանութենէ պատուիրանին , և թագուցին ամբարտաւանք որոգայթս ինձ ,, . Նա և եթէ “Լար ձգեցին որոգայթ ոտից իմոց , և եդին ինձ գայթակղութիւն ,, ։ Նա և ապա զմտաւ ածեալ՝ եթէ ոչ իւրով զօրութեամբ կարէ զորոգայթն զայն մերժել յիւրմէ , եթէ ոչ երկնայնոյ Հօրն գթացեալ փրկեսցէ զմեզ պատուական մարմնով և արեամբ միածնին իւրոյ . և նոյն ժամայն յառաջ մատուցեալ յիշեցուցանէ՝ զոր 'ի վեցերորդ ժամու մեծի աւուր ուրբաթին՝ միածին Որդին այ զանարատ մարմինն 'ի հաճոյս Հօր պատարագեաց իբրև զանուշահոտ խնկոց

թուրմունս, զմարդկայինն հոգին 'ի ձեռս Հօր աւանդէր, թէ «Ուղէգ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո, և զհամբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյին». և 'ի կատարածի սաղմոսին, եթէ «Տէր, հանն 'ի բանդէ զանձն իմ»: Նանդ զկեանս աշխարհի առակեաց, հանել 'ի հանդերձեալ կեանսն աղօթէ. որոյ յուսոյ սպասեալ արդարոցն՝ անն ունելին հասանել անապառ բարութեցն:

Եւ 'ի տասներորդ ժամուն լուցմունք ճրագացն, որ նշանակէ զկնի զգալի լուսոյս անցանելոյ, իմանալի լուսոյն առաջնորդել 'ի հանդերձեալ կեանսն: Իսկ ստտամնոր մեղ վերստին դառնալի է 'ի կարգն առաջին, և շնորհօքն նոյ ըստ ժամու աղօթիցն զխորհուրդն բացայայտել:

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի երրորդ ժամու աղօթքն:

ԵՐՐՈՐԴ ժամու աղօթից խորհուրդս 'ի վեր է քան զմեր կարողութիւս, և միայն նոցա յայտնի է, որոց սուրբ Հոգւոյն շնորհքն յայտնեն զծածկեալ զխորհուրդն: Բայց ինձ այսպէս թուի, եթէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի կրիցն և 'ի ներգործութեցն կարգեալ, զոր կատարեաց յայսմ ժամու 'ի կենարար չարչարանս իւր. յասել երանելոյն Մարկոսի, եթէ «Էր ժամ երրորդ, և հանին զնա 'ի խաչ»:

Եւ եթէ վասն էր յայնր ժամու դայր 'ի խաչ ելանել. քանզի յայնմ ժամու, որպէս յառաջին ասացաք, գերեալ լինի նախաստեղծն 'ի բանսարկուէն տրփական կերակրօքն 'ի ծառոյն մահաբեր և 'ի չար խորհուրդն. իսկ յորժամ Էմմանուէլս մերով բնութե զծանրութի մեղաց մերոց բառնայր, երթեալ 'ի նոյն տեղի գագաթանն, բարձրանայր 'ի դիտին, զի զանկեալն վերացուսցէ. բևեռեալ զոտս և զձեռսն յաղագս յանդուգն գնացիցն 'ի ծառն, զի զձեռագիր յանցանացն խափանեսցէ. և զտարերց ապականութիւն, որ յայնժամ օձաջամբ պտղոյն դղրդեաց, խաղաղացուսցէ իւրով մաքրողական չարչարանօքն:

Իսկ Յովհաննէս ժամ վեցերորդ ասէ. ոչ զժամ

խաչելութեն, այլ զժամ ձաղանացն՝ որ 'ի հրէիցն. իսկ 'ի խաչն յերրորդ ժամուն բարձրացաւ: Նաղէն տարածեալ զթեւսն անշարժ դիտէր ընդ հարաւ, յափըշտակելով զմեզ 'ի մահուանէ 'ի կեանս. զոր յառաջ տեսեալ մարգարէական ակամբ երանելոյն Դանիէլի, յերրորդ ժամու աւուրն զպատուհան տանն իւրոյ բանալով, ընդ արեւելս ընդդէմ Երուսաղէմի աղօթէր վասն դարձի գերութեն, տեսանելով զմիածին Որդին նոյ բազկատարած 'ի խաչին, որ յերրորդ ժամու աւուրն ճշմարիտ աւարտումն գերելոցն արար: Նաեւ ապա յետ այսր յօրեղինի, տեսանեմք յերրորդ ժամու զշնորհս Հոգւոյն սրբոյ հեղեալ յառաքեալսն, զհեռացեալսն յԱդամայ 'ի բնութենէս՝ յաղագս ոչ 'ի դէպ ժամու ճաշակմանն: Վասն այս ամենայնի ասեմք յերրորդ ժամու գլորեալ զմարդն առաջին, յորում ժամու զբժշկութին վիրացն եւ զբարեգործութին ընդալաւ: Այս յիրաւի յայսմ ժամու աղօթից աղաչեմն զՔծ առաքել զՀոգւոյն օգնականութին, առաջնորդ լինել յերկիր բարի, ուստի զրկեցաք մախանօք չարին: Այս է պատճառ երրորդ ժամու աղօթիցն:

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի վեցերորդ ժամու աղօթիցն օրհասարակին:

Եւ արդ որովհետեւ բանս մեզ ճանապարհս գործեաց, եւ որպէս 'ի փապարաց ձորոց առաջնորդեաց աշտիճանօք 'ի վեր ելանել 'ի բարձրագոյն յիմաստն, 'ի ձիթաստանեաց յանձայնն վարդապետուն լեառն, եւ զուշ եւ զմիտս ունկնդրութե կարկառեալ 'ի տաճար սրբուն, ուր անմարմնոցն տօնքն, եւ անտրտում ուրախութիւքն եւ ճառագայթք անճառ լուսոյն, ուրանօր Ադամ բնակէր հրճուալից ուրախութբն. ուստի ապստամբութե խրատուն խոտորեցաւ 'ի ճշմարտութենէն, եւ միանգամայն 'ի կենաց փայտէն, եւ 'ի դրախտէն, եւ 'ի պատուիրանէն յօրինադրէն ունայնանայր 'ի վեցերորդ ժամուն. վասն որոյ զեօթանեանեկին եօթն ժառանգէր զտրտմութին, եւ ընդ բազում ցաւօք անկանէր տոյժս. կայր իբրեւ ջերման հի

ւանդութի̄, և քաղէին ոգիք նորա, լուծեալ յօդք ոտից և ձեռացն 'ի բարեացն շարժմանէն ։ Կայր լե-զուն անշարժ 'ի խոստովանութի̄ ապաշխարութե̄ն ։ Օ որ օրինակ մեռեալ ոք անզգայ յամենայն շարժմա-նէ, սոյն օրինակ և մարդն առաջին, պարփակեալ 'ի մէջօրէի իբրև 'ի մէջ գիշերի կայր 'ի տարակուսի, և քաղէին ոգիք նորա ։ Քանզի 'ի կարճմտութենէն ըմբռնեալ, յանյուսութե̄ 'ի խորխորատ անկանէր ․ սիրէր զմահ քան զյանդիմանութի̄ ա̄յ լինել ․ և յի-շատակ տէրունականն պատուիրանին ևս առաւել խռ-ցոտէր, և մահուն երկիւղին՝ որ սպառնացեալն էր, եթէ մեռանիս, և ոչ գիտէր թէ զինչ գործիցէ ։ Վասն որոյ փրկութեանն միածինն Հօր 'ի վեցե-րորդ ժամու 'ի վեցերորդ աւուր 'ի վեցերորդ դա-րուն կայր 'ի ջանս ցաւոցն, և տրտմութե̄ զտրտմու-թի̄ հալածէր, և ցաւովքն զցաւսն բառնայր ․ և հա-մախմբելով ընդ փայտին անշնչապէս՝ զառ 'ի փայտէն բառնայր զպատուհասն մեղացն Ադամայ ․ և միան-գամայն կարեօք և կամօք յանձն առնլովն լուծանէր զպատիժս պատուհասի նախնի մարդոյն ։ Իսկ ա̄ծա-ային խոնարհութե̄ն իւրոյ պայծառութի̄ առնէր իւ-րոց արարածոց ․ և խաւարն առնելով 'ի մէջօրէի, զոր գրեալն էր 'ի յաւետարանին, եթէ "'Ի վեցերորդ ժամէ անտի խաւար կալաւ 'ի վերայ երկրի մինչև ցինն ժամ աւուրն„ ։ Այս խաւար յանդիմանէր զկարծեալ ճաճանչ լուսաւորացն, որ 'ի պարզամիտ արարածոցն ա̄ծք յօրինէին ․ և զլոյս ա̄ծգիտութե̄ն 'ի սիրտ ամե-նայն մարդկան տնկէր՝ ճանաչել զճշմարիտն ա̄ծ և զողորմածն, որ բժշկեաց զախտս հոգւոց և մարմնոց ։ Վասն որոյ յիրաւի յայսմ ժամու աղօթիցս պա-տուիրէ արթուն լինել, և զգուշանալ 'ի ձանձրու-թեց դիւին 'ի մէջօրէի, որ դժնդակագոյն է քան զա-մենայն դևս ․ որ յոլով մեղկութե̄ 'ի վերայ հասանէ և գողանայ զմիտս մեր յիւրն միտելով կամս, և ան-գիւտ կորստեանն ուղևոր կացուցանէ ։ Վասն այսո-րիկ 'ի վեցերորդ ժամուն կարգեցան աղօթքն, իբրև օգնականութիւք մարդկային բնութե̄ս ընդդէմ հա-կառակամարտ զօրութե̄ն, և յիշատակ անօրինաբար բժշկութեանն չարչարանօք տեառն մերոյ Յիսուսի

Քրիստոսի ։ Այս է պատճառ վեցերորդ ժամու աղօթիցն ։

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի իններորդ ժամու աղօթիցն ։

ԻՆՆԵՐՈՐԴ ժամուս զխորհուրդ տեսանեմք բարձրագոյն աւանդութեամբ քան զայլսն պատուեալ յառաքելական դասուցն ։ Քանզի Պետրոս և Յովհաննէս ելանէին 'ի տաճարն յիններորդ ժամու աղօթիցն, և 'ի նմին ժամու բժշկէին զկաղն, որ նստէր առ դրան տաճարին ։ Եւ արդ քանզի մեծ է խորհուրդ ամենապաշտօնէն՝ որ 'ի Քրիստոս կարգեալ է, զի ընկալցի ճշմարտութիւն տեղի 'ի հնոցն և 'ի ստուերականացն. զքահանայութեանցն ասեմ, զպատարագացն և 'ի զանազան արեանցն կենդանեացն հեղմանցն, 'ի մտանել ամենակալանագոյն յուսոյն՝ որով մերձենամք առ Ած, որով փարատեցաւ խաւարն անգիտութեան 'ի կատարել ժամանակիս ։ Որ առաջին միջօրեայն եղև նսեմ նախնի մարդոյն յանցանօքն. իսկ երկրորդ Ադամն յերկնից գոլով, բարձր բարբառով 'ի վերայ խաչին աւանդեալ զոգին յինն ժամուն, արձակեաց զտիեզերս 'ի բանդէ, և 'ի տանէ կապանաց զազգս մարդկան, որ նստէին 'ի խաւարի և 'ի ստուերս մահու ։ Եւ 'ի նմին ժամու զլուսաւորմն 'ի խաւարէն փարատէր ըստ մարգարէական ձայնին, ընդ երեկս աւուրն լոյս առնելով աշխարհի. և ինքն Նոյն Ած մերով բնութս 'ի խաչին աղաղակէր, զեղի եղլին ասելով. այս ինքն է, « Ած իմ, նայեաց առ իս, ընդէ՞ր թողեր զիս ». և եթէ « Հեռի եղեր 'ի փրկութենէ իմմէ վասն բանից յանցանաց իմոց » ։ Այս է որ եկն 'ի խնդիր ոչխարին զկորուսելոյն 'ի հօտէն իւրմէ, թէ « Ո՞ւր ես Ադամ », և լուաւ զպատասխանին՝ զկինն բերելով պատճառք ։ Վասն որոյ բանից արտաքս ընկեցաւ 'ի կենաց տեղւոյն ինքնակամ ընտրութեամբն. ուրանօր լուաւն թէ « Հող էիր և 'ի հող դարձցիս » ։ Այնպէս և 'ի նմին տեղւոջ լուաւ 'ի ձեռն աւազակին, եթէ « Ընդ իս եղիջիր այսօր 'ի դրախտին » ։

Եւ եղև 'ի նմին ժամու իններորդի արձակումն

'ի մահուանէ 'ի կեանս, և մուտք կենաց Ճանապարհին 'ի ծառն կենաց ։ Յորում ժամու ընդ երեկս աւուրն արտաքս ընկեցաւ 'ի կենաց տեղւոյն, 'ի նմին ժամու կանգնեցաւ 'ի գլորմանէ, ըստ մարգարէական յառաջագոյն աւետաւոր գուշակութեցն, եթէ «Յաւուրն յայնմիկ ոչ եղիցի լոյս՝ այլ ցուրտ և պարզ, եղիցի օր մի, և օրն այն յայտնի տեառն՝ ոչ տիւ իցէ և ոչ գիշեր. և ընդ երեկսն եղիցի լոյս» 'ի յիններորդ ժամուն. զոր և յառաջորդն յայտ առնէ յասելն, եթէ «Յաւուր յայնմիկ բղխեսցէ ջուր կենդանի յԵրուսաղեմէ» 'ի խաչելոյ մարմնոյն արիւն և ջուր. մինն իբր և զմարդոյ, և միւսն առաւել քան զմարդոյ ։ «Ելէս նորա 'ի ծովն որ առաջին». 'ի հին ժողովուրդն, որ անուն ունէին մխիթարութեան Երուսաղեմի՝ օրինադիրք և հայրապետքն և մարգարէք ։ «Եւ կէս նորա 'ի ծովն որ յետոյ». 'ի նոր ժողովուրդս, որք առաքելական քարոզութեամբ ժողովեցան 'ի մեղացն թափառմանէն, և լուսաւորեցան ջրովն կենդանութե բղխեցելոյն յԵրուսաղեմէ, և խաղացելոյն 'ի կեանս յաւիտենից. և եղեն նոր ժողովուրդ և նոր եկեղեցի ։ Այոր խորհրդոց յիշատակք յամենայն ժամու կատարին. վասն զի սա է փրկութե մերոյ աւարտումն. և 'ի նմին ժամու կատարեցան ամենայն գրեալքն 'ի յօրէնսն և 'ի մարգարէսն ։ Այոր խորհրդով հալածեցաւ 'ի մերս տապանէ ագռաւն մահացան. և ընկալաք զդադարթն ձիթենւոյ աղաւնաքեր ընդ երեկս աւուրն Աւանիւն կենաց. որով կարասցուք յամենայն ժամ պտղաբեր մնօք կալ առաջի նորա, և համապազ յիշել զերախտիս մարդասիրութե նորա, և զկամաւոր չարչարանսն ; զոր կատարեաց յայսմ ժամու վասն մերոյ փրկութե ։ Այս է պատճառք իններորդ ժամու աղօթիցն ։

# ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆԻՍԻ

## ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

### ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### ՎԱՍՆ ՄԵԾԻ ԱՒՈՒՐ ՄԻԱՇԱԲԱԹԻՆ

Յետ այսորիկ զփառաւորագոյնս այսորիկ և զհռչակաւորս տօնացուցք զխորհրդոյն՝ զաւուր միաշաբաթուս, որ զհանդերձեալ խոստացելոյ բարութեացն յիշէ նա 'ի միջի մեռում և ծնանի զճշմարտութին ։ Վասն զի յայսմ աւուր Քրիստոս յարուցեալ 'ի մեռելոց՝ զմահ խափանեաց. և ընդ իւր յասակ յարոյց զսկզբանն զմեռեալսն՝ որ յԱդամայ մինչև 'ի գալուստն երկրորդ. Նոյնպէս և 'ի նմին աւուր խոստացաւ առնել զիւր զմիւսանգամ զգալուստն. յարում աւուր և ուժընդղի հնչեցեալ լինի հրեշտակական բարբառքն, զոր մարգարէն աւագափող անուանէ ։ Վասն զի յայսմ գիշերիս, որ հանդերձեալ է լինել միաշաբաթի, եղև Քրիստոսի[1] յարուցանողին մերոյ յարութեան ժամանակ. վասն որոյ խոստացեալ է 'ի սմին գիշերի առնել համաշխարհական յարութիւն ։

Բայց եթէ կամեսցի ոք 'ի բաղմաց գիտել, եթէ 'ի գիշերին յայնմիկ, յորո՞ւմ մասին կամ յորո՞ւմ պահու հանդերձեալ է լինել յարուն, այն ծածկեալ եղև

1 Յօրինակին. Քրիստոս.

'ի մէնջ. քանզի ըստ աւետարանչացն պատմութեանն, և ոչ Քրիստոսին եղև բացայայտեալ յարութեան ժամանակն: Արդ. պատշաճ է ամենայն քրիստոնէից յերեկորեայ շաբաթուն մինչև ցառաւօտս միաշաբաթուն՝ արթուն և զուարթուն լինել, և ակն ունել հանդերձեալ գալստեանն: Այս և տէրն յաւետարանին հրամայէ ասելովն, եթէ «Արթուն լերուք, և անդադար աղօթս արարէք, զի ոչ գիտէք, եթէ յորում ժամու տէրն ձեր գայ. յերեկորեայ՝ եթէ 'ի հասարակ գիշերի, թէ 'ի հաւախօսի, թէ յառաւօտի». և 'ի վերայ բերէ, թէ «Արթուն կացէք և անդադար աղօթս արարէք, զի մի մտանիջիք 'ի փորձութիւն». և եթէ «Արժանի լինիցիք կալ առաջի որդւոյ մարդոյ»:

Այլ որք հսկմամբ և աղօթիւք զբոլոր զգիշերս զայս բաղձան անցուցանել՝ յերեկորեայ շաբաթուն մինչև ցառաւօտ միաշաբաթին, այնպիսիքն հրեշտակք եղեալ 'ի մարմնի՝ զանմարմին զուարթնոցն բերեն զնմանութիւն: Այլ զոր օրինակ քառասնօրեայ պահօքն զտարոյ զմեղսն քաւեաց, նոյնպէս յայսմ յամենայն գիշերի զբոլոր շաբաթուն սխալանսն մաքրէ, և զմեղօք զանպատուեալ զմնութիւն հրեշտակս առնէ 'ի մարմնի, փոխադրելով յորդիս լուսոյ և յորդիս տուընջեան. Քանզի զմեզ հրեշտակաց նմանեցուցանէ տէր յաւետարանին ասելովն, եթէ «Դուք նմանողք մարդկան, որ ակն ունիցին տեառն իւրեանց, թէ երբ գայցէ 'ի հարսանեացն. զի յորժամ գայցէ և բախեսցէ՝ բացցեն նմա. և երանի է ծառայիցն այնոցիկ՝ զորս եկեալ տէրն իւրեանց գտանիցէ արթուն. ամէն ասեմ ձեզ՝ զի ածեալ բազմեցուսցէ, և գօտի ածեալ պաշտեսցէ զնոսա»:

Այլ զոր այլոցն բանիւն հրամայեաց, ինքն արդեամբք յանձին կալաւ կատարել՝ յորժամ ելեալ 'ի լեառն հանէր զգիշերն 'ի գլուխ յաղօթս այ, առ 'ի մեր վարդապետութիւն զայն առնելով: Այլ թուի ինձ 'ի սմին միաշաբաթոջ զայն կատարել. քանզի յաղօթելն ոչ ասաց թէ եդ. ծունր, կամ երկրպագութիւն, որպէս 'ի մատնութեան գիշերին գրեալ է, թէ սակաւիկ մի յառաջ մատուցեալ յաշակեր-

տացն ՚ի ձիթենեաց լերինն, եդ ծունր, կայր յաղօթս. և անդ յետ աղօթիցն, և զհանգստեան ժամանակն հրամայէ, յասելն՝ եթէ «Ննջեցէք այսուհետև և հանգերուք»: Իսկ այժմ յանձայն գիշերիս ոչ գտանեմք այսպիսի ինչ ասացեալ, այլ եթէ «Հանէր զգիշերն ՚ի գլուխ յաղօթսն այ»:

Բայց ես ոչ փոքր ինչ վարկանիմ մկայութի ստանուլ ասացելոցս ՚ի մէնջ. քանզի երուսաղեմացիքն տակաւին մինչև ցայսօր զօր միաշաբաթին պայծառացուցանեն գիշերապաշտութբ իբրև Յակովբայ հրամայելով նոցա, յառաջին իւրեանց պատրիարգէն. և ես իմոցս զնոյն հրամայեցի՝ նորին հրամանացն հետևել, և առաքելական կանոնացն հնազանդել ՚ի հաճոյութի կամացն այ:

Իսկ առաւօտին աղօթքն ոչ ըստ այլոց խորհըրդեանն կարգեալ են. քանզի զկնի Հարցինն Մեծացուցէ ասեն: Վասն զի հարկաւոր համարիմ այնմ որ զյարութին Քրի պատմէ, ընդ նմին և զծնունդն յիշել, զգերեզմանն. զի թէ չէր ծնեալ՝ և թաղէր իսկ ոչ, և եթէ ոչ էր թաղեալ՝ և յառնել անհնար էր: Նա արդ զկոյսն յիշելով զթաղումն հաստատեաց, և զգերեզմանն յիշելով զյարութին հաւատարմացուցանէ: Քանզի մինչ չև ևս զաւետարանն կարդացեալ, դեռ ևս ՚ի թաղման վարկանելով զտէրն, արտաքուստ ՚ի ներքս ՚ի գերեզմանն աղաղակելով ողբերգագին ձայնիւ, թէ «Արի տէր, օգնեա մեզ, և փրկեա զմեզ վասն անուան քո, զի խոնարհ եղեն մինչ ՚ի հող անձինք մեր, և յերկիր կցեցան մէջք մեր»: Նա լսեն աւետեաց պատասխանի ՚ի մարգարէէն, եթէ «Թագաւորեսցէ տէր յաւիտեան ած քո Սիովն, ազգէ մինչև յազգս». և եթէ «Պահէ ճշմարտութի յաւիտեան, և առնէ իրաւունս զրկելոցս. բանայ զաչս կուրաց, և կանգնէ զմեղօք գլորեալսն տէր»:

Նա յաւետարանին յարուցեալ ՚ի մեռելոց, կատարէ զխոստմունս մարգարէին. և անդէն աւետարանական բանիցն ընդդէմ բերեն, թէ «Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ՚ի սրբութի և օրհնեցէք զտէր» որ լուաւ աղօթից մերոց, և յարուցեալ ՚ի մեռելոց փրկեաց զմեզ, թագաւորելով համաշխարհական ՚ի

վերայ ամենայն տիեզերաց ։ Իսկ գիշեր ոչ եթէ զժամանակն ասէ, այլ զՀրեական անհաւատութիւն առակէ, ըստ Եսայեայ պանծալի մարգարէութեան, եթէ «՚Ի գիշերաց կանխէ հոգի իմ առաւօտ առնել առ քեզ, Ած »։ Նա ապա այլ աւուրցն ՚ի կարգն ելանեն, և զկնի Փառս ՚ի բարձանցն՝ Եղիցի ասեն, զոր կարգեալ է տեառն Եզրի Հայոց Կաթողիկոսի ։

Որ նկարագրի խորհուրդ իմաստիցն աշակերտացն տեառն, որ յետ յարութեան տեառն՝ տեսին յարուցեալ ՚ի մեռելոց, և ուրախութեամբ համբուրեցին ՚ի նաւարկութեան իւրեանց ՚ի տիբերական ծովուն. որպէս և գրեալ է ՚ի պատմութեան աւետարանին, և ՚ի պրակս Առաքելոցն. Այս է պատճառք աւուր մեծի միաշաբաթուն ։

Եւ եթէ զի՞նչ խորհուրդ ունի երրորդ ժամուն աղօթքն յաւուր միաշաբաթին ։

ԱՐԴ ա̃մ յառաջագոյն ասացեալքն յաղագս Քնի չարչարանացն և յարութեան և մերոյ փրկութեան, զոր յայլ ՚ի ժամն աղօթիցն ըստ կարի մերում ցուցաք փոքր ՚ի շատէ. իսկ առաջին բանարկեալս ՚ի վեր է քան զմեր կարողութիւս, յաղագս տգիտութեան և խոշոր բանիս, և ՚ի բաց թողուլ՝ վարկանիմ անհաւատ հեղգութիւս ։

Այսմանօր վստահանալով ՚ի շնորհս Հոգւոյն սրբոյ, աղօթիւք ձերովք բուռն հարցուք զբանիցն գիտութեան, ուր և սուրբ տեսլեամբ. և լինիցի այս որպէս, եթէ ոչ աղօթիւք ձերովք տացին բան ՚ի միտս մեր, տեղեկացեալ առաջնորդութ Հոգւոյն զաղօթից խորգիրսն ։ Արդ նախկին՝ թէ զի՞նչ խորհուրդ ունի ՚ի յերրորդ ժամուն ժողովել ՚ի գաւիթ եկեղեցւոյն. Թուի եթէ որք ցրուեալքն էաք յօտարէն, զանդրէն զդարձուածն նշանակէ ՚ի ձեռն երկնաւոր հովուապետին ։ Նա ապա սկիզբն պաշտմանն. «Տէր Թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ », միաւորեալք ընդ մերում Թագաւորին, որ ՚ի կուսէն մարմին զգեցաւ, և ՚զմեզ զարթոյց յորհնութիւս անմարմնոցն . ուստի հրեշտակագունդ խառնուածով տուն առ տուն երգառեալ ընդ վերին զօրացն միաւորին ։ Յետ որոյ երեք-

կին սրբասացութեան ընդ վերնոցն միաբանեալ որ խա-
չեցաւն վասն մեր ’ի ժամուս յայսմիկ ’ի պատարագ
Հօր ընդունելի. ընդ որում և մեք մատչիմք բանաւոր
պատարագ Հօրն երկնաւորի: Աստանօր հրաշագանս
վերաբերի խորհուրդս և աւանդութիւնս յոքունց ծած-
կեալս:

Իսկ համբարձմանն սրբոյ աւետարանին, յորոյ վերայ
զծածորդին հոգւոյ ակամբ տեսանեմք նստեալ, իբրու
’ի վերայ աթոռոյ բարձու և վերացելոյ, ըստ Եսայեայ
տեսութեան, և բարձր բարբառ արձակեալ’ ’ի վեր հայե-
լով ուղղութեամբ, որ կոչեաց երեքկին սրբասացութեամբ ’ի մի
լոյս կենդանի, ոչ և ս ’ի խոնարհ գթել ըստ որումն
անկաւն, և ընկեց զԱդամ: Աստանօր փարումն Հո-
գւոյն սրբոյ օրինակաւ խնկոցն ’ի Հօրէ բուրեալ, զա-
մենեսեան ’ի վեր առնլոյն ուստի անկանն. սակս որոյ
համարձակութիւն առեալ փարին զարքայական սեղա-
նոյն, բուրել զանուշահոտ խոստովանութիւն սրբասա-
ցութեանն ընդ սերովբէսն յաղագս մեր խաչեցե-
լոյն անմահի: Ուստի հրացեալ ծայրին կայծա-
կամբքն, կոչեցեալք յորդեգրութիւն երկնային Հօրն,
երգեն օրհնութիւն ’ի Սիոնի, և նոր աղօթս ’ի յԵ-
րուսաղէմ. ըստ որում համաձայնեալ Եսայեայ աւետ-
արարող բարբառոյն ընդ անուշահոտ գիտութեան
զտիեզերս. աւետաւորէ զյայտնութիւն Որդւոյն Աստուծոյ ’ի
կուսէն ասելոյն. «Եթէ ահա կոյս յղասցի և ծնցի
որդի, և կոչեսցի անուն նորա Էմմանուէլ». և ’ի
վերայ բերեալ, եթէ «Նա զհիւանդութիւնս մեր
բառնայ». և յայս միտս նայեցեալ եկեղեցւոյ ըն-
թեռնուն զԵսայի: Ուստի մարգարէական աւետեօքն
զօրացեալ մանկունք եկեղեցւոյ՝ երգ նոր երգեն,
միխիդի անուանելով, որ ըստ յունարէն բարբառոյն
թարգմանի, այս ինքն է՝ օրհնութիւնս երգել: Եւ
այսպէս ընդ մարգարէսն զմարգարէականն հնչել, և
ընդ առաքեալսն զառաքելականն ընթեռնլով կերպա-
կրին իբրև յերկնից իջեալ հացին: Այս երգք աս-
տիճանաց ընթերցեալ յեկեղեցւոջ՝ գրգէ զբոլոր
լսօղն ’ի զգուշութիւն ունկնադրութեան: Իսկ ալէլուն
նշանակեաց պատրաստ գտանել առ ’ի վերուստ ազ-
դեցեալն ձայնին ահարկու և հիացուցանող անշարժ

դիտել ընդ արեւելս. և լինի այս էր սակս։ Վասն զի ոչ պատգամաւոր թարգման, և ոչ հրեշտակք, այլ ինքն տէր՝ առեալ եթէ «Ելի 'ի Հօրէ և եկի յաշխարհս». վասն այնորիկ անշուշտ լուութե̃ կամ 'ի սպասու բանից տէրունականացն։

Նաև յետ կատարման սուրբ աւետարանին, բարձր ձայնիւ խոստովանին զսուրբ զհաւատն, որ յերանելի սուրբ հարցն Նիկիայ տուաւ եկեղեցւոյ, ամենևին 'ի բաց վանել զչարութի̃ բանսարկուին, և զբոլոր զտիեզերս հնազանդեցուցանել ընդ առաքելական քարոզութե̃ն՝ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէրն մեր, որում փառք յաւիտեանս. ամէն։

# ՀԱՏՈՒԱԾՔ ԲԱՆԻՑ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

# ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

Ի ՀԱՒԱՔՄԱՆՑ ՑԱՂԱԳՍ ԿԱՐԳԱՑ ԵԿԵՂԵՑՒՈՑ

ԵՒ ՑՒՇԱՏԱԿԱՐԱՆ

Ի ԳՒՐՍ ԿԱՆՈՆԱՑ

# ՅՈՀԱՆՆՈՒ

## ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

### ՍԱԿՍ ԳԻՇԵՐԱՑԻՆ ԺԱՄՈՒ

ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆ ժամահարին զզարթնելեան փողոյն ունի զօրինակ. և դիմելն 'ի տեղի աղօթիցն՝ զհաւաքումն ահեղ ատենին, զի զարթուցեալք 'ի թմրութենէ քնոյ՝ օրինակէ զարդարոցն առաջինս յանծայլին ազդմանէ 'ի միտսն զարթուցեալ 'ի մարմնականացն հեշտութենէ անկողնոց, և զհետ կամացն տ̃յ 'ի կիրս կացեալ առաքինութեանց ։ Նա և զազդումն փողոցն 'ի Սինայ, և զազդումն հոգւոյն 'ի մարգարէսն նշանակէ, ոյք որպէս բարձրաբարբառ փողով 'ի վերայ լերինն բարձու կացեալ աւետիս նօթձէին Սիոնի ։ Նշանակէ և զառաքեալսն և զաւետարանիչսն՝ որք փողք քաջահնչօղք եղեն ժամատուք տիեզերաց, և զհանդերձեալսն ևս զեկուցանէ վասն հասարակաց յարութեան յաւիտենից ննջեցելոց. և զմ̃՛ 'ի գիշերի ուսաք լինել ։ Առաջին՝ զի գիշեր էր անգիտութեան, և երկրորդն խաւար եգիպտական ախտակրութեան. իսկ երրորդս՝ որպէս 'ի գիշերի եղև տէրունական յարութիւն, սոյնպէս մինչ անզգացեալք 'ի մեղսն էաք, 'ի մէջ գիշերի կենդանացաք կենարարին մերոյ յարութեամբն ։

## ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ՕՁՆԵՑԻՈՅ

Արդ եօթն գուբղայիւք կարգեալ է կանոնս ըստ եօթն դարու կենցաղոյս, և եօթն անգամ յաւուրն օրհնի Աստուած, և եօթն անգամ շուրջ գան զԵրիքովիւ, և յետ վեցիցն կատարելոյ, յեօթներորդին հնչեաց զփողն և ուժգին աղաղակել ըստ հրամանին Յեսուայ՝ 'ի կործանումն Երիքովի . ըստ այսմ օրինակի և մեք վեցիւք գուբղայիւք շրջապատեմք զմեքենայիւքն սատանայի, ըստ հրամանի մերոյն զօրավարի Յսի, և եօթն գոչեմք գուբղայս բարձրահնչիւն բարբառով զկանոնագլուխսն 'ի քակումն զօրութե բանսարկուին : Իսկ ապա զութերորդ 'ի խորհուրդ ութերորդին՝ զոր յայլոց մարգարէիցն է կարգեալ, հանդերձ օրհնութեամբ ամենատեառն մատուցանեմք, զհանդերձելոյն բերելով զօրինակ, յորժամ ընդ հրեշտակս պարեմք անլռելի ձայնիւ : Զկնի որոյ մաղթանք առ երկնաւոր Թագաւորն՝ սրբոցն բարեխօսութ զերծանիլ յորոգայթից չարին, և յաւիտենից տանջանացն, և նոցին մասին արժանաւորիլ : Իսկ յարութէ Քնս և 'ի տօնս Տէրունիս զալէլուայն երգել՝ նշանակէ զմիայն օրհնութեն պարապելն ընդ հրեշտակս, և անկարօտ գոլ բարեխօսի :

## ՆՈՐԻՆ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՅՈՀԱՆՆՈՒ ՕՁՆԵՑԻՈՅ

Իսկ յերեկոյին միայարութեն աղօթելն գոհութե է . վասն զի տիւն կատարելով ժամօքն լցեալ ըստ ժամուց, նա և պաշտարիցն՝ հասեալ 'ի խոնարհ լուսոյն մեծի՝ աւելի փոյթ ունին 'ի լրութն յորովայնին յաղագս պակասութեն գիշերոյն . վասն զխաւարին գիշերոյն զմտաւ ածեալ՝ աղօթէ եկեղեցին ըստ մար-

զարէին ասելով. «Ես առ ած կարդացի, և լուաւ.» Ի մի ժամէ՝ ասէ, կարդացի, և յերեսին լուաւ ինձ, յերեկոյս, յայսմ աշխարհի, զի կարճեալ է օրն. 'ի վաղորդեան, 'ի յարութ. 'ի հասարակ աւուրս, յորժամ դատաստան դնի անստուեր լուսով Արդարութեան, և սաստկանայ տապն յանցաւորաց. զորոյ օրինակն աստ կարգեցին աղօթք 'ի դէպ 'ի սկիզբն աւուրն, և 'ի ճաշքն զպատարագն, և 'ի հասարակն երթայ, երբ օրինօք լինի. և 'ի կատարմանն հայցել բարիս, և ապա գոհանալ զանցելոցն: Իսկ մերոցս մտաց կերակուր լռութի է իմանալի առաքինութե, զոր կատարեմք աղօթիւք 'ի սկսման աւուրն, 'ի մէջօրէի, և ըստ երեկոյս յերիս հատածս կենաց մերոց, ըստ շրջաբերութե ժամանակաց մերոց:

Ոկնի համառօտ սկսմանս և ութսներորդ հինգերորդ սաղմոսն կանոնեալ է, Խոնարհեցո զունկն քո. և է սաղմոս այս խորհրդաւոր: Որպէս կնոջն յանցաւորի ծնունդ գոլով բնութիւնս 'ի թիւնաւոր օձէն խածմանէ, աղօթել աղաչեմք զբնութենս մեր կազմիչն: Յաւուր նեղութե կարդացի, և մեծ եղև ողորմութի քո. անօրէնք յարեան 'ի վերայ իմ՝ դևք. և կեցո զորդի աղախնոյ քո զԵւայի, և արա առ մեզ նշանս բարի, և զգրոշմն նշանի քո. զոր տեսցէ ատելին չար, և պատկառեալ 'ի զօրութէ անպարտելոյ, զամօթն յաւիտենից զգեցցի. իսկ ես օգնեալ 'ի քէն, տր, մխիթարեցայց յաւիտեան:

Իսկ հարիւր և երեսուն և ինն սաղմոսն 'ի նախահօրն 'ի դէմս աղօթէ. Ապրեցո զիս տր. և զբազում վտանգից արարեալ յիշատակ: Եւ հարիւր քառասուն սաղմոս. Տր կարդացի առ քեզ. և հայցէ պատարագ երեկոյին զհամբարձումն ձեռացն լինել, և խունկ ընդունելի զաղօթսն. յիշել զհամբառնալ ձեռացն տն՝ 'ի ՟օրէ խնդրել զթողութի խաչահանուացն, զոր պարտիմք առնել և մեք. 'ի դնել պահապան բերանոյ, և դուռն ամուր շրթանց, և ոչ խոտորել սրտիւ 'ի բանս չարս: Եւ ապա հարիւր քառասուն և մի սաղմոսն: Ձայնիւ իմով ես առ տր կարդացի. և հեղումն առաջի տն զաղօթս, 'ի նուաղել ՟ոգւոյն պարգևաց, յերևելի և յաներևոյթ թշնամեաց կեցո. հան 'ի բանտէ

զանձն իմ, զհոգիս 'ի չարեաց, և սպասել արդարոցն հատուցմանն. երիւք սաղմոսիւք հայցէ յերից միութեանն զփրկիլն :

## ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Նոյն ապա ըստ հնոյն նուիրելոյ չորք դորակից դինոյ, մեզ պատկանի վկայիցն խոստովանական համարձակութիւն, որք զարիւն անձանց նուիրեցին. որոյ հանդէտ մեսեդին կայ առաջի խաչին, և ուղղեալ աղօթք՝ խնկոցն նման, որով զուարճանայ եկեղեցի. զի թէ բանական ամ պատարագ ասի 'ի Պաւղոսէ, ապա 'ի սաղմոսաց ոմն նաշի, ոմն իւղ, ոմն գինի, ոմն խունկ գեղեցիկ, որպէս խնկարկու հաշտարարն, և սաղմոսն ցուցանէ զհամբարձումն ձեռաց պատարագ. և ժողովեալ զիրսն միտս քահանային յինքն, միջնորդ այ և մարդկան 'ի մէջ անցեալ՝ զամենեցուն աղօթ ընծայ մատուցանէ այ :

## ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ

ՈՎՀԵՑ որոյ և խորհրդաբար կարգեալ է երից սրբասացութեանցն երգ, ըստ այնմ տեսլեանն մարգարէին, և մեկնութեան աւետարանչին. զի զփառս խաչին ետես Եսայի, և խօսեցաւ վասն նորա. զնոյն և հայրականն յայտնեաց բարբառ. "Փառաւոր արարի, և դարձեալ փառաւոր արարից„. և իւր իսկ եանն յաղագս իւր վկայէ ասելն "Այժմ փառաւորեցաւ որդի մարդոյ„: Այս ոչ վայրապար մեք 'ի կիր առնումք զխաչեցարն 'ի գլուխ սրբասացութե. և քանզի նա է Որդի և հզօր և անմահ, և կամօք հօր և հաճութե հոգւոյն եկն նա 'ի չարչարանս խաչին. և նովաւ իսկ ծանեաք զհայր և զհոգին: Նա մի պախարակեսցեն այլապէս

խորհեցօղքն զերից սրբասացութե՟ երգ․ որք և ամօթ ևս վարկանելն զփրկութե՟ մերոյ անօթ․ այլ մեզ յայլ ինչ մի լիցի պարծել ըստ Առաքելոյ, բայց միայն 'ի խաչ՟ն մերոյ Յ՟սի Ք՟սի․ և մեզ առակայասցի այս, զի ոչ ժամ իսկ է․ այլ այսքան, զի ծանիցուք զսա հրեղէն պարիսպ եկեղեցւոյ, և շուրջ արկեալ է 'ի գլխաւորական աղօթս առաւօտի, և խորհրդական ժամուն երրորդի, և երեկոյի, երից անգամ յաւուրն զնոյն եռակի կրկնելով։

Նաև զի զխաչին երախտիքն ծանեաք, ընդ նմին և զմայրն լուսոյ յիշատակեմք, և աղերսեմք 'ի բարեխօսութիւն առ այն՝ որ հաճեցաւն բնակել յորովայնի նորա, և խաչիւն իւրով սրբով փրկել զմեզ։ Նաև այսպէս փոխան օրհնաւոր գառանցն առաւօտոյ և երեկոյի մատուցելոց՝ յեկեղեցւոյ աստի մատուցանի խոստովանութի՟ սրբոյ անուան նորա 'ի պտղոյ շրթանց, և անբիծ վարուց ուղղութե՟։

Համբարձի․ զի պահպանիցիմք տէրունական աջովն տ՟յ, ուստի և ակն ունիմք զօգնութե՟ ընդունել յարարողէն յերկնի և յերկրի, և զի յարևու փորձութեցն մի խորշակահար լիցիմք, այլ պահելով զմեզ՝ 'ի մեղանաց ապրիցիմք, և յամ՟ յորոգայթից հոգւով և մարմնով։ Տ՟ր պահեսցէ զմուտ քո ծննդեամբ յաշխարհ, և զելս քո մահուամբ․ յայսմ հետէ մինչև յաւիտեան, յաստեացս մինչև հանդերձեալ յաւիտեանն։

## ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ ՕՁՆԵՑՒՈՅՆ

Նա ապա սաղմոսօղքն հասարակ մաղթեն ընդ հովանեաւ բարձրելոյն լինել, և յերկինս հանգըստեան արժանաւորել, և աստէն յորսողէն փրկել յորոգայթից զինու ճշմարիտ պահպանութե՟, և զի թագնաբար ընդ խաւար շրջի որոգայթադիրն, զօրացո զընթացս ոտից մերոց կոխել զգլխաւորական չարութե՟ չարասիրին։ Ն՟յ և յայսմ գիշերի առ քեզ համբառնամք զմտաւորական աչս իբր ծառայ առ Տ՟ր, զի

'ի ծփական տառապանաց զերծուցես զմեզ, և ընդունիցիս զոգիս մեր անխարդախ կանխել առ քեզ 'ի մէջ գիշերոյ և առաւօտի զկամաւորն մատուցանել քեզ պատարագ բանաւոր։ Այլ քարոզն միաբան խնդրել զայսոսիկ յորդորէ։ Իսկ քահանայն միջնորդէ աղօթիւք առ կենացն անմահից յոյսն Ք̃ս, կատարել 'ի բարի զաղօթսն բարեխօսութ̃ սրբոյ ա̃ծածնին, և հաճոյական վկայիցն։

Այլ ժողովուրդն զքահանայն տ̃ր անուանելով աղաչէ յիշել յաղօթսն զպաշտօնեայսն ըստ հոգւոյ, և մարմնաւոր զծնօղսն, և զայլն ևս մի ըստ միոջէ։ Իսկ նա համառօտելով ասէ, Յիշեա զա̃մ հաւատացեալս 'ի քեզ, և փրկեա յիւրաքանչիւր վտանգից, և 'ի փորձութեց, զի յամենեցունց արժանաւորապէս փառաւորի ամենասուրբ Երրորդութ̃ն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

# ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ [1]

ԼՈՒՍԱՇԱՒԻՂ ճանապարհ առ մեծ հնազանդութիւն ընդհանուր հաւատացելոց Քրիստոսի կազմեցին սուրբ հարքն զկանոնական բանից դիտաւորութիւն. զի որք յերկնային հրաւիրեալ են 'ի բնակութիւն մարդկան տարակարծ խոհականութեանց՝ նովաւ ընթացեալք՝ 'ի նպատակն հասցեն բարեգործութեան, և յանդիմանեալ խոշտանկեսցեն զինքեանս կամօք գնացեալն կամեցողքն։ Նա վասն զի ոմանք առ ոմանս և ոչ ամենեքին առ ամենեսեան տուեալ սերմանեալք, կամեցայ զբովանդակ զառ 'ի նոցանէն կանոնական սահմանեալ բան 'ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ 'ի հայրապետանոցի աստ արձանացուցանել։ Աւրանօր և զիս մեծային Հոգւոյն վերակարգեալ յաթոռ սրբոյն Գրիգորի 'ի կաթուղիկոսութիւն աշխարհիս Հայոց, Յովհաննէս նուաստագոյն յիմաստասիրական խմբից, և 'ի բոլորից մեկին մնացեալ ըստ մարմնոյ յազգականաց։

Նա ընկալեալ զայս ջան՝ նախկին, վասն հոգեկա-

1 Զյիշատակարանս զայս յաւելու զհետ հին և հարազատ կանոնաց Սրբ հարցն և ժողովոց, զորս սա ինքն հայրապետս 'ի մի գիրս հաւաքեալ աւանդեաց յետնոց։

նաց իմոց զարմին, զի ըստ հրամայողական անուանն առընթեր կացցեն և հրամանացն գումարութիք. և թէ պարտ է սպասաւորաց բանին ա̃ծախօսունակ հարցն բանիւք կնքել բանիս։ Երկրորդ զի զուսումնասիրաց անձանց իմով աշխատութ̃ սիրով կամեցայ հանգուցանել զբազմախոյզ խնդիրս։ Վասնզի գրեցաք 'ի սմա ոչ միայն զկանոնական սահմանեալն նոցա շարակարգութիս, այլ և զժամանակն և զպատճառն 'ի սոյն յայս 'ի ներքս ածեալ յաւելաք, ընդ նմին և զգլուխս անգնիւրոց համառօտեալ բանիւք 'ի սկզբան անդ նախակարգեցաք, զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խնդրողն. Յաղագս որոյ անմոռացաբար հայցեմ ընդունել 'ի ձէնջ զյիշողութ̃ն փոխարէնս. քանզի է այս գանձ՝ ոչ զոր ցեց և ուտիճ ապականէ, այլ որ ընդ ինքեան յերկնայինն 'ի վեր տանի զանձ զտնանկ ստացողին զսիրտ, յորմէ ապա ոչ է պարտ թափուր թողուլ՝ որում և հաւատաց զառ զորբարանս. զի մի զրկեալք 'ի սմանէ՝ զրկեսցին յա̃յ. կամ անարգ լինել 'ի Ք̃սէ, յանարգաց ուրուք ձեռս արկանելով զսա ։

Եւ այն որ պարգևեաց ինձ 'ի վերայ երկրի տէրութ̃ ընդ ամենազօր իւրոյ տէրութ̃ն, որոյ բարեգթութ̃ և 'ի հանդերձեալսն 'ի նոյն վստահանամ վայելել 'ի փառս, նա տացէ ձեզ միշտ ծարաւաբար մերձենալով ճաշակել 'ի հոգեկանս այս աղբիւրէ, յորաբաց ունելով զբերան մտաց առ 'ի լնուլ սովաւ զորովայն ներքին մարդոյն. աճել զաճումն ա̃յ, և հաւասարել չափոյ հասակի կատարմանն Ք̃սի, որում փառք յաւիտեանս. ամէն ։

ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ԺՈՂՈՎՔ ԿՐԿԻ՛Ն ՅԵԿԵՂԵՑԻ

ԵՐԿԲԱՅԱԿԱՆՔ

## ԾԱՆՈՒՑՈՒՄՆ

Օայսօրիկ կրկին Ճառս 'ի մխումուրքս 'ի հնագիր մատենից գտաք տառանց անուան մատենագրի․ այլ ոճոյք բանիցն և դարձուածք, ոչ օտարք 'ի բանից Յովհաննու իմաստասիրիս, Նորին գոլ հաւանեցուցին մեզ․ և ահա երրորդ երկրայականս յաւելաք զկնի այլոց մատենագրութեանց Նորին հայրապետի, մինչև ժամանակն բազմիմաստ ստուգագոյնս ինչ ուսուսցէ ։

# ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

## ՀԻՄՆԱՐԿԷՔ ԵԿԵՂԵՑԻՈՅ

«ԺՈՂՈՎԷ ա̃ծային Քահանայապետն 'ի տեղին նուիրեալ զդասս կղերց և պաշտօնէից»: Ըստ որում և երկնաւորն քահանայապետ զառաջին երիցունսն 'ի գլուխ լերինն Թաբօրական, զկազմիչ վկայութեանն խորանի զմեծն Մովսէս, և զսեղանակազմն Եղիաս զնախանձայոյզ փառացն ա̃յ 'ի մարգարէից անտի. իսկ զվէմն անուանեալ հաւատոյ, և զորդիսն որոտմանն 'ի մերձաւոր աշակերտացն իւրոց: Որոց փոխանակ Ճառակեցելոյ 'ի նոցանէ տաղաւարացն՝ զամպեղէն և լուսերանգ կամարն երկնի ցուցանէր. որպէս զի յերկուց և յերից վկայից հաստատեսցի խորհուրդն եկեղեցւոյ, զոր 'ի վերայ նոցունց իսկ շինել հանդերձեալ էր զհամագումար կաթողիկէ ն̃ր, ըստ առաքելոյ՝ զի ասէ, «Շինեալք 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից»:

«Եւ առեալ քարինս երկոտասան անտաշս»: Ըստ որում և Յեսու Նաւեան 'ի մէջ Յորդանանու 'ի վկայութիւն անցից ժողովրդեանն ցամաքաւ ընդ Յորդանան: Նմանապէս և տէր մեր զերկոտասան աշակերտսն 'ի հաստատուն վայրէ կենցաղոյս առեալ 'ի վկայութիւն խորհրդական անցիցն հեթանոսաց ընդ ջուր մկրտութեան աւազանին. որոց և ասաց, «Գնացէք և մկրտեցէք յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»:

Իսկ սաղմոսեն 'ի սոյն խորհուրդ նպաստաւորի, «Մեծ է տէր և օրհնեալ է յոյժ» վասն սկսման մեծախորհրդութեան: «Քաղաք ա̃յ և լեառն սուրբ նորա». այս ինքն, հանգոյն երկնի բարձրագոյնս այս խորհուրդ. զի «Հաստատարմատ ցնծացէ ցնծութ̃բ ամենայն երկիր» ըստ երկնայնոցն խրախութեան 'ի լեռնէ Սիովնի մինչև 'ի կողմանս հիւսիսոյ քաղաք

լինել թագաւորի մեծի, և տաճար այ կենդանւոյ ։

Որ որպէս լուաք 'ի մարգարէիցն, նոյնպէս և տեսաք, զի ած խորհրդական վիմօք հիմնեցոյց զսա ։

Իսկ միւսն ևս սաղմոս՝ "Սիրելի յարկ տն զօրութեանց" անուանէ, և փափաքելի բնակութիւն՝ որոց "Սիրտ և մարմին ցնծասցեն առ ած կենդանի" ։ Մինչ զի երանելի լինել բնակելոյ արժանաւորացն. և որ 'ի նոյն իսկ յարմարի՝ "Հաճեցար տէր ընդ երկիր քո" զոր նուիրեցաք տեղի բնակութեան. յորում դարձուցեր զգերութիւն մեր՝ որ 'ի բանսարկուէն, և թողեր 'ի սմա զանօրէնութիւն ժողովրդեան քո, և ծածկեցեր մկրտութեան ջրով զմեղս սոցա ։ Իսկ դարձեալ կեցուսցես զմեզ կրկնապատիկ նորոգմամբ, զի ժողովուրդ քո լեալ՝ ուրախասցուք 'ի քեզ յաւէրժապէս ։

Նա և զհիմունս նորա բացածանուցանէ զկնի սորին սաղմոս, "Ի լերանս սբ նորա" զոր 'ի Սինա հիմնացեալ արմատացոյց 'ի միտսն Մովսեսի. բայց "Սիրեաց զդրունս Սիոնի", ուստի և ետ զփրկութիւն նորոյս Իսրայելի, "Քան զամենայն յարկսն Յակոբայ", զխորանն և զտաճարն, զորմէ և "Փառաւորեալն խօսեցաւ" վասն սորա հոգեկիր մարգարէիւքն՝ քաղաք լինել կենդանւոյն այ ։

Իսկ զկնի սաղմոսացս քարոզէ արկաւագն. Իսկ ևս խաղաղութեան, Խնդրեսցուք հաւատով, յաջողել զգործս ձեռաց մերոց 'ի հաճոյս իւրոց կամաց ։ Իսկ երիս ասել Տէր ողորմեա՛, խնդրուածք են խորհրդականք, զի սկզբամամբ և միջօցաւ և աւարտմամբ ողորմութիւն նորա մնասցէ առ մեզ ։

"Իսկ ապա հաստատեն վէմ մի 'ի մէջ բեմին", յօրինակ հոգևոր վիմին, որ հաստատու 'ի սբ լերանէ անտի, և ելից խնքեամբ զաւլորեսին ։

"Իսկ զերկոտասան քարինսն առեալ՝ նախ լուանան ջրով, և ապա գինւով" ։ Նկարագրեն սոքա զերկոտասան առաքեալսն, զորոց լուաց տէրն զոտսն 'ի վերնատանն, և ապա գինեաւ անապականաւ զմայլեցոյց, 'ի յիշատակ ջրոյն և արեանն՝ զոր բղխեաց 'ի կողից իւրոց ։ Իսկ յետ յարութեն ասաց նոցա մկրտել 'ի հայր և 'ի հոգին սբ, և մկրտել զհեթանոսս յանուն սբյ Երրորդութեն խորհրդական ջրով աւազանին ։ Իսկ զնշեն

զքարոզումն 'ի չորս անկիւնս եկեղեցւոյն՝ նշանակէ զնոցին ընթացս 'ի չորս անկիւնս աշխարհի, և պատշաճիլ հաստատութ՟ն 'ի հիմն տաճարի այ, որ եմք մեք՝ 'ի նոսա խարսխեալ, և նոքա 'ի գլուխն Ք՟ս։

Իսկ ուխտն առաջի երթայ ղապտերօք և խնկովք՝ լուսաւոր իմաստիցն խորհրդովք ; և անուշաբուրիչ վարուք և աղօթիւք։

Իսկ զկնի այսորիկ ընթեռնուլն եպիսկոպոսին զաղօթսն՝ զբոլոր ուխտին առեալ զաղօթս նուիրէ առաջի այ. և ապա հրամայէ առնուլ զգործի բրելոյն, և զչափ ոլքանուն շինուածոյն, և ծրագրէ զտեղին, ըստ տեսլեանն Եզեկիելի վասն տաճարին, և սրբոյն Գրիգորի արուեստականութեան վկայարանացն սրբոց, առ 'ի զեկուցումն՝ անչափն այ առնել իւր յարկ և սրբարան զչափաւորեալս բնութիւն՝ մշտածաւալն և անվայրափակն բնութ՟ի։

Իսկ օծանելն զքարոզումն ածայնովն մեռոնաւ՝ վերակոչմամբ խորհրդական Երրորդութ՟ն, քանզի օծան նոքա 'ի Սբովն Հոգւովն այ, ըստ տն՟՝ թէ «Դուք մկրտիցիք 'ի Հոգին սբ»։ Իսկ երիցս ածէն ասելն՝ զամենայն զմերս ամենակալին այ խոստանալն է, այսինքն որ ամենայն է յամենայնի։ Իսկ սաղմոսելն կցրդիւ՝ «Օ գործս ձեռաց մերոց ուղիղ արա», ըստ շինուածոյն գործոյ և զամենայն գործս ուղղութեան ըստ կամացն այ յաջողել աղօթէ։

Իսկ ընթերցուածքն շարամանեալ խորհրդովք համաձայնին նախակարգութ՟եցս։ Որպէս և Տէր լոյսն սաղմոս, և աւետարանն սովիմբք խորհրդածին։ Իսկ քարոզն Վասն 'ի վերուստ, և աղօթքն, զխաղաղութ՟ին այ քարոզէ, և աղօթել ուսուցանէ։ Իսկ դարձեալ քարոզէ սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով. և եպիսկոպոսն օրհնութ՟ի և փառս համառօտէ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից։ Վասն զի օժանդակութ՟ն այ և օրհներգութ՟են զգուշութ՟ք մատչելի է 'ի սկիզբն ածաւանդն գործոյ։

«Իսկ նոյն հետայն առնու զբրիչն եպիսկոպոսն, և նախ ինքն հարկանէ զնուիրեալն երկիր. և ապա տայ ցարուեստաւորսն»։ Վասն զի տէր ինքնին ձեռն 'ի

գործ արկ բրել և խլել 'ի բնութենէ աստի զփուշս խոցոտիչս, մաշեալ և կակղեալ չարչարանօք խաչին, և սերմանել 'ի մէջ զբանն հաւատոյ և նմանօրէն կրօնիցն խաչակցութե։ Իսկ երիցս հարկանելն՝ նշանակէ յերիս հատածս ժամանակաց տպաւորել զխորհուրդն եկեղեցւոյ, խորանաւն վկայութե, և տաճարաւն Սողոմոնի, և միւսանգամ նորոգմամբն Զօրաբաբեղի։ Իսկ զի չորս երիս անգամ 'ի կողմանսն չորեսին, որ յերկոտասանս բովանդակին Թիւս, ըստ քարանցն Թուոյ՝ 'ի խորհուրդ երկոտասանիցն Առաքելոց՝ և գլխաւոր անդամոց մարդոյ. և զի զերակատար արուեստիւ սա քան զայլսն ցուցանի Թիւս, կէս ունելով զվեցեակն, և չորս զերիսն, և երեք զչորսն, և մի զերկոտասանն, յորում Թուի՝ լրանայ լուսինն, և կատարին օրէնքն 'ի Նոր 'ի շինիչն եկեղեցւոյ։

"Նոյն մտանեն 'ի ժամ 'ի տեղւոջ սեղանոյն,,. վասն զի անդր աւարտի բոլորումն խորհրդոյ։ Նոյն աստէն աղեղու արուեստի՝ "Հիմունք նորա 'ի լերանց սրբ նորա,,։ Հիմունք եկեղեցւոյ են օրինակքն առաջինք, դրախտն այ և տապանն Նոյեան, խորանն Աբրահամու և զոր ետեսն Յակոբ, ցուցեալն Մովսէսի 'ի Սինա, և զոր կանգնեացն յանապատին. այսոքիկ հիմունք 'ի սուրբ լերանն Սինի, և յերկնաւորն Երուսաղէմ աւարտին. վասն որոյ և կատարումն հիմնարկուե եկեղեցւոյ աստանօր դադարէ, Սասն 'ի վերուստ քարոզաւն, ընԹերցուածովք, և աւետարանաւն, 'ի փառս Այ օրհնելոյն յաւիտեանս։

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՆՈՐԱՇԷՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ

« ՄՏԱՆԵՆ երեկոյին 'ի հսկումն յեկեղեցին,, ։ Զի արթունս և զուարթունս պարտին լինել՝ որք յարդարեն զինքեանս տաճարանալ այ̄, հսկել սաղմոսիւք, և հոգևոր երգովք 'ի համագումարմանն տեղւոյն ։

« Իսկ 'ի վաղուեանն յերրորդում ժամու՝ ժողովին դարձեալ եպիսկոպոսն և քահանայքն և սարկաւագունքն յեկեղեցին, և զսեղանն դնեն 'ի մէջ եկեղեցւոյն,, ։ Առաջին խորհուրդ սորա նկարագրի 'ի մարդն առաջին, զի ըստ պատկերի այ̄ արարաւ, և եդաւ 'ի մէջ դրախտին ։ Իսկ եպիսկոպոսն և դասք պաշտօնէիցն շուրջ զսեղանովն՝ խորհուրդ տնօրէնութեանն Քնի · զի առ նմին իսկ նկատեալ ցուցանիւր, սպասաւորեալ յերկնաւորացն էութեանց՝ որ շուրջ կան զնովաւ. այլ և բանակք հրեշտակաց տեառն շուրջ էին զառաջին ստեղծուածովն ։ Իսկ ժողովուրդն արտաքոյ կացեալ՝ զանասնոց և զգազանաց ունի նշանակ · զի էին նոքա արտաքոյ ա̄ծատունկն դրախտի ։

« Եւ սկսանիլ եպիսկոպոսին զսաղմոսն կցրդին՝ Տէր սիրեցի զվայելչութի̄ տան քոյ,, · վասն զի սիրելի էր Ադամին այ̄՝ պատկերին իւրոյ մնալ 'ի փափկութե̄ն վայրի, որպէս և այժմ սիրեաց նա տաճարացուցանել ինքեան զմերս կազմած, ըստ նախագուշակ մարգարէութե̄, երգոց, և ընթերցմանց, և հրեշտակական երգոց ալէլուին ։ Զկնի աւետարանն, քարոզն, և աղօթք քահանայական՝ զեկուցիչք են հնոյ կտակին ընդ նորոյս շարամանութեան, վասն միոյ և նորին խորհրդոյ հրեշտակական միջնորդութե̄ առաքելոց և մարգարէից, որոց առաջի կայ սեղանն հոգևոր ։

« Եւ ապա առեալ զսեղանն սպասաւորքն հանեն արտաքոյ դրանն,, ։ Ըստ նախագոյն իմացմանցն՝ մարդն է առաջին, զկնի պատուիրանազանցութե̄ն արտասահմանեալ 'ի դրախտէ անտի ա̄ծային վճռաւ · և փակել դրանն այն է՝ զի հրամայեաց ա̄ծ բոցեղէն

սերովբէիցն պահել զմուտս նորին ։ Իսկ ըստ մնօրէ-նութեան խորհրդոյ՝ այն իսկ է, զի 'ի տաճարն հայրենի նկարագրեալ էր այսր խորհրդոյ զօրութիւն. և ել Աննա բարի 'ի ծոցոյն հայրենի, և բնակեաց նա 'ի կուսին յորովայնի. և ել առ մեզ հրաշականն ծննդեամբ՝ երկրորդ եղեալ Ադամ փոխանակ առաջնոյն յանցաւորի. և արտաքոյ դրանն չարչարեցաւ անպարտականն այնոցիկ կրից և մահու, զի զդատապարտութիւն բոլորից բարձցէ յանցաւորաց ։

Այս մեք զնախատօնս նորա յանձին բարձեալ պարծանօք չարչարակցութեան շուրջ զսեղանոյն սրբով եղիցուք. յաղերս մաղթանաց սկսանիմք նուագօք մարգարէութեան, "Տուր մեզ տէր, լուր"։ և 'ի գլխոյ սաղմոսին աշտիճանաց սկսանելով տուն առ տուն զՏուր մեզ տէրն, ըստ նախկնագոյն մարգարէիցն հայցէ քահանայութիւն այ, լսել ձայնի պաղատանաց նուաղաձայն հիւանդացելոյ բնութեանս ։

Այս 'ի փառս տալն վերացուցանելն զսեղանն, և յառաջ տանելն 'ի դուռն կոյս՝ բարձրանալն է մտօք սրբոց նահապետացն յերկրայնոցս, և փափաքանօք 'ի տուն այ դառնալ ։ Այս երիցս կրկնելն զնոյն՝ զմրըտամռունչ աղօթսն նշանակէ, զոր 'ի սկզբան՝ 'ի միջոցի՝ և 'ի կատարածի կենացն նուիրեցին այ ։

Իսկ երկրորդն կցուրդ՝ "Օգնեա մեզ տէր, օգնեա"։ այս զմարգարէիցն ակնարկէ զաղաչանս վասն 'ի վայր անկելոյ բնութեանս ։ Որ ինքն իսկ՝ որ եհարն վասն յանցանաց, եկեսցէ և յարուսցէ և բժշկեսցէ զհարուածս վիրացն. որոց 'ի բարձունս համբարձեալ զտեսլարանս մտացն՝ յօգնութիւն զբարձրեալն աղերսէին ։ Այս դարձեալ վերացուցանելն զսեղանն, և զսպասս նորին, և մերձ տանել 'ի դուռն, զեւս վերամբարձ և զմերձաւոր խորհուրդն նշանակէ, որ առ դուրս եկեալ հասեալ էր մեր փրկութիւն 'ի լրումն ժամանակաց խորհրդոյն կատարման ։

Իսկ երրորդ կցուրդն աղերսիւ զսպասաւորութիւն երկնաւոր զուարթնոցն տէրունական մարդեղութեան նշանակէ. յորում և մարդիկ համալծորդ նոցունց եղեալ, և զնոյն նուագ. օրհնութեան 'ի բերան առեալ՝ միաբանաբար Փառք 'ի բարձունս վերաձայնեն արարո-

ղին զխաղաղութի տիեզերաց ։ Եւ երիցս երեք՝ որ է ինն՝ երգելն զսաղմոսն, ըստ ինն դասուց հրանիւթիցն յեկեղեցի դասակարգիլ զպաշտօնեայսն նշանակէ ։ Դարձեալ և վերացմանն սեղանոյն խորհրդյայտ նուագի զբարձրագոյն և գերահրաշ սքանչելեացն ունի տարացոյց 'ի խոնարհութեն մարմնի ։

Եւ մօտ առ դրանն եդեալ սեղանն, սկսանին 'ի թիւ զհարիւրուտասն և եօթն սաղմոսն՝ "Խոստովան եղերուք Տն, զի քաղցր է „, և դարձեալ կրկնել կցորդիւ, "Բա՛ց մեզ տէր, բաց „. մինչև ցայն վայր՝ "Բացէք ինձ զդրունս արդարութե „ ։ Եւ կցուրդն կրկնակի՝ "Բա՛ց մեզ տէր, բաց „ . հառաչանք է սրտառուչ մարգարէիցն՝ ադամածնացս քաղաքակիցս լինել երկնախումբ բանակացն՝ ողորմութե բացողին զդրունս քաւութե առաջի մեր ։ Եւ որպէս առաջին սաղմոսն պաղատանք է սրբոց նահապետացն առ Հայր, և երկրորդն առ Որդի՝ մարգարէիցն, իսկ երրորդն առ Հոգին սուրբ՝ սպասաւորաց բանին . նոյնպէս և այսր սաղմոսի երեքկնելն՝ է առաջինն մեղմ ձայնիւ սըրտիւ սրբով մաղթանք նահապետացն . և կրկնելն բարձրագոյն ձայնիւ՝ աւետաւորացն Միածնի է բարձրացուցանել զբարբառ, զի մտցուք 'ի յարկս սրբութե նորա արդարութե, և ասասցուք՝ "Այս դուռն Տն է, և արդարք մտանեն ընդ սա „ ։

Իսկ 'ի ներքս մտեալ սեղանոյն քահանայիցն և պաշտօնէից՝ նշանակէ առեցելոյն 'ի մէնջ մարդոյ՝ իւրովք սպասաւորօք յերկնայինն մտանել յառագաստ՝ փոխանակ արտասահմանութեն մերոյ 'ի դրախտէն կենաց ։ Իսկ Տնագրելն խաչիւն զդուռնն, և ապա բանալ, վասն զի խաչիւն եբաց Քս զդրախտին մուտն և զերկնայինն առագաստն ։

Եւ զի յեկեղեցին փոխեն զկարգ սաղմոսին՝ առաջին դասելով զվերջինն, "Ուրախ եղէ ես՝ ոյք ասէին „, ալելուիա կցրդիւն, քանզի յերկնաձեմ առագաստին հաւասարիմք հրեշտակական օրհնութեցն . սակայն զի եմք տակաւին 'ի վերայ երկրի՝ կարօտիմք օգնականութեան աղօթից, և սակս այնր ասեմք 'ի կցրդին միւսում, "Օգնեա՛ մեզ, տէր . և Համբարձի զաչս իմ 'ի լերինս „ 'ի տէրն հրեշտակաց,

'ի հրեշտակս և յարդարոցն առաջինս , "Ուստի եկեսցէ ինձ օգնութիւն " : Այլ զի նեղութիւնք է մնալ մեզ 'ի տան այ՟ , և լսելի առնել զձայն պաղատանաց , ժտեմք աղերսական ձայնիւ , լուր մեզ , տէր , քանզի յորժամ հրշտակաց սպասաւորութեամբ ծանօթացաք ածային խորհրդեանն , և նորին ևս ծանեան եկեղեցեաւ զբազմապատիկ իմաստութիւն այ՟ , որպէս ասէն Պ առաքեալ :

Այլ որպէս արտաքոյ դրանն ըստ փոփոխման սաղմոսացն փառս տալոյն յառաջ մատուցանեն զսեղանն ըստ խորհրդոյն վերադարձութեան , նմանապէս և 'ի ներքս ըստ փոփոխման սաղմոսացն յառաջ կոյս առբեմին տանին զսեղանն : Ըստ որում և տէրն շրջեցաւ 'ի տան բնութեանս մերոյ մարմնոյն , զոր առ 'ի մէնջ . և ապաքինեալ զմեզ 'ի վնասողացն ախտից սքանչելի զօրութեամբք և կենարար բժշկութեամբք , մերձեցաւ աշակերտօքն յԵրուսաղէմ . և հրամայէր երթալ և պատրաստել զխորհրդականն ընթրիս : Իսկ նոցա զուարթացեալ առ պատրաստութիւն հաղորդելոյ ընդ նմա 'ի տօնին՝ 'ի դէպ էր ասել "Սիրտ իմ և մարմին իմ ցնծասցեն առ ած՟ կենդանի " : Ըստ այնմ և այսմ խորհրդական սեղանոյ սպասաւորք՝ քահանայք և պաշտօնեայք նուագեն և ասեն , "Սիրտ իմ և մարմին իմ ցնծասցեն առ ած՟ կենդանի " . սիրտ զհոգին նշանակելով , քանզի առաջնապէս զգայ զուրախութիւն , և ազդէ յանդամս մարմնոյն :

Այլ նախ 'ի թիւ ասել՝ զծածուկս սրտին երախայրիս մատուցանել է այ՟ , և ապա ձայնիւ շրթամբք ցնծութ՟ք արտաքերունն զուարթութեան հոգևորի 'ի սրտէ անտի խորութեան :

Այլ դարձեալ 'ի թիւ , ըստ որում և վերացուցեալ զսեղանն 'ի բարձրութիւն բեմին . որպէս և տէր մեր սրբովք աշակերտօքն 'ի վերնատունն խորհրդոյ՝ շուրջ զսեղանովն բազմեցոյց զնախածանուցեալսն իւր , և զուարթացոյց զսիրտս նոցա անզբաւական ուրախութեամբ : Ըստ այնմ և այս սպասաւոր անկալուք կատարման ուրախարարն խորհրդոյ . որոց իրաւացի է ասել՝ "Հոգի իմ և մարմին իմ ցնծասցեն առ ած՟ կենդանի " :

Իսկ 'ի բեմին քահանայքն բարձր ձայնիւ սկսանին զաղեղունն զհրշտակականն երգ, քանզի երկնից նմանի բեմն, և համբարձմամն Յսի 'ի վեր՝ սեղանն, զորով շուրջ կան քահանայքն՝ որ են հրեշտակք տն ամենակալի՝ և նուագեն զհրեշտակականն երգ. զի որպէս վերացաւ սեղանն յերկնանման տեղի, փոխեցաւ և կցուրդն յերգս հրեշտակաց։

Եւ դարձեալ միւսանգամ զնոյն սաղմոս երկրորդել 'ի թիւ և յելս ատրիճանացն՝ ըստ այնմ խորհրդեան է. որպէս հարիւր տասն և եւթն սաղմոսն առդրանն։

Եւ ապա երիցս ձայնիւ ասեն՝ “Սեղան քո տէր զօրութեանց„, և 'ի նոյնն հաստատեն զսեղանն 'ի տեղւոջ իւրում, զերից սրբասացութեանց սերովբէիցն՝ սրբոյ և զուգական Երրորդութեն զեկուցանէ զերդատրութին. զոր 'ի մարմնաւորութեանն խորհուրդ տն մերոյ Յսի՝ ետես Եսայի, և լուաւ զնուագ սրբասացութեն. որում և ածաբանն վկայէ Յոհաննէս. “Զայս ասաց Եսայի՝ մինչ ետես զփառս նորա„։

Իսկ լուանալն և օծանելն զսեղանն՝ զմարմինն տն նշանակէ՝ օծեալ ածութբն անճառ միաւորութբ, նա և խորհրդով մկրտութեանն 'ի Յորդանան, և արեամբն 'ի խաչին. վասն որոյ և ջրով նախ, և ապա գինւով. ըստ որում մի են ջուրն և հոգին և արիւնն։ Եւ խաչիւն տնագրեն՝ նոյն իսկ է խորհուրդ չարչարանացն, որ սրբեացն զմեզ։ Եւ խաչն 'ի մէջ սեղանոյն՝ չարչարեալն է վասն մեր։ Եւ ասեն ձայնիւ, “Օծեր իւղով զգլուխ իմ„. իւղ զածութիւն Բանին ասէ, և գլուխ՝ մեր մարդկութին զոր առն 'ի մէնջ, և միացոյց անճառապէս։ Զոր իմացեալ մանկանց եկեղեցւոյ զխորհրդոյն յեղանակ՝ նուագեն առ Հայր Ած. “Օծեր իւղով զգլուխ իմ„. ըստ այնմ, “Վասն այսորիկ օծ զքեզ Ած՝ Ած քո„։

“Եւ ապա դրոշմեալ սրբով միռոնաւն երկոտասան տեղիս 'ի վերայ գլխոյ սեղանոյն„. զի անմեկնելի յինքեան խորհրդոյ արար 'ի վերնատանն զերկոտասան աշակերտսն ըստ սեղանակցուեն. յորում տեղւոջ և յետ վերացմանն իւրոյ օծ զնոսա Հոգւով սրբով։ Եւ երկոտասան 'ի չորեսին դէմս սեղանոյն.

քանզի և մարգարէքն երկոտասանքն խորհրդականս քանիւքն իւրեանց անմեկնելի են յայսմ անդանոյ ։ Նա՛ միոյ միոյ առեալս , Օրհնեսցէ օծցէ և սրբեսցէ անդամս , շուրջանակի նշանադրոշմամբքն , քանզի է օրհնութի՟ն զի յայտնաբանութի՟ն թարգմանի ըստ սրբոյն Դիոնիսիոսեայ մեկնութեան , որ է յայտնութեան Ծնի խորհրդոյ ։ Նյն զի և օրհնեաց զմեզ հոգևոր օրհնութ՟ք յերկնաւորս 'ի Ք՟ս ։ Հայրն բարեխնամօղ՝ լինել մեզ Տ՟րս և անապատս նովաւ , որ էօծ զմեզ Հոգւով սրբով առհաւատչէիւ , որով հոգեղէնք հաստատեցան ։ Իսկ օծումն խորանին զգուարթութիւն երկնայնոց զօրութեանցն նշանակէ , որք սպասաւոր են օծելոյն ա՟յ , և խորհրդագգածք առ մեզ միաւորութեան ա՟յ ։

Օծանի նմանապէս և տաճարն , որ եմք մեք լեալք , և անուանեալք ․ վասն զի յորժամ եղև ընդ մեզ Էմմանուէլ , և հաւասարեաց արեան և մարմնոյ, և օծ Հոգւոյն սրբով 'ի բնակութի՟ն իւքեան զներքին մարդն ։ Իսկ արտաքոյ եղեալ օծմամբն քառակողմանի , զի և զմեր քառանիւթեայ մարմինս էօծ իւքեամբ , որ և արտաքին անուանի մարդ , զգալի մկրտութեան մաքրութ՟բ և օծմամբ ։ Դարձեալ ներքին կողմն տաճարին հրեայքն , և արտաքին հեթանոսք՝ անխտրաբար տաճարացան ա՟յ ։ Նոյնպէս շինեցան "Ի վերայ հիման առաքելոց և մարգարէից ․ զի որք 'ի Ք՟ս մկրտեցան , զՔ՟ս զգեցան „ ։ Նոյն 'ի հաւատսն Աբրահամու յարմարեալք՝ հաղորդք եղեն արմատոյն և պարարտութեան ձիթենւոյն , և օրհնեցան աւետեացն զաւակաւ՝ որ է Ք՟ս ։

Իսկ դրացն և սեմոցն օծումն՝ սրբոյ կուսին համաքատակի , յորում մուտ և ել առ մեզ տէր Յ՟ս , ըստ հոգետեսն Եզեկիելի ․ քանզի նա իսկ նշանակի դուռն արևելեան , ընդ որ մուտ և ել միայն Ա՟ծն Իսրայէղի ․ և զդուռն զկնի փակելն՝ անխախտելի մնալն է կուսութեն կնքոյ 'ի մայրն լինելն Էմմանուէլի ։

Նոյն դարձեալ յետ օծանելոյ զարտաքոյն կողմանս 'ի ներքս մտանելն , և օծանել զհարաւակողմն , նշանակէ 'ի վերջէ հաւատալոյ ազգատոհմին Իսրայէղի՝ ըստ Պաւղոսի , "Մինչև լրումն հեթանոսաց մտցէ, և

տայս ամենայն Իսրայէղ կեցցէ,, նովին իսկ հաւատով և օծմամբ, յորժամ բացցի նոցա վերստին դուռն ո-ղորմութեան տյ :

Այլ զգեցուցանելն զսեղանն վայելչական և զար-դարուն զգեստուք, զի զոր էառն 'ի մէնջ մարմին՝ ծածկեաց զնա զարդարեալ առաքինութբ․ որպէս վայել էր նմա լնուլ ինքեամբ զամենայն զարդարու-թիւնս :

Իսկ վառումն զլապտերացն՝ զի լոյս գիտութեան տյ ծաւալեցաւ 'ի ստորին աշխարհս․ և ընթերցմունք մարգարէականք և նորոյ կտակիս՝ համաձայնութիւք են խորհրդածութեան այսմիկ նորոգ աւուր պարգևաց փրկութեան մերոյ :

Այլ 'ի գլուխ ամենայնի՝ կենարար խորհրդեանն քահանայագործութիւն և հաղորդութիւն, աւանդ է տէրունական, զոր 'ի կատարման տնօրէնութեան հրա-մայեաց առնել 'ի յիշատակ 'ի մշտնջենաւորան սըր-բութեան․ որում մինչ 'ի կատարած այսր յաւիտենի հաղորդին խորհրդածազգածք, և հաղորդեցուցանեն զորքեալն սրբարար աւազանաւն՝ կենսացուցիչ մար-մնոյ և արեանն : Որ և պաշար առ ած ուղեգնացութեան յիւրաքանչիւր եւս կատարածի կենաց պատրաս-տեալ պահի 'ի Քսի հանգուցելոցն, մինչև 'ի դէպ ժամու 'ի սեղան արքայութեան նորա բազմեցիմք ընդ անսուտն խոստմանն, և վայելեսցեմք զպատրաստեալն 'ի սկզբանէ խորտիկս հոգևորականս ընդ Քսի ան-ստերիւր յուսոյն մերոյ, և գոհացող ձայնիւ փառս վերերգեսցուք ամենասուրբ Երրորդութեան :

# ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

## ՑԵԿԵՂԵՑԻ

«ԲԱՐԵԲԱՆԵՑԷՔ զա̃ծ յեկեղեցիս» մարգարէա-
կանն հրամայէ բան. ուստի և մեր առեալ աստա-
նօր զնոյն ձայն հոգեշնորհ՝ հնչեցուցանեմք օրհնու-
թիւն նոր երգելով տ̃ն 'ի յարկի սրբութեան նորա։
Զի թէ առ հնոյն և ստուերականաւն այսպիսի
ցնծութ̃բ և ուրախութեամբ յորդորէ բանն օրհնել
զտէր 'ի դրունս Սիովնի, որչափ ևս առաւել 'ի նո-
րոգմանս մերում ճշմարիտ լուսաւորելոցս՝ իրաւացի
է օրհնել զուարճալից բերանօք զհրաշագործն ա̃ծ,
և տօնել զնաւակատիս փրկութե̃ն մերոյ։ Զի ար-
դարև նաւակատեաց է տօնս որ կաթողիկէ եկեղե-
ցւոյ. զոր տէր հաստատեաց՝ և ոչ մարդ, որ եդ զհի-
մունս սորա ոչ ըստ մարգարէութե̃ն 'ի քարանց պա-
տուականաց շափիղայ և կարկեհան, այլ ինքն եղև
վէմ անկեան, և հիմունս արկ սմա զառաքեալս և
զմարգարէս։ Նա կանգնեալ ոչ յասպիս զաշտարակս
սորա և ածեալ պարիսպ յընտիր ընտիր քարանց պա-
տուականաց. այլ զհրեշտակաց բիւրաւոր զօրութիւն
կացոյց սմա պարիսպ շուրջանակի, և զսրբոցն լու-
սազգեցիկ գումարութ̃իւ։ Այսմ որոյ հրաւիրելով
զմեզ մարգարէութ̃ի Հոգւոյն՝ մտանել ընդ դրունս
սորա խոստովանութ̃բ և պանծալի սրբութ̃բ, և պա-
տուիրէ մեզ նոր որդւոց Սիովնի հանդերձ երկրպա-
գութ̃բ օրհնել զտէր ա̃ծ, որ երևեցաւ մեզ, և ցըն-
ծութ̃բ և ուրախութ̃բ տօնել զխորհուրդ աւուրս
փրկութե̃ն մերոյ, որով պարակցեալ ընդ հրեշտակս՝
սաղմոսիւք և օրհնութեամբ պատուասիրեսցուք տօ-
նախմբութ̃իւ։ Քանզի այսօր արդարութե̃ արեգակն
պայծառ լուսով շուրջ փայլեաց զմեօք զփառս ա̃ծու-
թե̃ն իւրոյ. որով հրաշագործեալք 'ի նմանէ՝ ծանի-
ցուք զպատիւ և զանուն նորա սրբարանիս։

Սյամն զի նախ ասէ «Տուն ա̃յ. և տաճար տեառն. դուստր Սիովնի. դշխոյ Տր̃. հարմնարան և առագաստ Տր̃ և կաթողիկէ առաքելական եկեղեցի»: Նաև արդ տուն ա̃յ ասէ, զի 'ի սմա հանգեաւ Բանն ա̃ծ՝ ըստ մարգարէութեն, թէ «Բնակեցայց, և հանգեայց 'ի նոսա»: Նաև տաճար ա̃ն իմանի՝ ոչ ըստ հրէականին 'ի միում ւեթ շինեալ տեղւոջ, այլ գերագոյն հրաշագանութբ 'ի ծագս տիեզերաց՝ երկնային կամար յօրինեալ. յորում ոչ նշոյլք միայն փառաց երևեալ, այլ նոյն ինքն տէրն փառաց բնակէ, և իմանալի գեղապարութբ զեռահիւսակ սրբասացութիս յօրինէ: Մակագրի և դուստր Սիովնի, և դշխոյ Տր̃. զի 'ի Սիոնէ սկզբնաւորեալ եղև խորհուրդ շինուածոյ սորա. այս որ ոչ ըստ հնոյ կտակին օրինադրի, այլ աւետարանաւն ընդ ա̃յ որդեգրապէս միաւորի. զի եթէ չէ նեալն 'ի Դաւթայ Սիովնն կոչեցեալ՝ ամրոց և ժողովարան իմանի, որչափ ևս 'ի Քնէ շինեալս 'ի մարմնի իւր եկեղեցի՝ ամուր ապաստանի է դիմելոց 'ի սա ազգաց և ժողովրդոց. յորում ինքն և մանկունք իւր համալծորդք յորջորջին 'ի մարգարէութենէն՝ և դուստր, այս ինքն ծնունդ Սիոնի անուանին. յոր հայեցեալ Զաքարիաս և Անգէաս՝ ուրախանալ դստեր Սիովնի վերադոչեն, այս ինքն տիեզերական եկեղեցւոյ: Իսկ դշխոյ Տր̃, վասն զի Բանն ա̃ծ 'ի սմա թագաւորեալ արեամբն անապականաւ՝ իբր շքեղաշուք զարդու ծիրանափառ զարդարեաց զսա: Նաև պսակ թագազարդութե եդ 'ի գլուխ սորա զխաչն պարծանաց, ըստ Եսայեայ՝ «Ցնծասցէ անձն իմ 'ի տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան, և պատմուճան ուրախութեան». և ընդ աջմէ իւրմէ կացոյց ըստ հոգենուագ մարգարէութեանն «'Ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ». և ըստ Եզեքելոյ՝ թէ «Ընդ նմին յարոյց, և ընդ նմին նստոյց յերկնաւորս 'ի Քն»:

Այլ և հարմնարան զսա իմանամք, և առագաստ երկնաւոր թագաւորին. քանզի տիեզերակոչ աւետարանաւն լուսազարդեալ, և 'ի խօսման կան 'ի սմա հաւատով և հոգևոր լուացմամբ աւազանին փեսային երկնաւորի հոգիք արդարոց կատարելոց՝ ըստ

կամելոյն Պաւղոսի «Իբր զկոյս մի սբ յանդիման կա- ցուցանել Քի» սբ և անախտ միաւորութ̃. յորում և ինքն փրկիչ մարմնոյ իւրոյ պատարագի իբր զգառն անմեղ առ 'ի բառնալ զամենայն արատ և զբիծ կար- կամութե 'ի սմանէ:

Սուրբ և կաթողիկէ՝ համաժողով ազանց բոլորից 'ի մի ժողովեալ հնազանդութե, լուսաւոր մկրտու- թեամբ աւազանին երկնեալք, և ծնեալք 'ի ժա- ռանգութիւն ածյ Հոգւոյն սրբարարաւ: Եւ առա- քելական զսա անուանեմք ըստ կանոնեալն հաւա- տոյ. քանզի ոչ պարզաբար անուն ժողովոյ կաթողի- կէ եկեղեցի անուանի, այլ որք Առաքելովքն հրա- ւիրանաւ Հոգւոյն կենաց 'ի սպաս պաշտաման հո- գևորի եղեն գումարեալք, և յանդրանկութե երկ- նայնոյ քաղաքականութեան գրեցան:

Իսկ արդ զի յայտնի ցուցաւ մեզ անուն եկեղեցւոյ, մտցուք այսուհետև 'ի խորս խորհրդական բանից 'ի գիրս Նոր վերագրելոց, և 'ի ծովացեալ իմաստից նո- ցա 'ի վեր բերցուք զմարգարիտն հաւատոյ, և զգանձս ածեղէն իմաստիցն զննեսցուք: Իսկ նախ զայս արտա- դրեսցուք, թէ զիարդ շինեցաւ եկեղեցի, և վասն որոյ պատճառի: Քանզի ոչ եթէ արդէն իսկ նորոգ ծանուցաւ խորհուրդ եկեղեցւոյ. և կարգք որ 'ի սմա՝ ոչ առժամանակեայք են, այլ յաւիտենականք, և տեսանելիքս այս իմանալիք՝ ոչ մարդկային իմա- ցուածք, այլ ածային Հոգւոյն յայտնութիք, այն որ շինեցաւ Բանիւն Հօր 'ի կատարածի աստ տեղի փա- ռաց ածութե իւրոյ, և տուն ապաւինի բանաւոր հօ- տի իւրոյ. որք նախ ցրուեալք յօտարէն 'ի յօց- տումն կորստական ամպարշտութեանց՝ հաւաքեցաք վերստին 'ի սմա՝ ճանաչել զմիադաւան միանական խոստովանութիւն խորհրդական Երրորդութեան, և երկրպագել մեծի և ահաւոր տէրութեան:

Քանզի իմաստունն ածյ շինեաց զհայրենի տունն՝ ոչ նորոգ, այլ զանկեալն զ՛ի սկզբանէն որ յԱդա- մայ, և զԴաւիթն, որ ըստ մերակերպութե ժառանգ և կանգնիչ հայրենի թագաւորութեան եղև ըստ ա- ւետեացն Գաբրիէլի: Քանզի Բանն որ 'ի Հօրէ ծա- գեցաւ լոյս ; և նոյն իմաստութի, և զօրութի է ածյ

Հօր, որ յոչէից 'ի գոլ զարդարածս էած, զերկին, և զիմանալի զօրս երկնայինս զաննիւթս և զանմահանելիս. և զերկրորդ աշխարհս նիւթական և մահանելի. յորոյ վերայ և զմարդն կացոյց թագաւոր ընդհանուր իւրոյին թագաւորութե̃. և այսոքիկ 'ի խորհուրդ եկեղեցւոյ:

Եւ որպէս զերկնայինսն հրեղէնսն պարածածկեաց խորանաւ զմերձակայսն փառաւորիչս անմատոյց լուսոյ աստուածութեան, նոյնպէս և յայսմ խորանի պարածածկին վարագուրաւ դասք քահանայից, որք կան 'ի սպասաւորութի սոսկալի և ահաւոր խորհրդոյ մարմնոյ և արեան տն, որ կատարի 'ի փրկութի աշխարհի: Որանգն անդ 'ի քերովբէական յաթոռ Որդին մարմնացեալ ընդ աջմէ Հօր նստի, և 'ի բիւրուց երկրպագի զօրաց. և աստ 'ի վերայ քառաթեւեղանոյն Որդին պատարագեալ 'ի հաւատացելոցն հանգչի հոգիս, և ինքեամբ զմերս վերանորոգէ պաշտօն հոգևորական. և ինքն մնացեալ նստի գեր 'ի վերոյ իշխանութեց և պետութեց:

Անդ 'ի Ջուրս վերինս՝ հրեշտակացն շրջապատեալ պարք, ըստ այնմ՝ թէ «Ջուրք՝ որ 'ի վերոյ քան զերկինս՝ օրհնեցէք զանուն տն»: Իսկ Հոգին սուրբ ծաւալեալ 'ի վերայ աւազանին՝ զանութիւն մեր կենդանակերպելով ծնանի նոր ծնունդ նորափետուր զարդարեալ. անդ երկնայնոց էութեանցն Ջոկքն եւթնպարեան խմբիւք զերեքսրբեան օրհնութիւս քաղցրանուագ երգեն 'ի փառս համագոյն տէրութեան: Եւ աստ նոցին նմանութե̃ երամացեալ բիւրուց բիւրք նորածնունդ լուսակերպից միոյնդունակ օրհնութիւս միշտ 'ի բարձունս առաքեն իշխանին լուսոյ. անդանօր իններակ դասուցն կարգք յերիս որոշեալ զատմունս համագուգեալ փառաւորութե̃ 'ի գերագոյական Երրորդութի ունին զհայեցուածս անլոյծ պնդութե̃. քանզի յետ նորա և շուրջ զնովաւ են կարգեալք և հուպ նմին՝ ընդ երկոտասանիւք պարուճակեալ թըռուվք՝ ըստ շնորհաց նահապետացն և փրկչին մերոյ աշակերտացն: Յերիս չորս և 'ի չորս երիս գերակատարուիս՝ զերկնայինսն իմանալք խորհրդապետ քահանայապետութիս յորս իջանէ աստուածականն լոյս գե

բարւոքապէս ։ Նոյնպէս և ամենայն քահանայապետութե եկեղեցւոյ սկիզբն և արմատ և կատարումն զՔս ունելով զերկնայինն քահանայապետ հանդերձելոցն բարեաց ։ Նորա կարևորապէս առաջնորդն մերոյ քահանայութես 'ի գերագոյն ա͞ծպետութենէն լցեալ պարգևէ, և նոյն դարձեալ աննախանձաբար և զանազանապէս մատակարարէ խոնարհագունիցն դասուց, իբրու զամենեսեան ա͞ծանալ համբարձմամբ մտաց և առաքինի վարուց՝ ածէ 'ի Ճշմարտութեն կերպարան ։

Այլ զի համառօտագոյն ասասցուք, ամենայն ինչ՝ որ յեկեղեցի, զերկնայնոցն բերէ ցոյց օրինակի ։ Պաշտօնն հանապազորդեան 'ի սմա՝ յերկինս արքայն իմանի մշտնջենաւորս պայծառութիւն ։ իսկ բարութեն անուշահոտ խնկոցն՝ Հոգւոյն սրբոյ յերկնայինս և 'ի հոգիս մեր բարութեն անուշահոտութեն յայտնէ ։ Քահանայապետն՝ որ 'ի սմա բաշխէ զշնորհս Ճշմարիտս, օրինակ է մեծի քահանայապետին ։ յորմէ վտակն անմահութե Հոգւոյն Սբ կեանս և անմահութե բաշխէ մարդկան ։ Այլ դասք պաշտօնէից որոշեալք 'ի սմա՝ երկնայնոցն դասուց զանազան ունողաց զդաս և զպաշտօն նշանակաբար ունին զօրութիւն ։ Նաև տօնք ցնծութեան որ 'ի սմա՝ առհաւատչեայ յաւիտենական ուրախութեան զա͞ծ տեսողացն, և յերկնային զեղապարութե և խնդութե տայ զտարացոյց՝ ըստ գրեցելումն, թէ « Ուրախութի յաւիտենից 'ի վերայ գլխոց նոցա »։ Ուստի ունիմք իմանալ, թէ. արդարև երկնից երկինք և սրբութիւնք սրբոց 'ի ցոյցս իմանի սա ։

Սա է դրախտ ա͞ծատունկ անմտանելի չարաց ։ զի 'ի նմանէ օձիւն արտաքս անկաք, և Քրիստիւ 'ի սմա մտանեմք ։ և վասն զի դրախտն կենդանեաց զմեզ մեռեալս ոչ ընդունէր, նոյնպէս և յայս եկեղեցւոյ արտաքս որոշին ամպարիշտք և մեղաւորք ։ Յայնմ դրախտի ծառ կենաց, յորմէ արգելաւ նախաստեղծն, իսկ աստ խաչն լուսոյ փոխանակ նորա 'ի նոյն անկագործէ կանգնեալ արմատացաւ, և ծաղկեցաւ կենսաբեր արեամբ նորուն ։ յորմէ միշտ կթեն՝ որ 'ի տիեզերս հաւատացեալք՝ զպտուղն կենաց ։ Նոյն արբեւրն եդեմաբուղխ ոռոգանէ զվայելչավայր բուրաս

տանն, և անտի 'ի չորս բաժանի առաջս. իսկ պատ Բանն Ճշմարտութեան բղխեալն 'ի Հօրէ աղբեւրաբար՝ զաւետարանին հոսէ գնացս ընդ չորեքծագեան տիեզերս, և մկրտութեամբ մաքրէ և նորոգէ զմարդիկ 'ի կեանս արդարութեան:

Յայնժամ դրախտի Ադամ ստեղծաւ պատկեր այ. և աստ մարդն յեկեղեցւոջ ծննդեամբ աւազանին լինի որդի այ: Անդ փայտ գիտութեան բարւոյ և չարի. և աստ խաչիւն ծանեաք զՃշմարիտ բարին զած, և խոյս տուաք 'ի պատրողաբար ծառայեցուցչացն. որպէս և ինքն փրկիչն հրամայեաց. "Յորժամ բարձրացուցանիցէք զորդի մարդոյ, յայնժամ գիտասջիք՝ թէ ես եմ": Անդ ծառք տերևախիտք, ծաղկազարդք. և աստ դասք առաքելոց և մարգարէից լուսաբեր իմաստութեամբ և ծաղկազարդ առաքինութեամբ՝ զԵրրորդութեան հաւատ ուսուցանեն վայելչածաղիկ վարդապետութեամբ: Ոնա սերոբէիցն պարփակէ հրեղէն սուրն. և զսա Հոգին սուրբ պարունակէ նշանաւ տէրունականն խաչի: Յայնժամ դրախտի պատուիրանն տուաւ գործոյ և պահպանութեան. զնոյն և աստ պատուէր առաք՝ ստանալ զօրէնս Հոգւոյն, և անսխալ պահել:

Յառաջինն Ադամայ շինեցաւ 'ի կողիցն կին, և տուաւ նմա յօգնականութիւն. իսկ յերկրորդն Ադամայ կողիցն, յորմէ ել արիւն և ջուր, շինեցաւ եկեղեցի: Որ և Առաքեալ համեմատէ՝ ասելով. "Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ 'ի Քս և յեկեղեցի":

Խորհրդածի եկեղեցի և նոյեան տապանին. զի որպէս յերիս որոշմունս հրամայեցաւ կազմած տապանին՝ ներքնատուն և միջնատուն և վերնաձեղուն. նոյնպէս և եկեղեցի երիս ունի յարկաց պատրաստութիւս. զարտաքինն զաւիթ, և զտաճարն, և զսըրբութեանն խորանն: Անդ բազմահոյլ կենդանիքն մտեալ ապրեցան 'ի ջրհեղեղին պատուհասից. և աստ բազմութիւք հաւատացելոց, 'ի չնչահեղձոյց մեղացն ծովէ վերաբերող առաքինութեք առ երկինս թռուցեալ՝ ապրեցան 'ի սահմանադրոյց հեղձմանէ: Յայնժամ տապանէ արձակեալքն կենդանիք, նովիմբ վարեցան ըստ բը-

նուէրն ախտարժից, որպէս և մոլին. իսկ սատոր զազանաբարոյքն արձակեալք զդօնացան յիմաստս հոգևոր որդիութե՟ ա՟յ: Նոյի արձակեալ զագռաւն՝ այլ ոչ ևս յաւել դառնալ. և սոյն արձակեաց Ք՟ս զսեւացեալն սատանայ յեկեղեցւոյ իւրմէ, և 'ի լոյս եհած զսեւացեալսն մեղօք: Այն ագռաւ ընկղմեցաւ 'ի ջուր անդր. և սատանայ ընկղմեալ 'ի հոգիս մեղաւորաց բնակէ, որ 'ի տղմի հոսանուտ կենացս թաւալին: Այլ դուռն 'ի կողմանէ սորա առաքեալք և մարգարէք, ընդ որ փոխանակ աղաւնւոյ շղաբեր հրեշտակի՝ Հոգւոյն ս՟բ մտանելով ոչ սակաւս 'ի տապանէն հանէ, այլ զամենայն մոլեգներս յերկրէ յերկինս հանէ: Ի ցամաքել ջրոյն՝ մատոյց Նոյ պատարագ Աստուծոյ. և 'ի ցամաքել մեղացն 'ի մէնջ՝ ընծայեմք սեղան Աստուծոյ, և 'ի սուրբ մտաց պատարագ ընդունելի մատուցանեմք Ա՟յ:

Ի սա և աշտարակ իմանալի: Քանզի այն ամբարտակ 'ի հպարտից և յապստամբից շինեցաւ, վասն որոյ և վաղվաղակի կործանեցաւ. որոց և 'ի բաժանել լեզուացն՝ չար համաձայնութիւն խափանեցաւ: Իսկ սոսա զցրուեալսն յաշտարակէն զազգս 'ի հոգեւոր համաձայնութիւն եհած տէր մեր, և շինեաց 'ի մարմնին իւր աշտարակ հզօր հաստահեղոյս վիմօք զկաթողիկէ ոք 'ի վերայ առաքելադաւան հաւատոյ անսասանելի հաստատութե՟. զոր ոչ հողմք սատանայական, և ոչ անձրևք յորդախաղաց ուղխից բռնութեան կարացին փլուցանել. այլ և բարձրացեալ խորհուրդ սորա զերագոյն երկնայինսն ամբարձաւ կամարի: Այն աշտարակ՝ 'ի տխմանեանն Ներդայ շինեցաւ և սա բարձրացեալ խորհրդով յա՟ծն Ք՟անէ: Այն աշտարակ զմի լեզուն 'ի բազումս բաժանեաց, և զչար միաբանութիւն յաւիտենից քակեաց 'ի միմեանց. և այս աշտարակ զքակեալսն և զանջատեալսն ած 'ի մի, համաշունչ և միախորհուրդս զամենեսեան առնելով 'ի մի յոյս կոչմանն Ք՟ի. Յայնմ աշտարակի յեւթանասուն և երկու լեզուս զազգս նահապետացն բաժանեաց. իսկ յայս աշտարակ եւթանասուն և երկու առաքեալքն հաւաքեցին զհանրական տիեզերս, և ծննդեամբ սրբոյ աւազանին արարին որդիս լուսոյ և տուընջեան:

Համաքաղաքի այս որբարանի խորհուրդ և ընդ խորանին Աբրահամու, յորում տաղաւարաց ա̄ծ եր-կու հրեշտակօքն. վասն զի 'ի սմա բնակէ խորհրդականն Երրորդութիւն, որպէս ասաց մարգարէիւն. "Ի սմա բնակեցայց, զի հաճեցայ ընդ սա,,: Ընդ յառաջքան զհամաշխարհական ուրախութիւն եկեղեցւոյ 'ի մաշ-կերայ խորանին ընդունել զտէրն և զարարիչն ամենե-ցուն. և աստ կատարելապէս միացաւ ընդ մանկունս եկեղեցւոյ. ըստ այնմ, թէ "Գնացից 'ի նոսա, և բնա-կեցայց 'ի նոսա,,. և այլն: Յայնմ խորանի զպարգևա-կան զաւակն խոստացաւ ա̄ծ Աբրահամու. և աստ նոյն ինքն Ք̄ս զաւակն օրհնութե̄ պարգևս մեծա-մեծս բաշխէ հաւատոց որդւոցն Աբրահամու: Ընդ նահապետին միածնաւն իւրով պատարագաւ յառա-ջեաց զրաւեաց զա̄ծ 'ի պարտս սիրով իւրով. ընդ որում եւ Հայրն երկնաւոր զմիածինն իւր պատարագ կենդանի զգառն անարատ, որ եբարձ զմեղս աշ-խարհի, սիրով միացուցեալ զամենեսեան ընդ ին-քեան:

Խորհրդածի սա և լեառն սինէական. յորում փոխանակ փառացն միգապատ և հրատեսիլ երև-մանցն, և պակուցանող ձայնիցն փողոց և որոտմանց 'ի լսելիս ժողովրդոցն, նոյն ինքն անպարագրելի Բանն Հօր զփայլատակող ճառագայթս ա̄ծութե̄ն ամփոփել մարմնոյն թաքուցեալ՝ կենսաբեր աւետարա-նին փողով զտիեզերս հրաւիրեաց յորդեգրութի̄ Հօր: Ընդ երեսքն Մովսէսի լուսաւորեցաւ, յոր ոչ կարէին հայել որդիքն Իսրայէլի. իսկ աստ բացաւ երեսօք զփառս Տ̄ն իբրև ընդ հայելի տեսեալք՝ ա̄ծատես ամենեքեան վերագրիմք: Ընդ պատգամքն ա̄ծագիծք 'ի տախտակս քարեղէնս տուեալ եղև նոցա 'ի ձեռն Մովսէսի. և աստ աւետարանին փրկութե̄ ինքնախօ-սութ̄ք Որդւոյն ա̄յ՝ լուսաւորէ զամենայն մարդ զե-կեալն յաշխարհ:

Ի նպատակ օրինակի այսր քաւարանի կազմեցաւ հրամանաւ ա̄յ խորանն վկայութե̄ 'ի Բեսելիէլէ, և կանգնեցաւ 'ի Մովսէսէ. և յետոյ տաճարն հրա-շագան 'ի Սողոմոնէ. մին զփոփոխելի կարգ օրինա-ւորացն նշանակէր, և միւսն զհաստատուն խորհուրդ

այսր որդեգրանի զեկուցանէր ։ Սակայն 'ի նոսա մարմնոյ մաքրութիւք կատարէին առօրեայ լուացմամբք և պատարագօք ։ Իսկ աստ հոգևոր սրբութիւ և մաքրութիւ մկրտութեամբ աւազանին, և խորհրդական ճաշակմամբ տէրունական մարմնոյն ։ Նոքա արիւն անասնոց սրսկեալ 'ի վերայ ժողովրդեանն. և աստ արիւնն տէրունական հեղու 'ի փրկութիւ աշխարհի ։ Յառաջինումն զատն զգառն զենեալ, և 'ի սմա զատն հոգևորական վասն կենաց աշխարհի պատարագեալ ։

Նոքա մանանայ յերկնից տուեալ նոցա 'ի կերակուր, և աստ հացն կենաց Ք՟ս իջեալ յերկնէ՝ կեանս տայ աշխարհի ։ Նոքա ջուր 'ի վիմէն ըմպեալ յարբուցմն ծարաւեաց. և աստ ջուրն կենդանաբար 'ի կողիցն Ք՟սի 'ի զմայլումն հաւատացելոց ։ Ի նոսա Թլփատութիւ մարմնոյ. և աստ Թլփատութիւ սրտի՝ «Ի մերկանալ զանդամն մարմնոյ Թլփատութեամբ Ք՟սի»։ Նոքա պատարագք և զոհք յանասնոց. և աստ անձինք մաքրեալք սուրբք և հաճոյք այ՟ ։ Ի նոսա աւազան ջուրց առ 'ի մարմնոյ լուացումն. և աստ աւազան հոգևոր ջրոյ 'ի մաքրութիւ հոգւոյ և մարմնոյ ։ Նոքա ցուպ քահանայապետին պտղաբերեալ կաղին արքայական, և աստ խաչն լուսոյ պտղաբերեաց զՔ՟ս ։ Նոքա տախտակ դատաստանի ճշմարտութե և յայտնութե. և աստ աւետարանն քարոզեալ արքայութե ։

Նոքա պճղնաւոր զգենլով ունէր քահանայապետն առ ստորոտովն զանգակս, և խոյր 'ի վերայ գլխոյն, և վակաս չորեքկարգեան ականմբքն՝ խառնեալ ոսկւով շղթայաձևիւք ընդ միմեանս ։ Իսկ յեկեղեցի նշանակելով զՔ՟ս զգեցեալ մեզ հաւատովք սիրով և սրբութի ։ Իսկ զանգակքն՝ զպայծառ քարոզութեն որ 'ի մեզ ծաւալումն բացայայտէ. և խոյրն՝ զշնորհն հոգւոյն զեկուցանէ ։ Քանզի զպճղնաւորն զգենլով Ահարոնին՝ զմարմնանալ Բանին նշանակէր, զչորեքնիւթեայ բնութիւ զարդարեալ շքեղաշուք արդարութի ։ Կապուտակաւն՝ զերկնաւորն եցոյց առաքինութիւ. և կարմրովն մանուածոյ՝ զանապական արեանն կցորդութիւ, որով հաւատարեաց մեզ արեան և մարմնոյ ։ Իսկ բեհեզովն սպիտակաւ՝ զանծութեանն ընդ բնութիս մեր խառնումն. և ծիրանեաւն՝ զծած-

ցանէ 'ի մահահանգիստ քնոյն զտիեզերս, և ընդ առաջ զալստեան երկնաւորն հրաւիրէ Թագաւորի ։

Իսկ վարագուրին անջրպետութիւն զառաջին երկնից ցուցանէ որոշումն, ուր միայնակ Երրորդութիւնն ասի բնակիլ յերկինս երկնից. և այն ևս անջրպետ՝ որ ընդ մէջ մեր և անմարմին էութեանց կայ ։

Այլ տաճարն ժողովեալ հաւատացելոց՝ զհաւասարութիւն մեր ընդ հրեշտակս զեկուցանէ, յորժամ կամք ամենեքեան առաջի բեմին Քրիստոսի ։ Այլ արտաքոյքն եկեղեցւոյն ժողովեալ է յանցաւորաց, որք կան արտաքոյ, տեսանեն և լսեն զպատիւ արժանաւորացն ։

Իսկ լապտերացն լուցմունք՝ զլուսաւոր վարս և զողորմածութիւն իմաստնոց կուսանացն բացայայտէ. նաև զերկնից լուսաւորացն բերէ նմանութիւն՝ զարեգական և զլուսնի և զաստեղաց ։ Այլ հանապազորդ վառումն լուսոյն՝ զմշտալոյս պայծառութիւն արդարոցն ցուցանէ առ 'ի յՔրիստոս ։

Իսկ սեղանն որոշութեամբ զմիամնականութիւն նը Երրորդութեան խորհրդածէ. և ծածկեալ զգեստիւք պատեհազգունիւք՝ զծածկեալ խորհուրդ աստուածութեան տայ իմանալ ։ Այլ պսակն պարագնդեալ զգունականն պատիւ Երրորդութեան 'ի մի բերեալ փառաւորութիւն ըստ օրհնութեան սրբոց սերովբէիցն. վասն զի 'ի մարմնանալն Աստուծոյ յայտնեցաւ խորհուրդ Երրորդութեան ։ Այլ նուիրանոցքն արծաթիք՝ յստակ և մաքուր բանն է հաւատոյ, զոր նուիրեմք 'ի սպաս պաշտաման ուղիղ դաւանմամբ Աստուծոյ. ըստ այնմ, թէ «Բանք Տեառն ընտիր և փորձք են» ։ Իսկ խորհրդանոցքն յաջմէ և յահեկէ ցուցանեն զպատրաստութիւն սպասուց եկեղեցւոյ՝ անպակաս ունել զսուրբ ողորմութեան առ աղքատս ։ Այլ պատարագին մասն անպակաս մնալ 'ի խորանին, այս է՝ ոչ լինել դատարկ 'ի հաշտարար մարմնոյն Քրիստոսի՝ եկեղեցւոյն. զի մի ասիցի այն, «Պակասեսցի կերակուր 'ի տանէ Աստուծոյ ձերոյ» ։

Իսկ աշտանակն՝ խաչն լուսոյ, և 'ի վերայ նորա գունդ վառեալ աստուածութիւնն եւթնարփի շնորհօք ։ Այլ խնկանոցն զԱստուածածնին բերէ խորհուրդ. զի որպէս նա լի է հոտով անուշութեան, նոյնպէս և կոյսն

սուրբ լի էր Հոգւով սրբով և զօրութեամբ բարձրելոյն ։ Իսկ բուրուառն զՀրեշտակապետին ցուցանէ աւետարանութիւն առ կոյսն ս՟բ. և երեք ամբառնալիքն, զի վերաբերեալ եղև նա աւետեօք խորհրդական անուշահոտ գիտութեան ս՟բյ Երրորդութեանն՝ և 'ի մի կատարումն համաբուն տէրութեան ։ Իսկ բուրուառն խնկոցն հաշտարարութեան, ըստ այնմ զոր 'ի հնումն Ահարոն նուէրս մատուցանէր Ա՟յ, զոր այժմ հաշտութիւն իւրով արեամբն արար Ք՟ս. զոր մատոյց Ա՟յ Հօր 'ի հոտ անուշից. և դարձեալ զանուշաբուրիչ շնորհս Հոգւոյն սրբոյ առ մեզ նշանակէ, որպէս յառաքելումն 'ի սուրբ Պենտակոստէին, և նորօք ընդ ամենայն տիեզերս. վասն այնորիկ նախ 'ի բեմն ծխեն, զի նախ 'ի Հօրէ ելանէ Հոգին սուրբ, և ապա գայ յառաջնորդն, և ապա յայլսն. ըստ այնմ, թէ "Որպէս եւղն որ իջանէ 'ի գլուխ և 'ի մօրուսն Ահարոնի"։

Իսկ աւազանն հաստատեալ՝ մայր է որդեգրութեան հոգևոր ծննդոց, որ 'ի ջրոյ և 'ի Հոգւոյ վերստին ծնեալ՝ լինին որդիք Ա՟յ. և արեամն Ք՟ի հաղորդեալք՝ ժառանգակից նմին եղիցին, և բնակարան Հոգւոյ նորա սրբոյ ։

Եւ զի նախ 'ի խորհրդանոցն հանգուցանեն զխորհուրդն, վասն զի նախ 'ի ծածուկ եկն առ մեզ Ք՟ս, և յորովայնի կուսին հանգեաւ. և ապա յայտնապէս 'ի սեղան խաչին եղև բերեալ ։ Նաև 'ի համբերձելումն երևմանն՝ յայտնապէս ցուցանի երկնաւորաց և երկրաւորաց ։

Եւ քշոցացն հարումն զօրինակ ունի սրբոց սերովբէիցն, զոր Դանիէլ եցոյց. "Հազարք հազարաց պաշտէին զնա"։ Իսկ նստել քահանայապետին յաթոռ բեմին՝ զնստելն յաթոռ փառաց աջահաւոր բեմին երկնաւորն քահանայապետի նշանակէ 'ի միւսանգամ գալստեանն ։ Եւ սեղանոյն բացումն՝ զյայտնապէս երևումն Ա՟ծութեանն ամենայն արարածոց բացաքարոզէ, յորժամ ցուցանէ զինքն արժանաւորաց իւրոց. ըստ այնմ, թէ "Տեսանելոց եմք զնա՝ որպէս և էն"։ Եւ համբուրելն զսեղանն՝ զա՟ծարելոցն տայ զտարացոյց, որք վստահութեամբ հաւատոց և սրբութեամբ հաղորդին նմա ։

Իսկ ժամանակագրութիւն որ 'ի սմա, ոչ վայրապար, այլ մեծ իմաստութեամբ և ծածկեալ խորհրդով. որպէս յաւուր միաշաբաթւոջն նախ մաքրէին զեկեղեցին. վասն զի յառաջ սրբեցաւ աշխարհս, և ապա 'ի սուրբ բեալմն բաշխեցաւ Քն. ըստ իւրում բանին՝ լուցանել ճրագ, և տանն աւել ածել:

Իսկ մտանելով մեր 'ի սմա խաչանիշ կնքելով զդէմս երկրպագութ յարեւելս՝ զՄիածինն սկսանելով, զմերանալն տպաւորէ խաչազգեստիցն 'ի հանդիպումն նորա յօդս ցնծութեամբ երկրպագել՝ զմիածինն ած ընդ ամպս երկնից նշանաւ խաչին եկեալ տեսանելով:

Իսկ ապա երգս առեալ երկդասիւքն համախմբեալ ընդ վերինսն, զՏէր թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ. զաղօթից նշանակելով զվերնոց և զներքնոց թագաւորին ած եկեալ տեսանելով, վայելչապէս զգեցեալ զփառս հայրենիս. թագաւորեալ և սուրբք ընդ նմա:

Յետ որոյ համբարձմամբ աւետարանին գեղապաճեալ օրհնութեամբ երից սրբասացութեամբ խաչեցարին, յորոյ վերայ զածորդին տեսանեմք հոգւոյ ակամբ՝ յաթոռ նստեալ բարձու, և 'ի բիւրուց երկրպագեալ դասուց, պսակեալ զխաչեալն վասն ինքեան:

Իսկ զկնի քարոզին համաշխարհական կոչմամբ զզաւմարեալն տպաւորէ յաշխարհաժողով ատենանն բոլոր տիեզերաց: Այլ և սաղմոսք և ընթերցուածք մարգարէականք զդատաստանն, որ ըստ գրոց, բացայայտէ. ըստ այնմ, թէ “Առնել նոցա դատաստան ըստ գրոց „. և դարձեալ՝ զի 'ի հանդերձելումն նախ մարգարէքն և առաքեալքն վկայեն քարոզութեան, և ապա թագաւորն վճիռ հատանէ: Իսկ ալէլուն քաղցրահնչող ձայնիւ զհրեշտակացն քաղցրաբանութիւն օրհնաբանութիւն նշանէ: Իսկ մերձ առ նմին աւետարանն կենսաբեր ձայնիւ՝ ածխօսութիւք, զորդեգրութեանն առնբերելով պարգեւս հրաւիրէ: Յետ որոյ խոստովանութիւն հաւատոյ յամենայն լեզուաց յանուն տն մերոյ Յսի Քսի և այ Հօր և Հոգւոյն սրբոյ: Իսկ ապա քարոզք և քահանայական աղօթք՝ կոչէ ընդհրաւիրեալսն և զկոչեցեալսն. և 'ի նմին՝ սրբասացութիւն:

Նաեւ յետ աղօթիցն 'ի վերայ ամենայնի՝ վայելուչն եւ արդարն անմահական բաժակին, եւ կենաց հացին, զանդ ուրախութիւն նշանակէ թագաւորելոցն 'ի լոյս, յորժամ նոր արբցէ զնա ընդ մեզ յարքայութեան Հօրն, յայտնելով եւ վարդապետելով իւրոց՝ աշակերտացն զանձառելի խորհուրդն, յանկ եղեալ բանին՝ թէ «Ընդ ձեզ կերիջիք եւ արբջիք 'ի սեղան իմ յարքայութեան իմում»: Ն. յաքելի հանդերձելոց բարեացն ցոյց յեկեղեցւոջ:

Նաեւ պարտ է գիտել, թէ ընդէ՞ր զեկեղեցի՝ որ յանշունչ քարանց եւ 'ի փայտից շինեալ է, եւ զժողովս հաւատացելոց՝ միապէս կոչէ եկեղեցի: Որպէս զդրախտն կրկին իմանամք, նոյնպէս եւ զեկեղեցի կրկին իմացուք. զի եկեղեցի յեբրայեցւոցն առ մեզ ժողով թարգմանի, ըստ նմին անուան կոչի եւ ժողովարանն, զի է շինեալ նա ստուգապէս տուն Աստուծոյ՝ յաղագս պատարագելոյ 'ի նմա Որդւոյն Աստուծոյ. նոյնպէս եւ մարդս տաճար է Աստուծոյ ըստ Պաւղոսի, յաղագս սրբութեան աւազանին եւ մաքրութեան վարուց: Զի որպէս յայս անշունչ տաճարի՝ որ 'ի քարանց եւ 'ի փայտից, զամենակարող անունն Աստուծոյ կարդամք 'ի վերայ, եւ օծանեմք յանուն Աստուծոյ, եւ տուն Աստուծոյ անուանեմք, զի ստուգապէս Տէր 'ի նմա բնակէ. նոյնպէս եւ հաւատացեալք որ յանուն Հօր մկրտին, եւ օծանին իւղով, եւ յանուն Որդւոյ Աստուծոյ կոչին քրիստոնեայք, որպէս ասէ Առաքեալ: «Նաեւ զորս եդ Տէր յեկեղեցւոջ» եւ այլն: Նաեւ զոր զգալի եկեղեցի անուանի՝ առնէ ինքեամբ զհացն եւ զգինին 'ի ձեռն քահանային մարմին եւ արիւն Որդւոյ, վասն եւ մարդս եղեալ եկեղեցի՝ ընդունի ճաշակմամբ:

Զի եթէ խորանն եւ տաճարն ըստ օրինակին փառաւորեցաւ, քանի՞ առաւել որ ճշմարտութիւն է օրինակին՝ փառացն Աստուծոյ բնակարան հաւատով իմացեալ լինի: Վասն որոյ չորից սեանցն կառուցումն՝ զչորից առաքինութեանց որ 'ի մեզ՝ ցուցանէ. եւ կամարացն միաւորութիւն զօրերոյն շաղկապակցէ զառաքինութեանն զատուցումն: Իսկ երկոտասան քարանցն հիմնացելոց՝ զերկոտասան անդամոց նշանակէ բանականաց. եւ շարայարութիւն մեծամեծ քարանցն եւ փոքունց՝ զպարանց հաւատացե-

լոց՝ միանգամայն և զկանանց՝ բարեպաշտութեամբ միա- ցելոց. զի 'ի Քս Յս չիք խտիր՝ ոչ արանց և ոչ կա- նանց: Իսկ կապակցութիւն խնճոյն և այլոց նուիրոց՝ զհաւատացելոց ունի զնշանակ, որ միաւորէ զամե- նեսեան 'ի մի յոյս կոչմանն Քնի:

Իսկ գմբեթաձև խորանարդ բարձրացեալ 'ի ծայր գագաթանն ունելով զծաղկեալ նշան խաչին ծի- րաներփնեալ ածային արեամբն ցուցանէ. որով զմանւ- կունս իւր լուսազարդեալ խաչազգեստ յուղարկէ 'ի վերինն Երուսաղէմ, ցնծալ և պարել 'ի խորանին լու- սոյ, միշտ զուարճանալ, և վայելել յանմահական ճաշակացն:

Այս է խորհուրդ եկեղեցւոյ, և այսքան 'ի սմա ածային նշանացն խաղացումն: Արդարև «Ո՞ խօսեսցէ զզօրութիւնս տն» և այն, որ այսքան ձիրս պարգևեաց որդւոց մարդկան: Եւ արդ զի՞նչ հատուցանեմք տրի- տուր տն այ մերոյ, այլ միայն երկիր պագանել նմա հոգւով և ճշմարտութեամբ, ասելով ընդ Առաքելոյն՝ թէ «Շնորհք այ 'ի վերայ անպատում պարգևաց նորա»: Եւ՝ այսպէս տեղեկացեալ 'ի Հոգւոյն սրբոյ զորպի- սութիւն խորհրդոյ շինուածոյ սորա, և զորքաղան 'ի սմա յօրինեալ կարգս, ընդ հրեշտակացն տօնելով զնաւակատիս սորա՝ երկնաւոր առաքինութեամբ 'ի սմա կրօնաւորեսցուք, փառաւորելով զՀայր և զՈրդի և զՍբ Հոգին յաւիտեանս. ամէն:

'ի տօնապատճառն, զկնի ձայ- նիցն՝ «Կրօնաւորեսցուք 'ի սմա», յարին և այս բանք: «Եւ որպէս 'ի դրախտին այ մերկ և մաքուր 'ի մե- ղացն ծածկութեից՝ եղիցուք աւա- զանին նը մաքրութեամբ զՔն զգե- ցեալ. 'ի փայտն կենաց մերձեա- ցուք՝ զանմահականն ճաշակելով զպտուղ. զանմահ փեսային զգա- լուստ և զխօսակցութիւն 'ի սմա ըն- կալցուք, և փառաւորեսցուք ըզ- Հայր և զՈրդի և զՍբ Հոգին յաւի- տեանս. ամէն»: Զայսոսիկ չեղաք 'ի կարգին՝ խիթալով, զի մի՛ ըստ սովորութեն հաւաքածոյ գրեանց տօնապատճառաց՝ գրիչք յե- րեանց պատուաստեալ իցեն զայլ և այլ բանս, որպէս և ուրեք ուրեք կարճեալ:

# Թ Է Ո Դ Ո Ր Ո Ս Ի

ՔՌԹԵՆԱՒՈՐԻ

## ՃԱՌՔ ՆՐՆՔ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

# ԹԷՈԴՈՐՈՍԻ

## ԸՆԴԴԷՄ

# ՄԱՅՐԱԳՈՒՄԱՑՈՅՆ

ԱՀԱ այժմ նորահրաշ տոչորեցաւ բոց, և ըզբեղմնաբեր տունկս բանական դրախտին, ճշմարտուող աւետարանին համբակս համրացուցանել ճարակի, և զքաջուղէշ և զկիսապատար հաւատոյն խայրիս թառամեցուցանել նկրտի։ Ձեզ ասեմ, որդիք լուսոյ, մի տարփայք խաւարի, և մի զարտուղիք յարքայական պողոտայէն. և մի սատնգանէք չորեքտաւեան աւետարանականաւանդ փողոցն՝ որք յերկնակառոյցն վերակոչեն քաղաք զձեզ, և վատամիտ[1] յուլութ̃ե վերջանայք ՚ի քաջամարտիկ նախահարցն արդարահրահանգ հետևանաց։

Քանզի ահա վերայայտնեցան այժմ ՚ի տանս Թորգոմայ նորածին դառնութ̃ե զարմք, օձտողք ճըշմարտութեանն. որք կաթարոսք արտաքուստ երևին դուարճունին զգեստօք, և խաչակիր մարմնակրութ̃բ, և ներկերպին գազանադէմք, խրթնազգեստք, խուժադողք, տգիտախողխողք, քծնաբանք, գաղտապատիրք, գողտրաբարբառք, ապաժուժախորհք, դժպայմանք։ Որք աննարսափելի մտօք և անձնահաճն-ճար իմաստիւք ահա յաւակնեալք յարանձգին ա-

[1] Յորջնականին վարդանիք ։

բոլորիցն արարող և համագոյից փրկող Բանն ա̃ծ. և 'ի թագէ տնօրինական կրիցն զմինն 'ի բաց կապտեն զակն հաւատոյն, որպէս զի զբոլորն՝ ուրասցին զփր-կանակն զկրաւութիւնս. կիսափրկուածն մարդոյն ա-ւադրելով մասնաւուք̃ դաւանիլ զփրկանակն՝ Բանի զտնօրինակրութի :

Արդ չարահաւեալ զխորհուրդս իւրեանց՝ սկզբնա-կանին մատենագրել այսպէս. Ոչ, ասեն, տկարութ̃ այլ կարողութ̃ յաղթեաց մարտի թշնամւոյն. իւրա-կան վկայեն բանքն. «Ոչ աւարի տուն սկայի, եթէ ոչ նախկին հզօրն կապի»: Իսկ եթէ այս ճշմարիտ է, յայտ է, ասեն, թէ անընդունակ է առաջթարգմա-նութիւն աւետարանին, որ յաղօթակայութ̃են զա-հաքրտնութ̃ին պատմեն ամենակարողն Բանին ա̃յ, և զ'ի հրեշտակէն քաջալերելն :

Օ՜ ինչ արդեօք այսպիսիքս կարծիցեն զիւրեանց ծայրակոտոր իմաստամն, ադէ ասասցեն մեզ մուրադիտ աղանդաւորքն : Մարմնակա՞ն կիրառութ̃քն փրկա-նակն Բանն վարակեալ հերքեաց զթշնամին մարդ-կան, թէ մերկ ա̃ծաբուն զօրութ̃քն. և թէ իւրական յատուկ բնութ̃քն՝ զի՞նչ պէտք մարդոյն զգեցման. որոյ կամակարող հրամանին ոչ ոք դիմակացիլ զօ-րէր : Ոչ զի ոչ զէական իւր բնութ̃ին 'ի փորձ համ-դիսի տուեալ, այլ զիւրական մարմինն յաղթող ախո-տի և ապականութե և մահու ցուցեալ. և մարմնա-կան կիրառութ̃քն պատրեալ զթշնամին՝ 'ի գործ պա-տերազմի կոչէր. զի իբրև առ Ադամն մատուցեալ 'ի փորձ՝ որպէս յա̃յ կործանեացի պարտեալ : Վասնզի ա̃ծական անուամբն պատրեալ զնախկին մարդն բա-րիստեացն թշնամին, սակս այսորիկ մարմնոյն զգեց-մամբ և յանձնառող զմարմնական կիրսն փրկանակն Բանն իրագործելով, խաբեալ զթշնամին պարտեալ ամաչեցոյց, և փրկեաց մարմնականօքն զմարմնա-կանսս :

Արդ 'ի վեր կառու զաչս մտաց սրտից առ նախա-ստեղծ մարդն. և որ ինչ յաղագս պատուիրազանցու-թեն պատուհասակրեցաւ՝ իմաց զիւրաքանչիւրսն : Իսկ նախիմաց լեր զտէրունական օրինադրութիւնս. Յամենայնում վայելեսցես'ի յաքնաքուսական անդոյն.

բայց առ այդ մի՛ հպեսցիս փայտ իմացական բարոյ 'ի չարոյ ։ Սատանայօք ծանի՛ր զերկիւղն սկիզբն ամենայն բարոյ և չարոյ , և որ ինչ 'ի մարդումն առքնացեալն էին կիրք՝ և զնոյնս և բարէստեղծողն ած պատուիրանադրեաց ։

Սրդ երկիւղ 'ի բնութին , և աներկիւղութի 'ի յանձնիշխան կամին իմնց ։ Յաղագս այսորիկ անդէն առձեռնեալ օրինապահումն , զիւրական հաճոյիցն բարեխնամողն այ առ նա մեղադիր զմարդոյն առնելոյ զկամս ։ Իսկ նորա ինքնիշխանութե թիկնադրեալ զերկիւղ օրինացն , ուստի մեծափառութեան ցանկացեալ՝ յանհպելին մերձենայր փայտ ապարասանաբար , և զեզաղէշադիտակ զխայրին կապտէր յաւակնազեղց ։ Իսկոյն 'ի ճաշակելն 'ի նախազգեցիկն արտամերկանայր 'ի փառացն ․ և ապա ներգործէր նմա յիշումն օրինադրին ․ Յորում աւուր ուտիցէք յիմացական խայրոյդ , 'ի նմին մեռանիջիք յաւուր ։

Սակս այսորիկ յամենագիտէն այ երեսաց հարթուցեալ սաղարթապատ եղանիւր ․ խօսափեալ ընդ յաւէտուղէշ տնգովքն հրաժարել ըղձանային 'ի մահահրամանն պատուհասողէն ։ Դարձեալ 'ի հեզահարցումն դատողին յուսակնեալ՝ անգիտակ զմի առդեօքն կարծեցին 'ի չհրամայեալ խայրին հպեցար ։ Տիրապատճառեալ աղեղնաբանէր , և զկողամարդն ցուցանէր առ 'ի խայրիոցն ճաշակման ։ Իսկ նա զարբանեակ չարին ։ Իսկ արդարադիտօղն ած զիւրականն վերածեաց զճշմարտութիւն ։ Աշտամբէր զկամաւոր սխալանմն նոցա և զապերախտութիւն ․ պատուհաս նախկին զցաւօքն ծնանիլն առաջատարփին ․ երկրորդ՝ զանխծադրութիւնն տայր ամայավայել բուսաբերին[1] ․ երրորդ՝ երկիւքն քրտնաբերքն ․ չորրորդ՝ մահադարձ հողանալն ։ Յորմէ սարսռացեալ վրդովէին ամենայն բանականացն սեռք ․ և հրճուանայր տիրակործ իշխանն մահուն ։

Իսկ անսկզբնագոյ ողորմութեցն ած բարեգորովեալ՝ 'ի վհատեալսն նկատէր նպաստատու օրինա-

1 Յօրինակին , [illegible] ։

դրութիւն փարատել զմոլորեալսն ։ Սերայայտեաց արս արդարս ․ առաքելոց մարգարէս ամենաքարոզս ․ մանկանեաց պատարագամանն զանազան հարուածովք ։ Յետ այսորիկ ամենայն վարժից՝ զանման 'ի տեսականութեան տարփայր մանկանացուխ փրկել ազգ, վայրենջեաց յանպարագրական ծոցոյ հօր էական Բանն անմանհական բնութեն, և անսկզբնական էութեներտարաւորեցաւ 'ի ծննդական 'ի դա կուսէն ․ և անպարառեղի բնութեան պարունակաւորեալ խնամենայ ժամանակաւ 'ի համբարական կնոջ ․ և զերկնայինն ոչ թողոյր թափուր անդի ․ սոսղեմատեալ միացաւ ընդ մարմնաւորեղծական բնութեան մարմնոյ, որպէս խնքն կամեցեալ գիտաց անճառաբար ։ Ոչ զիւրն ասեղծ բնութիւն, այլ զմերն առասանեղծեալ միացոյց իւր մարմնոյ։ Ոչ էրն փոխեաց, և ոչ զեղեալ շփոթեաց, այլ բնութիւն միացոյց ընդ մերումս, անքածանաբար միալով 'ի նմին ամեն Բանն բովանդակեալ զյարդարողին բնակիլն ։ Սորկեաց մարդկան ծնաւ 'ի կուսէն անապականաբար ․ և զդռունսն եղեալ զդատաւորնիք, իմն զծննդոց փրկող ․ և կիրքն անախտք պատուհասաւոր կրեցն ։

Ընկալ զքաղցն կարօտացելոյ դրախտին վայելեց յազուսին ․ զվաստակն՝ տարժանեցելոյ երկան, և տարփողի առաջինն անաշխատելի կենացն հանգիստ ․ զծարաւն՝ պապակելոյ ըղձմանն աղեղաբուղխ աղբերն արբումն ․ զքիրտն՝ անիծիցն քրտանց բարձումն ․ զերկիւղն՝ մահուանն երկիւղին ազատումն ․ զչարչարանսն՝ չարչարանացն փրկումն ․ զմահն՝ բարձողի կենացն փայտի՝ անմահութիւն ․ զյարութիւն՝ սկզբանն կարոտեալ[1] լինելութեան դարձումն ․ զհամբարձումն՝ զկնի պահպանութեան պատուիրանին խոստմանն ծանօթութեանն ։

Դարձեալ իմնից 'ի մեզ երախտագործեալ փրկանակն Բանին զմարդն եղանիլ ։ Նա զի մի անանք ափտակապէս վարկանիցին զմարդեղութիւն նորա, և ոմանք՝ առնի մարդ ծնանիլ 'ի կնոջէ, յայտ առնէ՝ զճշմարիտ լինել մարդ 'ի կուսէն ամենայն՝ քացայայտելով զխոսա-

1 Յօրինակին պյարութէն . . . խափէալ ։

ցուք, ընկալեալ զարգացումն հասակի՝ մարդ վերայայտիւր մեզ զինքն։ Ատեցող զչար՝ տղայն, և ընտրող զբարին ըստ Եսայեայ, վկայէ Ած ճշմարիտ գոլ. քարոզիւր դիտաւորութեամբ լինել զՄարկիոնի սանձեաց զանհերասանակ բերանն, որ առաջօքն դաւանէր զլինելն մարդ։ Իսկ ՚ի կուսական ՚ի ստեացն ցնդել զկաթն՝ զՄանոստացւոյն ցամաքեցոյց զգժընդակաբարբառ զլեզուն. որ շնորհագործ որդի անուանէր, և ոչ զԲանն Ած՝ մարդ լեալ դաւանէր։

Քաղցեալ ՚ի փորձարկութենէ անապատին, ստուգապէս զինքն վերայայտելով մարդ։ Փորձպիտին հարցագիտութեան կոչաւորութեան բացայայտելով զոչ իմացականն գիտակ առնել զնա, և զնախապատիւն ամաչեցուցանել յոյս. որ զառ ՚ի Բանէն կենագործութիւն ոչ գիտէր մահացելումն լինել. այլ ճաշակմանն մահածութեամբ միայն հրճուանայր սխալանացն պատրիչ։

Վաստակեցաւ իսկապէս. ինքն գիտէ՝ փորձագործուք վկայեալ զեղանիլ վասն մեր մարդ։ Եւ զի զնա զնոյն՝ Ած ծանիցուք, տիրաբանեալ ասէր, առ իս հետեւեցարուք, տաժանեալքդ, և ես հանգուցից զձեզ։

Ծարաւեցաւ արդարապէս. և ինքն գիտէ մերով պիտաւորութեամբն ծանուցանել զինքն գոլ մարդ ճշմարիտ։ Եւ զի զնա անմահութեան իմասցուք աղբիւր, ծարաւականացն պարգևել առաջ կենդանի ջուր, և վտակաւոր աղբերց անմահականաց ՚ի նայն հաւատացելոց իբրև ՚ի ճշմարիտն Ած։

Տրտմեցաւ ճշմարտապէս, որպէս ինքն գիտէ, կատարեալ վկայելով զինքն անօրինացեալ, բանական ունելով զոգի և զմիտս։ Եւ զի զկիսամարդն դաւանողաց կարկեաց զբերանն. և զնախաստեղծին մահաժառանգութեանն եբարձ զսուգ։ Երկեաւ ՚ի մահուանէ, որպէս ինքն գիտէ, ճշմարիտ յայտնելով մեզ զինքն եղանիլ մարդ, և զԱնիոնեցոցն ընդդեբերանեաց զլեզուս. որք ստուերականութեամբ նաւթձեն զմարդեղութին նորին փրկականին Բանի։

Յայսմ տեղւոջ ընդդիմեալ գիմամարդք ճշմարտութեանն՝ ճառ արկեալ յեղանակեն. Երկիւղ, ասեն, ոչ է ՚ի սկզբնեղութէ բնաւորեալ, և ոչ է Այ գործած,

այլ վերջապարուկ ներգործեալ յարանայ ախտ։ Մար-մով որոճողք սուտութեանն, զմէ՞ մոլորիք 'ի բուրբեանն արարողէ, և զսահմանեալ ճառադրութիւնս վերա-վարից գործականութեան փութայք կատարել. քանզի որպէս ձեռունտու վկայեն ճառք, ախտիւ ախուք։ Այլ մով յամառողք, 'ի նախադասութեան իմացա-բուք բարեգոյակ ստեղծեալ կամս և անձնիշխանա-կանս, ըստ նմին բնաւորեալ և երկիւղ տիրափառա-կանն։

Արդ որպէս յարդարընկալ կամացն խիղճմտու-թեան արտաքսանցեաց, նմանաւանդ և մահընկալ պատուհասիւ՝ բնաւորականաւն զարհուրեցաւ եր-կիւղիւ։ «Քանզի ուր եկամուտ ներգործի երկիւղ, անդ արութիւն ոչ անուանի։ Այսն զի քաջութիւն է՝ զբնաւորականսն փոխադործութիւն պարտել, զայն՝ որ իւր կամաւորութիւն ըստ բարւոյն բնացաւ։

Ուստի եթէ ոչ ըստ բնութեան առագոյացեալ էր եր-կիւղն, զիա՞րդ անբնականաւն զարհուրէր. կամ որ-պէս բարեստեղծողն ած՝ զոչն ընդունակ՝ պատուհա-սակիծ առնէր, թէ «Երկերուք 'ի մնէ այ ձերմէ»։ Ապէ զարհուրեցո՛ դու զառանց, վերդովեցո՛ զգետս, հայցեա՛ց բարեգործունն առ 'ի նոցանէ. յայտ է թէ ոչ հնազանդին. վասն զի ոչ է 'ի նոսա բնաւորեալ յասացեալսդ։ Արդ իմա՛ զերկիւղն բարւոյ առիթ-լեալ։ Երկիւղ 'ի տեառնէ պատիւ մն. երկիւղ 'ի մահուանէ՝ արդարութե գործարան։ Բայց մի խնճ ասա զանյուսութե ներածցես զերկիւղ, ով դու, այլ զբնաւորականն։

Քանզի յերկաւուր նախադասութիւն տառմեաց մե-բականցաղիլ 'ի փրկանաւն Բանն։ Արդ եթէ ոչ եր-կեաւ առեցելոյն, յայտ է թէ և ոչ մարդացաւ. որ-պէս Մանիքեցիքն վկայեն։ Իսկ եթէ 'ի նախանցե-լոյդ ոչ յանձնառեաց, ապա ոչ ունէր բանական ոգի. որպէս կիստադաւանին ասաց Ապաւղինար դաւադիկեցին Պարձեալ՝ թէ ախտ ներածես վարկանել յերկիւղն, սակս էր ոչ 'ի քաղցն և 'ի ծարաւն և յընդունելու կերակրոցն նոյնպէս վարկանիցիս. քանզի մեղ նման քաղցեալքն և ծարաւիքն ըստ հաշանօք անկեալ աժգունին, և պակասին առ 'ի նոցանէն ուժեղու-

թիւնքն . . . ¹ իսկ առլցեալքն մարմնական պիտոյիւքն՝ առոգացեալք յօրանան, և տօչորի 'ի նոսա բոց ախտիցն : Իսկ փրկանակն Բանի ոչ այսպէս կիրք . քանզի յաղագս մարմնաւորութեն բացայայտելով զինքն գոլ ճշմարիտ մարդ, զնմանկանսն մեր առաջի արկեալ՝ քաղցեաւ և ծարաւեցաւ, անընկալ 'ի հաշանաց և մաքուր 'ի մեղաց՝ ա̃ծն Բանն միաւորեցելովն . քանզի ոչ գործեաց զանօրէնութի, պիտառոցէ մարգարէն, և նենգութի ոչ գոյ 'ի շրթունս նորա . այսու տարացուցիւ իմացուք զերկիւղն :

Արդ ամենեցուն բացայայտ է, եթէ մահ յանցանաց ընձեռեցաւ պատուհաս . իսկ ա̃ծն [2] Բանի ոչ ինչ գործեալ դատապարտական, սակս էր մեռաւ, եթէ ոչ մահուամբն իւրով մահուն գործեաց մահ : Դարձեալ 'ի մերում մահուանն ապականութի և եղծումն գործանի . իսկ ա̃ծն Բանն միաւորեցելովն մահացեալ, անապականն և անմահ մնաց նովին մարմնովն : Վասնզի զմեռանիլն ստուգապէս՝ հիւսանիլն կտաւովն և 'ի տապանի ներծածկիլն վկայեն ճշմարտութեն . [3] և 'ի զինահարիլն թխումն արեանն՝ պիտառոցէ ըղկենդանիլն մնալ : Վասնզի ոչ զէականն իւր բնութի, այլ զանօրինեալն արտափչեաց ոգի . անքակ և անբաժին մնացեալ 'ի բանական ոգւոյն ա̃ծն Բանն 'ի նմին մարմնի բնութեն :

Նզէ՛ տասացեն մեզ անձնահանձարքն, և ճշմարտութեն անիմայք . երկիւղ 'ի հրանիւթ բնութեն անմարմնին հոգեղինացն բնաբար առգոյացեալ է, եթէ վերջաքուսակ ախտակրին . և եթէ ոչ բնաբար, զիա՞րդ անդրլակի փառաւորեն զէականն ա̃ծ անընդալքն [4] երկիւղի: Ապա եթէ 'ի գոյեղուէն առլցեալ ունին զերկիւղն, ամենից բացայայտ է՝ թէ անախտք են : Սուտի ամենայն անկարութեն օկիզմ արտայայտեցաւ աներկիւղութիւն, որում նախկին քանսարկուլին պիտառոցէ անկումն, և երկրորդ՝ նախծին մարդոյն : Իսկ եթէ զառ 'ի բարւոյ միայն վարկանիւք ունել զերկիւղն, նովիմբ իմացուք և զառ 'ի չարչա-

1 Ցօրին . բառ մի անընթեռնլի :
2 Ցօրին . յա̃ծն :
3 Ցօրին . ճշմարտութեն :
4 Ցօրինակին անընգփն :

բանացն ։ Այսմ այսորիկ արուեստին անուանի քաղցիւ քաղցի համբերել, և երկիւղիւ երկիւղի ։

Ոչ զարհուրի, ասեն, զերկրնկալ մանուկ . յայտ է ասեն, թէ եկամուտ բաղկանայ երկիւղ ։ Ո՛ր քեզ ասեմ, որ զծաղրականսդ բարբառիս . նա բանաւորութեան ոչ ապաքէն ընդ սկզբնեղութեան առնացեալ է 'ի մարդումն . սակայն թերահասակ մարմնոյ գոյացութեն ոչ զօրեղանայ քնարգել բան, այլ զխժական բառ երգէ ձայն . Նմանապէս բաղկացեալ իմացիս զերկիւղ . և մի յաւէտաղնիւղաջեալ զանգիրման բարբառելով յախմարացն յագաչմունս ։ Ոչ ոք տաժանեալ յերկս՝ արիւն վիժաքրանի . և եթէ մարդումն, ասեն, ոչ բաղկանայ, զիա՞րդ արդեօք զՅոհ Արդուսին այ իշխեսցէ ոք զայս բերանաբացել ։ Արդ, խօլացեալդ 'ի չարափառութեանդ, յուսմ՞ լուար զանքնակ գործոյդ լուր . զլուումն աւետարանին որպէս արեան առաց տարացուցաբանութեն քիրտն, այլ ոչ թօրումն անզինահար արեան ։

Արդ կաճառք բանիցն յուզեալ՝ դարձեալ վիճաբանին ։ Նշաւակի ճառագրեալ աւետարանական տառիցն պատմութիւք անմիաբան 'ի միմեանց գտան . յորոց զմին ընտրեալ զօվեսցուք, և զմիւսն հերքեալ արտաքսեսցուք 'ի սրբումն կոչարանէ ։ Վասնզի բազմերգելին Գրիգոր առաքելաքարոզ նահատակն Քրի զամենայն աւետարանական պիտառութեան ճառագրեաց՝ զոր ինչ յաղագս այ Բանի [1] անօրինական կիրառութի պիտառէր . իսկ զահաքրանիլն և ոչ յատուկ ձայնիւ յիշատակեաց . ուստի յայտ է, ասեն, եթէ հնապատմութեն աւետարանին ոչ է ընդունակ ։ Նաեթէ ոք քան զնախաքարոզն Գրիգոր խորհեսցի լինել իմաստուն, և այլ ինչ նորաձևեսցէ ճառել, այն պիտին դատապարտեալ է ասեն ։

Արդ ո՛վ խաբողորսակ թշնամիք, ներբողելով ձեր զճշմարտաքարոզ վկայն Քրի զլոգներջանիկն Գրիգոր՝ սրտաղաղակ բանիւ սփածանել մերկութեն ծածկոյթ, դովլին այդու բանիւ՝ ցուցից յայլումն տեղւոջ բամբասանս յարդարեալ ձեր նախադրուատին Գրի-

[1] Յօրինակին այ Բան ։

փոխ, այլ ոչ գողեալ. քանզի որթոդոքսական վերնադիտօղ քննագէտ նախահայրքն դաւանորեալք ՚ի Նիկիապոլիս՝ կանոնադրեցին երկակի հնգեակ[1] և եղակի քառեակ թուով միայն՝ ՚ի սրբունն կոչարանին ընթեռնուլ թուղթս զմեծաքարոզ առաքելոյն Պաւղոսի. և ՚ի նորապատում գրութեն զնոյն շարագրութիւն վերառեալ է։ Իսկ բարեդրուատելն Գրիգոր զառ ՚ի հարցն լուեալն և ոչ մակադրեալ ՚ի նոր թարգմանութիւս, վկայութիւն հաւաստեաց, թէ Նորէն իշխանն իբրև ծածանեալն կամեցաւ, ասէ մաքուր Սուքեալն, զամենեսին ընդ մեղօք գրաւեաց. և այս ՚ի հնապատումն տառսն վերառեալ է, այլ ոչ ՚ի նորապատում շարագրութեն։

Արդ եթէ սակս ոչ գծագրումն[2] ՚ի նորաբեր թարգմանութեցն հնագուն աւետարանին իբր զոչ ճշմարիտ ՚ի բաց ընկեցեալ մերժեսցի յեկեղեցւոյ, ընդնմին խոտեալ բամբասի և մեծ մակադիտօղն Գրիգոր սուտերաբանութ̃ դրուատեալն ՚ի ձէնջ։ Ապա եթէ ճշմարտապատումն Գրիգոր ոչ ըստ համօրէն աւետարանական կարգաբանութեն գլխոցն բաղդատեալ շարագրեաց, այլ յատուկ պարզմտութ̃ ըստ տխմարացն լսելութ̃ բաւել զառժամայն պիտոյիցն սակաւամանութ̃ վկայութիւս առաջի եդեալ՝ մարգարէական տառիւք հաստատէր, արդ զմէ՞ անփայ լինիք զնմանէ պատճառադրութ̃։ Ահա՛ ՚ի յիշումն եկեսցէ ձեզ իսկապատում տարմաբանիցն գործադրութիւնք՝ զոր ինչ յաղագս նորին բանի հետևեալ են։

Աստի նախկին յոլովից գոլով հայր ճշմարտասէր անձանց՝ տէր Բարսիլիոս կապադովկացի՝ ոչ ՚ի վնասնդ ինչ ակամայից ճառեալ, այլ գեր ՚ի վերոյ ղաւոդիկեցոյն երթալ Ապողինարի կշտամբէր, որ կիսամանութ̃ն դաւանէր զանօրէնութ̃ փրկական Բանի. Այս զչարչարանսն, ասէ, և զտրտմութ̃ն և զզօփալն, և որ ինչ միանգամ սոցին կցուրդ յաւետարանականսն կայ, ա̃յ Բանին ասեմ. և ոչ ընուե̃ ածութ̃ն, այլ միաւորութ̃ն։

1 Յօրինակին Եւաղէ հնգէակ։ 2 Յօրինակին գծագրութէն.

Սորին զուգատողակից և որ՝ մականունն Պերիգոր անձա-բանին արժանաւորեցաւ կոչել, առ եւնոմիացին ճա-ռեալ ասաց. Օխսանէն և զզարհուրելին յաղագս քո թափեցելոյն իմոյ անօրինաբար: Պարձեալ յերկակե-ակի յեզրում ճառի զամենայն անօրինականոն լու-ծականութիւ յեղանակեալ՝ յեզակին հնգետասան թուականութեանցն ազատաբանեալ ասաց համառօ-տաբար, թէ Իսւ քրտնեն արեան ցուցականութիւ յա-ղագս մեր չարչարեցելոյն ծանեբուք: Պարձեալ 'ի յաստուածայայտնութեն ճառին մակադրեալ ասաց. Ըստ որում քաղցեաւն և վաստակեցաւն և արտա-սուեաց և երկեաւն օրինօք մարմնոյ:

Սմին համաձայն և երջանիկն Յոհան Ներբողա-նունն ոսկեբերան՝ կարգաւորութիւ զաւետարանա-կան թուեալ բանն. Որպէս զի մի կարծեօք անուա-նեսցի մարդեղութիւն յանձն Բանի, սակս այսորիկ ստուգապէս աղօթէր առ Հայր 'ի կոհակին ձիթե-նեաց. և քրտնեալ թուրէր յորդահոսակ առաւս որ-պէս ապացուցի արեան իջման:

Համաձայնակից գոլ սմա և արդարածներն Նյու-փան կիպրացի. Մարմնաւորապէս իմացարուք, ասէ, զահաքրտնութիւն, և մի սուտ հոգեպէս. իսկ զառ 'ի հրեշտակէն զօրանալն՝ զմովսէսականն իմացարուք աւարտել զօրհներգական մարգարէութիւնն, երկրր-պագել նմա Որդւոյն այ, և ուժեղացուցանել զնա հրեշտակացն այն: Զանուանական զօրութիւն վաս-մաբանութիւ փառաւորել՝ մաքուր սպասաւորաց զօ-րութի անուանեաց, զնորայսն գովաբանել 'ի վերայ մահու զախրականն [2], և զդժոխոցն լուծանել զպե-տութիւն.

Որդ դու, ով յօդաբան և զրայահօր [3], թէպ դե-րաթուեար մոտացաթե հանճարով քան զերկնագու-շակ [4] նախահարսն, որք հիմունք եկեղեցւոյ և խա-րիսխք ճշմարտուե անուանեցան. որոց պահապանք՝ հրեշտակք, և զօրավար՝ ինքն այն. որք վկայեալք

1 Յօրին. զուգատողացին և մականուան: 3 Յօրինակին զբացահօր:
2 Յօրինակին 'ի վերայ մահու զախա-կանն: 4 Յօրինակին զերկնագունչ:

յաղագս Քրիստոսի նահատակեալք , գլխատա-ռեցան յառաքելական աստիճանին ։ Այամ զրէ՞ թէ եօթն [1] հարիւր ամ լինեալ յետ չարչարանաց Որդւոյն աստուծոյ . և այսքան ժամանակք յանդիտութեան գնացին բոլոր մանկունք եկեղեցւոյ . և միայն արդ եաս 'ի վախճան ժամանակաց նորուսք դուք և նորա-ծանք գտայք ճշմարտութեանն, երկրորդ առաքե-նարիք . որ նորաձայն աւանդութեամբք նորածին բուսուցէք արմատոց դառնութեան փուշս հրաձա-րակ անշիջանողոր բոցոյն ։

Արդ հի՞մ վարիք զարտուղի խորհրդովդ . եկա՛յք ընդ մեզ խոստովանեսցուք զան 'ի կուսէն ծնեալն ա̃ծն Բանն՝ ճշմարիտ առեալ մարմին անփոփոխ աս-տուածութեամբ, անյեղյեղուկ միութեամբ, անորիշ ա̃ծու-թեամբ, և եղակի դէմ . անբաժ 'ի կրից, անապական մարմնով, մաքուր 'ի մեղաց, անեղծ 'ի չարչարանս, և չարչարեալ իսկապէս ։ Այլ անմահ բնութեամբ, և մե-ռաւ ճշմարիտ մերունական մարմնովն . աներկիւղա-կան ա̃ծութեամբ, և տրտմութեամբ զանգիտեալ 'ի կամա-ւոր չարչարանսն մերառեցելով հոգւովն ։ Աղբիւր կենաց գոլով բնութեամբ, և ծարաւեալ ստուգապէս մերառեալ մարմնովն ։ Բոլորից արարող, և ոչ վա-տակեալ ըստ մարդարէին . և 'ի միօրեայ պողոտայնոյ սամարացոց վաստակեալ հանգչի մերատոհմակ տե-սակաւն ։

Համագոյից եղելութեան անկարօտ դարմա-նից, և քաղցեաւ ստուգապէս մերակերպ առեցե-լովն ։ Անտարօղ և անբովանդակելի բնութեամբն, և 'ի գիրկս բովանդակեալ մերահասակ տղայութեամբն ։ Ան-երևոյթ անսկզբնութեամբ, երևեցաւ մերագոյակ մար-մնովն . անեղ անըմբռնելի մշտնջենաւորութեամբ, սկիզբն առեալ մարդեղութեամբ, և ըմբռնեցաւ մերանիւթ բը-նութեամբ ։ Սա ոչ պակաս 'ի մերոց կրիցս , և անախտ . սա ոչ նուազ ա̃ծութեամբն , և անմեկին անօրինեալ բը-նութեամբ . սա ամենից կամաւորութեամբ համբերեալ տա-րաւ , զի բոլորումն գործեսցէ փրկութիւն մարդոյն ։ Զսորա զա̃ծականն դաւանեսցուք բնութեամբ, և

1 Յօրինակին եդեալ էր Ջ . փոխանակ դնելոյ Չ ։

զանօրինականս կամաւոր յանձնառութեամբ ։ Ո սա բարեբանեսցուք գոհացողական երգասողութեամբ ։ Փառք Հօր էականի , որ զմիածինն իւր առաքեաց 'ի փրկութիւն աշխարհի . փառք համագոյակցին , որ վ̃ն մեր մարմնացաւ . փառք անսկզբնակից Հոգւոյն , որ ետ զա̃ծգիտութիւն որդւոց մարդկան ։ Փառք միասնական 'ի Երրորդութեան յաւիտեանս . ամէն ։

# ՆՈՐԻՆ ՆԻՒՍԱՑՒՈՅՆ

# Թ Է Ո Դ Ո Ր Ո Ս Ի

## ՃԳՆԱՒՈՐ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ
## ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԻ

### ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՍՈՒՐԲ ԽԱՉՆ ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ
### ԵՒ Ի ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ
### ՄԵՐՈՅ ԵՒ ՓՐԿՉԻՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

Օ ԱՀԱՒՈՐ և զանքննելի խորհուրդ անհասու, թէ արփիահրաշ ա̃ծայինն ՚ի նշանիս, ով ա̃ծասէրքդ, դուն ինչ ողական բանիւք արտայայտեալ ներբողական և պանծալի ձայնողաց խորհրդով, հոգեպարգև ա̃ծիմաստ շնորհօք կենդանագրելով, համառօտաբար հրատարակեցիք յոքնօրինական յուսով ենթադրութ̃ք ՚ի Ք̃ս։ Այլ կայք ամենեքեան ուղղափառ հաւատով և ուղղիւ ստորասացութ̃ք երկիր պագցուք գերահրաշ ա̃ծայինն սուրբ խաչիս, ՚ի սմա բևեռեցելոյն բազկատարած չարամերձութ̃ք և անսաակի անտեսութ̃ե էական բնութ̃ե Բանին ա̃յ։

Որ զնախադասական ապացուցութեանցն զմակերեւութ̃ բաղադրեալ հոգիաներկ և մարմնաքնար երգողին, ՚ի վաղնջուց հետէ հաւեալ ձայնէր՝ զսերկածին էակն զ՚ի վերայ փայտին բաղադրական գերածութ̃ն[1] արտաշնչացեալ անտղելի ՚ինքնակայութ̃ն, ձիրելով ՚ի վերայ հեթանոսաց նշան և լոյս երեսաց, անստուերական իրակեալ ներգործիչ ա̃ծ ելով Բանին։ Ոչ իբր որում պատուական գոյից նիւթից երկնայնոցն առեալ՝ առ մեզ ժամանեաց զհաւաս-

1 Յօրին. գարածութ̃ն։

տութեն զենթագրուն զենանիլ 'ի վերայ մահաբեր փայտին՝ առթելով զնոյն փրկութ օձանս[1], զնիշ գերապանծ փայտին գիտութե, որցեալ յանապակ և յանաւշակ մշանջենաւոր և յանվախճան ուրախութենս երկնաթողիչ հաւատով 'ի Ք՟Ս, այլ 'ի վեր քան զսեռական էիցն գերազանցեալ վսամական վեհագունիցն իմանալի մակացութեց իմաստիցն՝ յանպարագրելի և յանպարիմանալի ածային խորոցն ելով զաշնաւորութեամ ընդ փայտին սևեռմամբ, զթշնամիս իւր զմեզ՝ համայն իսկ և զամենայն աշխարհ յինքեան քաղարկեալ, արդահատութն տեսողական տաուիքն առատեալ զնոյն, անանջատելի միաւորութն առկացոյց առաջի Հօր :

Այլ զարտամերկացեալն 'ի լուսաւոր այ ձեռացն ստեղծեցելումն աներկիւղական բնութ և անձնիշխանական կամօքն՝ ածական անուամբն պատրեալ բարիատեաց և ռեմական թշնամւոյն, 'ի ձեռն մերակերող առեցելոյ մարմնոյ զգեցմամբն՝ ներգործելով փրկական Բանին, կապտեալ ամաչեցոյց զհակառակամարտն, և փրկեաց ածախառն խայրէն 'ի վերայ փայտին ախտական առքերութն՝ պատապարեալ միշտ յարատևակ ընդ հրաբուն հոյլսն՝ կաճառաձեւմ էիցն քազմադասելոցն :

Այլ ես ընդ ես վերտարեալ սևեռագոյն և մակասիր ենթակացութն, տիպատեսակ անշփոթելի բնութ ածութեն մակադրեալ 'ի քառեակ փայտն, զանօրինեալն արտաշնչեաց հոգի • զինահարեալն 'ի տիգաբուխ և վտակահոս կենդանութեն, 'ի մեզ գոլով աղբերքն ջրոյ խաղացելոյ յաւիտենին կենդանութե :

Բանիզի անշնչացեալ մարմինն՝ ստուգապէս աիտառութն կենդանատեսակ ածացեալ մարմնովն, և երկախումբ ներմարդութն, դիտապետական իշխանութն 'ի քացորոշութէն ազատ գոլով 'ի մեռեալս՝ սակս կարծեալ երկիւղին մահու ունակութե, ընդ մեզ եղեալ ած Բանին, ինքն անջատ որոշմամբ յերկուս տեղիս, արտաքերեալ յորջորջմամբ, և առտուեալ զանձն 'ի ձեռս Հօր • վասն զի իւր էր անտեսա

1 Ցորենակին [illegible] :

կամին՝ ընդ որում անշփոթ բնաբար ներմիացեալ և խառնեալ շարայարելութիւն ըստ որում բանի ։ Վ Բանզի անյեղօրէն և անքատակ [1] է Ածահրաշ ներանձնաւոր մարմնին, և տղաբար կամաւոր բովանդակի և չափի ։

Զնոյն պատկանեալ Տէր յաւետարանին ասէր, “Իշխանութիւն ունիմ առնուլ զանձն իմ, և իշխանութիւն ունիմ միւս անգամ առնուլ ,,։ Որով և անդ ախտակրեալ՝ չնչոյն առ՛ի դժոխաբնակ մարդկան շունչսն հիւսանի Է մեզ առասնակաց, և 'ի տապանի ներծածկել մարմնով, 'ի մարմնածածուկ ներքնագոյն դժոխս, վերակենդանեալ կենդանացոյց միահաղոյն զամենեսեան իջմամբ առ դարապետական արգելեալ հոգիսն. և առ հ գործեալ՝ 'ի նմա 'ի ձեռն լուսածին գերապանծ նշխարին ։ Յորում լուսաթուիչ սերոբէին 'ի գիշերին այն պատահեալ կանանցն, վերաբերէր առ նոսա քաղցրութեամբ զխաչեցելոյն աւետով, “Զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս ,,, որ բնաբար առատութեամբ ձիրեաց զկենդանութիւն մեզ էակացս ։

Որոց և խայտացեալք ընդ ընծայական շնորհադրուատ բացատրութիւն զուարթնոյն, առ ընդհատ եկաւորութեամբ խաչեցելոյն զյարուէ. ուստի և զնոյն իսկ զդաւանութեան ունակութիւն անվթար և սուրբ հաւատով ուրցեալ [3] յամծ Ճշմարիտ, աստանօր ոգեալ արտասանեցից արփիահրաշ և քրիստոսազարդ նք նշանիս ։

Ով Ճշմարիտ ածային տունկ, արեւելաբոյս արմատ ընծիղեալ սաղարթածաղիկ և կենդանատեսակ զօրութիւն, իմանալի պտուղ, անքան կենդանի, քառաթև նշան, անբարբառ բարեխօս դքէն կախեցելոյ Բանին Այ ։ Որ փոխանակ նախկի տնկոյն, որում սաղարթախիտ պտղոյն վայելչացեալ, չքնաղազարդտեսակաւն գունեալ, զարմանագեղ և առոյգ գեղեցկութե տենչալի փափաքմամբն, հաճոյ և ախորժելի առ 'ի տարփումն տեսողացն հայեցուածոյն [4] յօրինեալ, յաւետաբեր չեշտակի արգահատութեամբ զկենդութի

1 Յօրինակին անփական ։
2 Յօրինակին ախփակէալ ։
3 Յօրինակին ուրաղէալ ։
4 Յօրինակին հայցուածոյն ։

տութեցեր, դաւանութիւնաբեր եղով բուժկութեան, առագիտաբար դաւաղութեամբ պատիր պտղոմն կաղա-կարծելի բաժանմութեամբն, անմիացեալ տարաադ-մամբն արտակացելոցն յամենաստեղծ և յանձնաւելի փառաց ա̃ծութեան:

Ո՛վ ճշմարիտ ա̃ծային տունկ, նախաբոյս և ինք-նագոյակ կառուցմամբ պատկանեալ, սերեկ պտուղ, և յետածին ժամանակաւ ձևացեալ քառատեսակ 'որ նշան, և անբաքբաւ բարեխօս զքեն հեղուսելոյ ան-մահ Բանին այ̃: Որ իբր 'ի ձեռն միոյ մահու' միահա-ղոյն բաղձաձաբար անմահ տնացեալ' խաւարամութ և նսեմացեալ շամանդաղութեամբ աղջամղջով ստուե-րամածեալ, փանաքի անքատութեամբ տարալածեալ, տարապատկանութեամբ յամենատեսակ արարչատուր փա-ռաւորութեան ունակ եղեալ յանցանաց նախահօրն, իսկապէս և զնոյն կերպատեսակ նմանութիւն ստա-ցեալ զմահացելոյ ծառայից անանջատելի սիրոյն, բոլոր 'ի յԵրրորդութեն և անորիշ 'ի ներմարդութեն' յարահիւսեալ 'ի վերայ քո մեռանի անտղաբար ար-տաշնչութեամբ կենդանին' կենդանութի շնորհելով բնա-ւին եղակի [1] բնութեամբ ա̃ծութեամբ:

Ո՛վ ճշմարիտ ա̃ծային տունկ, գերադրաքական և ի-մանալի տնկագործութեան խորհրդոյն ապաստովք, խո-րութի և անխառնութ քառաթև 'որ նշան, և ան-բաքբաւ բարեխօս զքեն բևեռեցելոյն անմահ Բանին այ̃. որ նախ քան զբուսանել փայտին 'ի մէջ խորացե-լոյ աղխափակեալ դրախտին հրասուրեալ սուսերօքն' 'ի սրոբէապահ բոցեղինացն պարունակեալ ճանապարհ ծառոյն կենաց, յաւետաբար միշտ և գերադոյնս ինքն զքեզ տեսանելով, անդուստ ամենատես աչաց տեսական Բանին այ̃, և անուանեալ ծառ կենաց, առբերելով 'ի քեզ պտուղ կենդանութեամբ' անորակ ներմարդութեան միաւորեալ բնութի ա̃ծութեան մեռա-նիւր զմահ վասն մեղաց, սակս ա̃ծագործելով զմեզ. զի թէպէտ և համարձակից [2] այնր տնկոյն և անստուգ

1 Իմա՛, եզակին' անձնման' ան-պատմելի, կամ միաւորեալ 'ի մի անձն ընդ. նախաձաւեալ կերպա-տեսակ մարդկութեն:

2 Յօրէն . համաբնակից:

փայտին առասնակայ առկոչեցեալ, յորում պատ-
Ճառք մեղացն 'ի ձեռն պատիր պտղոյն Ճաշակմանն
եղև մահու առիթ. իսկ որպէս և այնր իբրու ելոյ
ահաւոր զօրութեն բևեռեցելոյն հեղուսեալ 'ի վերայ
քո Ճշմարիտ կեանք և պատՃառք փրկութե, արտա-
քսեցեր զյաւիտենական արդարութեան մշտնջենա-
ւորութեամբ Հօր յաւիտենից։

Ո՛վ սքանչելի փայտ, և ամենազարդ տապան, խնա-
մալի խորհուրդ ծածկեալ, քառաթև սուրբ նշան,
և սկիզբն սևեռից սերմանն մարմնացեալ անմահ Բա-
նին Այ. որ զկենդանանին անմահ Բանին ամ եղով էակա-
նութեամբ՝ սպասաւորեալ 'ի քեզ յառաջագոյն, այն որ
խօսէրն առ 'ի յօրինադրել զնիւթական արկածեալ
օրէնն, զկենդանաբեր տապանին զփայտն, վայրանցեալ
էր բարձր և 'ի վերայ գեղման, և շարացեալ անօրի-
նաբար բաղդատութեամբ անտղելի և անՃառելի միաւո-
րութեան, հեղուսեալ ընդ քեզ իւրով գերակ[1] բար-
ձրութեամբ։ Պետրագոյնս 'ի ծփական և 'ի ծովացեալ
ալեաց մեղաց զ'ի քեզ օժանդակեալ ոգւոյն ողա-
գնաց սլացութեամբ թեթևս թռուցեալ՝ մերձ առ եր-
կինս վերաբերեցեր, ապականելով զհնութեն ծերութե
եղծման ազանց, սուզանելով յանդունդս կորստեան
քանակի կասմանն. յորում զմաքուր և զմՃիտ դուռն
տէրունոյն բերանացուցեալ, այս ինքն զտիգահարեալն
'ի զինուորէն, իբրու ըստ իմանալի բացելոյ ձեղուանն,
մեծաբարբառ գոչմամբն 'ի ձեռն Հօր աւանդեաց
զՀոգին. յոյժ տպաւորագոյն քառակութեամբն փո-
խանակ աղաւնոյն, կենդանատաղարթ դալարութեամբն
շղաքերի, զընտանեգոյն կարութիւնն, հանդէտ և
հաղորդ երևեալ Հոգին Այ. անձամբ ընդ անձինս՝
իբր 'ի տապանի պահանութեամբ ոգւոյն, այս ինքն ար-
գելելոյն 'ի դարապետացն դժոխոց, զխնդութեն առ-
թելով հրախառն արեան 'ի քեզ ցայտեցելոյ խաղա-
ղագործիցէ յերկինս և յերկրի։

Ո՛վ սքանչելի սուրբ փայտ, ամենակերտ և իմանալի
սեղան, երկնակառոյց յառաջաբերութեան անմահ
զենման Որդւոյն Այ կամաւոր պատարագին. վասն զի

1 Յօրին. գէնակ։

'ի քեզ տեսանեմ զա̃ծ Գառն մարմնով բաղկացութե̃ն գոյացեալ, փոխանակ Իսահակայ արտաշարեալ [1] ընդ-փայտին ենթադրութե̃. հնազանդ Հօր և ծառայ մերաստոհմ կերպիւ, և առաջնորդ յերկնաւոր ուրախութեցն բնակութե̃ն. քանզի բևեռեալ իբր 'ի սեղանն 'ի վերայ քո փոխանակ անբան կենդանւոյն մատուցեալ ողջակէզ անարատ և զենումն անբիծ, ոչ զմի անձն Իսահակայ, այլ համօրէն իսկ զամենայն աշխարհս փրկագործեալ կենդանացուցեր ։

Ո՜վ սքանչելի սուրբ փայտ, ա̃ծազարդեալ իմանալի սանդուխք յերկրէ յերկինս բարձրացեալ զնոյն ինքն զՔ̃ս պայծառ ճառագայթիւք ջահափայլեալ արփիականիզն փայլմամբ, զարեգակն արդարութե̃ 'ի քեզ պսակ ունելով հաստատեալ առաքելով զփրկութի̃ ամենայն աշխարհի. ըստ որում նախնին տեսեալ զքեզ 'ի քնոյն Յակովբայ ճանապարհ վերելելոց յերկինս առ Հայր, և դուռն երկնից անուանեալ իջելոց դասուց կաճառացն հոյակապ, և գումարտակ ժողովոյն երամ երամ իջելոց հրեշտակացն յերկիր՝ առ միութի̃ վերնոց և ստորնայնոց, հրաշաշաւիղ և կատարեալ ուղեկցութ̃ զկնի ա̃ծային ձայնին՝ թռուցեալք լուսատեսակ կերպիւն առ Ճշմարիտն էից կայ, 'ի վերինն բրաբիոն յա̃ծակերտ աշխարհն ։

Ո՜վ սքանչելի սուրբ փայտ, ա̃ծազարդեալ իմանալի գաւազան սուրբ հովուին, և պատճառ ծնելուե̃ ստեղծատեսակ հոգւով առանց մարմնոյ և արեան յաւէժաբար գոլով. և ոչ իբրև զօրինակն յամփն և 'ի ծովն, կամ իբրև զմեծախորհուրդն՝ որ առ Յակոբայն, յորժամ դնէր զգաւազանն 'ի ջուրսն աւազանին յանդիման խաշանցն առ զկծելոյ նոցա 'ի ձեռն գաւազանացն և ծնանելոյ խաշանցն գորշախայտս և սպիտակս և խայտախարիս. այլ մշտնջենաւոր յաւէտ յարաձգական անուղութե̃ կանգնեալ աւազան իմանալի և հոգևորական օթոց փրկութե̃ և կնիք ամրութե̃, անմահ ելով կենդանագրութե̃ բանին արտասանեալ ճշմարտութե̃ յոյժ գեղեցկապէս և հրաշափառագոյն. յաւէժառատ և վտակահոս ա̃ծային

1 Յօրինակին արտաշարեալ ։

ազդեցուցն 'ի քեզ ցայտեալ ահաւոր սոսկմամբն, ընդ երկ-
նակայծակ հրատալից արիւնն և ջուրն 'ի բերանացե-
լոյ երակէն հոսեալ, արտամերժելոցն և մերկացե-
լոցն 'ի փայտէն դատապարտութեն, լուսաւոր և ան-
մոտական ծածկութից, և համայն ամենեւին թափան-
ցանց 'ի միասին եղեր կնիք և գործարան և վերստին
ծնունդ բանաւոր ոչխարաց ։

Ո՜վ սքանչելի սուրբ փայտ, Ածաներկ դրոշմն, զէն
և կնիք հրատեսակ պարծեցելոցս 'ի քեզ սրամխեալ
արեամբ Որդւոյն Այ, որ փոխանակ գառնազէն արիւ-
նաշաղախ արեամբ դրոշմեալս զսեամս որդւոցն Իս-
րայելի, միանգամայն առ հասարակ եղեն զերծեալք
'ի բարկութենէ Ածային սրոյն ։ Իսկ դու, ո՜վ ահաւոր
և վսեմարփի Ածային նշանի զօրութեն անպարտելի,
պատկեր և կնիք 'ի դէմս ամենից հաստատեալ, յո-
րում զահաւոր զհուրն և զլոյսն 'ի քեզ ներպարու-
նակեալ անանջատելի ներգործութբ Որդւոյն Այ,
Ճշմարիտ կեանք և հրախառն դրոշմ հրասրեալ աս-
տուածամուխ արեամբ Որդւոյն Այ, միանգամայն իսկ
և հրագունից հրածնունդ սեռական էիցն, և ստոր-
նայնոցս էակացս եղեր պատսպարան և պաշտպան ։

Ո՜վ սքանչելի սուրբ փայտ և հրաշատեսիլ գաւա-
զան, արեւափառ նշոյլք, լուսածին և արփի Ճառա-
գայթ, ամենազան և պէսպէս գունակ գունակ զար-
մանազանեալ, որ փոխանակ գաւազանին որ 'ի ձեռն
մարգարէին՝ որում զհպարտացեալ ամբարտաւանու-
թեն եգիպտական սատակմանն տանջեալ պէսպէս և
ազգի ազգի հարուածովք. այսքան երկոտասան
սքանչելօք հրատարակեալ յոյժ հարկաւորապէս
բռնադատութբ ցնորականօք վրիպեալք, խազմական
վրդովիլն տոչկեալ չարչարեցեր ջնջելով զյիշատակ
նոցա մինչեւ 'ի սպառ. համանգամայն իսկ և զանմար-
մին Փարաւոնն, որ խրոխտացեալ բարձրավզութբ,
ինքնահաճոյ հպարտութեամբն սքողեալ 'ի խոշս և 'ի
գոգս քանակաւոր սահմանաց ։

Ո՜վ սքանչելի սբ փայտ և ամպատեսիլ սիւն կայ-
ծակնաբոլորք Ճառագայթիւքն պայծառացեալ 'ի
յերկրի. Ճանապարհընթաց և առաջնորդ ուղղու-
թեն քանականին Ածատեսակ ընտրողութեն Իսրայելի՝

յաւետապարգեւ երկիրն աւետեաց, ընդ քեզ միացեալ յարակայ 'ի կեանս բնաւորական լուսոյն. քեզ հետեւեցելոյ՝ առաջնորդես յա̃ձակերտ խորանս անչափելւոյ Երրորդութեան. ուստի և 'ի վաղնջուց հեռէ տեսեալ զքեզ մարգարէին, ոչ միայն սիւն այլ և սեղան և տաճար և լեառն ըստ օրու̃ն մարգարէի:

Ո՛վ սքանչելի սուրբ փայտ և ա̃ծաբուղխ աղբեւր, քեւ բացելոյ երկավտակ բղխմամբ 'ի կողէն կենդանութե̃ բեւեռեցելոյն 'ի վերայ քո անմահ Բանին ա̃յ, որ 'ի նիւթական և յանմաքուր հոսանուտ դառնաքեր կենացս՝ ցամաքեալ յա̃ծայլն հոսմանէ ուղխիցն վայրաբերականութե̃, տողասկեալք վիժածական ծորմամբն և տաժանեալք եղերական սգովն 'ի ձեռն փայտին դառնութե̃, յոյժ տենչալի զարմազանութե̃ և գերարփի ծագմամբ գերաբերեալ զճաշակումն ջրոյն դառնութե̃՝ քաղցրութե̃ երեւեցար 'ի Մեռա, ազդմամբ գրոյն տրամիտ և ախորժ և արբուն զործեցեր:

Ո՛վ սքանչելի սուրբ փայտ ա̃ծազարդեալ կերպարան և աւուր օրհնաղիր հաւատոյ, կենդանութեան հոգւոյն ա̃ծախօսիցն նկարագիր և անբարբառ բարեխօս պարծելոցս 'ի քեզ. զի թէպէտ և հիւթանիւթ հողոյ ընծիւղեալ ածանցականութե̃ արտաբերեալ, և համանունաբար անուանեալ փայտ այլտակապէս ըստ միոյ եղանակի, այլ սակայն զանազանեալ 'ի միւս կողմանէ՝ ըստ քառից յեղանակս տրամադրութե̃ 'ի վեր քան զմիտս և զհասումն՝ մակադրեալ ընդ քեզ չարամերձութե̃ն, այն՝ որ խօսէրն 'ի Մինայինն և օրհնադրէր զօրէնսն հրատաբորբոք և միգավառ մառախղամած խաւարաւն, եռանդնակայծակ հրալից արփիանուտ ահաւոր հուրն իջեալ 'ի վերայ քո, յոյժ բիւրապատիկ տեւողական արգահատութեամբ՝ պահեցար անկէզ. ուստի և նոյնագոյակ հուրն այն՝ որ անշփոթելի բնութե̃ն բորբոքեալ խօսէր 'ի մէջ բուսածին թփատեսակ և փշաղաժան մորենւոյն ապացուցութե̃ն[1] խորհրդովն վայրիջեալ յանպարագրական ծոցոյ հօր, անպարագրելի բնու-

1 Օրին. ապացուցութե̃ն:

թեան իջեւմանեալ, ներտաղաւարեցաւ 'ի համբարանի կուսին, անկեղակարծ և անթառամ պահելով զեր-կաքանչիւրոցն զկուսութիւնս. Հարկաւորապէս և կամա-ւորաբար ըստ արժանի փառաւորութեանդ՝ խոնարհեալ երկիր պագանէր քեզ ամենասուրբ կոյսն և մայր ծնե-լոյ փրկչին մերոյ զքեզն կախեցելոյ անմահ Բանին այ:

Ով սքանչելի փայտ սուրբ, ամենազարդեալ անձե-ռագործ տախտակ և կենդանագիր ըստ համագոյ Երրորդութեան, յորում նկարագրեալ 'ի քեզ չարչա-րանօքն, և զմեծի լուսոյն զխորհուրդն աւետե-լով, որպէս յիմանալի քառանկիւն և մի մարդեան տախտակս տպաւորեալ 'ի ձեռն չքնաղա-տես աւնն այ, ոչ տամնքանեայ մատամբ տառ ձևա-ցեալ, այլ միշտնջենաւոր և յաւէժաբար տևողութեամբ զնոյն ինքն զած Բանն անպարագիր գծաւորութեամբ հեղուսեալ իբր 'ի տախտակի՝ անջինջ գրով մամաւե-նաքանեալ չնորհեցեր:

Ով սքանչելի սուրբ փայտ, ամենազարդեալ իմանա-լի պատկեր արքայական քառաթև սուրբ նշան, կեն-դանատեսակ զօրութիւն, որ իբրու բուսանելով յեր-կրի՝ բարձրացեալ ծայր արձակեցեր ըստ քառատե-սակ ձևացեալ անկիւնս երկրի, առաքերելով 'ի քեզ զերկնաւոր անմահ թագաւորն. անկասկած յապա-կանողէ օձէն, յորժամ խածանէր զգումարտական ժողովն գումարութեան բանակին հակաճառեալ ներ-հակութեամբ ընդդէմ հարկանող օձիցն, լուծանելով զխայթոց մահաբեր օձին, այս ինքն զանմարմին թշ-նամւոյն: Զի թէ առ հնոյն և օրինակաւն յոյժ հարկանէր զխուժախումբ և բաժանիտ ժողովն, բժշ-կեալ լինէին 'ի սահեցող գոյացեալ անշունչ նմանու-թեն. որչափ ևս առաւել հրակայծակս արիւնախառն սխրալի աչաւորն հուր 'ի քեզ մերձեցեալ՝ հալոր-դելով և մկրտելով 'ի մահ, մարմնով մեռուցչին[1] մա-հու, բժշկելով կենդանական անմահութեամբ 'ի սևա-թոյր և 'ի խաւարաբորբոք անիծեալ օձին դառնութէ[2] զի 'ի քեզ հայեցողս հաւատացեալս:

Ով սքանչելի սուրբ փայտ ամենազարդեալ, իմա-

1 Յօրին. մեռուցին:    2 Յօրին. դառնութենէ:

նալի թագ աշխարհական, քառաթև տուրք նշան և անպարտելի բարեխօս զքեզ կախեցելոյ անմահ Բանին Այ. որ զկենդանին Ածայնելոյն խրագործութեան՝ աստուստ Ածատեղծ մարդոյն քաղաքացեալ խորամանկութի մախանօք բանսարկուին՝ առժամայն աղաւաղեալք 'ի կենդանատեսակ լուսոյն, և անկեալք ընդ մեղօք մահու, առաւել բիւրապատիկ արդահատութի սնօրինեալ Ածութին զքեզ խաչեալն բարձեալ ամենեցուն թագաւորին Յս՛ փոխանակ Յեսուայ, այս խաչն զդայլատեսակն զթագաւորեալ զմեղսին բաղխեալ ցասմամբ բարկութե, մինչև 'ի կատար ընթացից արեգականն, նշան յաղթութե պարտեցելոյ թշնամւոյն 'ի վերայ կանգնել. որպէս և օրինադիր բանն աղդէ կոչեցեալ, երկձիղ կախէ ըղփայտէ :

Ո՛վ սքանչելի տուրք փայտ, իմանալի թագ աշխարհական, նախաձայնեալ զքեզ հոգեխաներկ երգողին, յորում բարձեալ զահաւոր և զպայծառ պչքեղազարդեալ զգլուխն զՔս, պէսպէս զարմազանութի փայլեալ 'ի սահմանս կատարելութե ծայրի քո՝ մեծապէս բերկրանօք տարփողական անճշմամբն փափաքեցելոյն՝ ակումբահոյլ դասախումբ ժողովոյն 'ի քեզ հաւատացելոց՝ և միանգամայն երկնի և երկրի զփրկութի աւթեալ տրամադրեցեր. վասն որոյ և այժմամբք հոգւոյն զքեզ մարգարէն՝ ոչ միայն թագ, այլ և պսակ փառաց յորահեւեալ 'ի գլուխ քո յաւէժ մշտնջենաւորութի, ընդ քեզ միացեալ յարակայ 'ի կեանս սակս պսակելոյ զտուրբան Այ : Ըստ նմին բաղդատութե քատակի և Իմաստուննն տրտաքերեալ զքեզ եւս ընդ եա՝ աստամնակայ ունակութի արտասանեալ առաջիկեր դատերացն Երուսաղէմի ելանել և տեսանել պսակեալ 'ի մօրէն 'ի գլուխ արքային Սողոմոնի, յաւուր ուրախութե փեսայացեալ անմահ Բանին Այ: Եւ արդ թէպէտ և հիահրաշափառագոյն և յոքնուստ տպաւորեալ 'ի քեզ աստանօր խորհուրդ ներմարդութե եղակի ընտե Բանին Այ, ոչ Ածային նշանի անհաւոր զօրութե, սակայն զթիւ

1 Յօրին. շարժադրեաւ:

վաթսանից գլխաւոր մեծ խորհուրդ իմանալի և բարձրագոյն ըստ երկոտասան ցեղիցն Իսրայելի բաժանմանցն, իբրև ընդ կենդանւոյ ընդ քեզ խօսեցայ ։

Ով քառատեսակ սուրբ նշան, կենդանի փայտ և ձայն բանաւոր, ներկեալ արեամբ Որդւոյն Այ. վասն զի քև ծանեաք զճշմարիտ արքայն Սողոմոն հանդերձ վաթսուն զօրօք պահպանութեամբ էիցն՝ ըստ թուոյ հինգ զգայութեցս, որով պխտակացեալ արտաքսեսցուք տարապայմանութե գործովք փայտին իմացութե բարւոյ և չարի ։ Որ և լուծեալ բարձաւ քրտնաբեր անիծադրութեն Ադամայ, որ 'ի ձեռն հինգ շաբաղըրեալ[1] ազդեցուէ, և մուտ[2] հարուածոցն մախանօք ։ Որ և խայտառակեցաւ օձ աւազակն, և բացաւ դրախտ՝ մարդ աւազակին ։ Որ և բացաւ որովայնափակ աղխեալ դուռն դրախտին կենաց ։ Որ և կապեցաւ կարծեցեալ իշխանին պետութեց խաւարի ։ Որ և հորդեալ դիւրեցաւ եւթնաձորոյն ճանապարհն ըստ Եսայեայ ։ Որ և ազատեցան վտարանդեալ ազգքն 'ի դառն մահուանէ ։ Որ և նորոգեցաւ ճանապարհ ծառոյն կենաց ։ “Ես եմ ճանապարհ և ճշմարտութի և կեանք „ ։ Որ և թռուցեալ ընթանան համարձակալէս ազեալ հոգիքն զՔն ։ Որ և բացաւ դուռն յարութե ննջելոց մեռ ։ Որ և ցնծայր հրեշտակապետն աւետարանելով կանանցն խաչեցելոյն զյարութի ։ Որ և ուրախացան դասք առաքելոցն՝ քարոզելով աշխարհի զփրկութի ։ Որ և նորոգեալ եղև երկին նոր և երկիր նորոգայարդար, և ամենայն որ 'ի նոսա երևելի և աներևոյթ արարածք ։ Որ և լուսաւորեալ պայծառանայ կաթուղիկէ սուրբ եկեղեցի ։

Որ և զուարճացեալ խրախուսելով պարծի Սիոն վերինն Երուսաղէմ ։ Որ և բերկրեալ խնդայ ամուլն որդւովք հանդերձ՝ ծննդեամբ սուրբ աւազանին ։ Որ և լուսաւորեալ ուրախանան ժողովուրդք հաւատացելոց 'ի Քն ։ Որ և դատաւորականին ածազգեաց տղայերամ մանկունք սուրբ եկեղեցւոյ ։ Որ և զգաստանան երիտասարդք և կուսանք՝ հանդերձ

2 Յօրինակին նօփ ։

բազմահոյլ ծերովք ։ Քև պարծէին կուսանք խոստումն
բերողաց , միակեցալք 'ի լերինս յայրս և 'ի քարա-
ծերպս վիմաց ։ Քև դրոշմեալ ա՟ծակերպ միութ՟ե՝
կնքէին ելից և մտից մերոց զգայարանք ։ Քև օրհնեին
բազմատեսակ նմանութ՟ե խորանաշէն յարկք սուրբ
եկեղեցւոյ ։ Քև բաշխի փրկական մարմին և արիւնն
'ի վերայ քո պատարագեալ ։ Քև արժանացեալք
կոչին յօծումն քահանայութե՟ անարատ և անբիծ
նմանութե՟ քահանայապետին Ք՟ի ։ Քև պսակեալ
հրճուելին փեսայացեալ հարսունք 'ի սուրբ եկեղե-
ցւոյ ։ Քև կերպակերեալ առաքելութ՟ե լիապէս բուծա-
նես զամենակարօտ սովամեռ քաղցելոց անձինս ։

Քև լինին բժշկութիւնք տարժամանամեռ հիւանդու-
թե՟ վհատեալ հոգւոց և մարմնոց ։ Քև հրաժարին
ննջեցեալք յաշխարհէ մեծապարծ ուրախութեամբ
յա՟ծակերտ խորանսն , առհաւատչեայ երանութե՟ցն
անմահական կենացն հանգստեանն 'ի Ք՟ս ։ Քև
կնքին դերեզմանք մեռելոց՝ հաղորդընծայ սաղմոսա-
նուագ և հրեշտակախառն փառաբանական ձայնիւ
մատուցանեն զերգս մխիթարիչ սուրբ Հոգւոյն բա-
րեխօսութ՟ե անմեռունչ հեծութ՟ե 'ի Ք՟ս ։ Քև փայլէ
միւսանգամ գալուստ Որդւոյն Աստուծոյ , անճառե-
լի ծննդեամբն՝ արևելանշան Ճառագայթիւք ա՟ծա-
տեսակ մարմնովն ։ Քև բանան գերեզմանք մեռելոց
և յառնեն 'ի մահահանգիստ քնոյ ։ Քև տանջեալ
'ի միասին առհասարակ դատին ազգք Հրէից անհա-
ւատից ։ Քև ցնծան դասք աջակողմանն պարծելոց
'ի քեզ՝ թռուցեալ ամպովք ընդ առաջ տ՟ն երկնա-
թռիչ հաւատով 'ի լուսազարդ տէրունական յեր-
կնաւոր բնակութիւն 'ի Ք՟ս Յ՟ս 'ի տէր մեր ։

Այս քեզ իմոյ արտադրութե՟ բանից պտուղ , ո՛վ
ա՟ծային սուրբ նշան , և ա՟ծակերտ իմանալի անբան
կենդանի , և ձայն բանաւոր ։ Ոչ ըստ ձիթենւոյ ողոմ
պտղականս ծաղկեալս մատուցանեմ առաջի քո , կամ
բոլորեալ պսակս 'ի հնդկային քարանց պէսպէս զար-
մազանութ՟ե գունեալ ։ այլ բանս մշտնջենաւոր և յա-
ւէժաբար ընդ քեզ բաղդատեալ ա՟ծատիպ ունակու-
թեմբս , ըստ ձայնի հոգենուագ ա՟ծահօրն Դաւթի , որ
բաղկացեալ գերազանցութ՟ե սխրանալով ունէր ըզ-

քաղցրութե̃ն 'ի քիմս, այսինքն զա̃ծային բանն, առաւել քան զմեղր բերանոյ. Եւ կամ Թէ ըստ այլում հոգէկրի ումեմն զհրամայեալսն 'ի տ̃նէ ծաղկեալ մանր զմատեանն, և վերաբերել ճշմարտութե̃ զկենդանի զբանն, որ այնքան ընդ քաղցրութիւն գրոյն հիացմամբ զարմացեալ պատմէր. ուստի և զնոյն աստուածատեսակ բանին ճշմարտութե̃ զխմաստս զոր ունէի դուն ինչ 'ի շնորհաց Հոգւոյն ս̃բյ ընծայեցի քեզ, սուրբ նշան, 'ի սկտեղս խանթից զտառադրծական արտադրութե̃ան՝ իբր 'ի քառեակ տրապիզիս զՔ̃ոի փրկութե̃ն ապաստանթ խորհուրդ:

Քանզի շուրջ եկեալ 'ի խորհուրդս անդաստանի մտաց իմոց, իբր 'ի չքնաղ և 'ի պքանչելատես աստուածատունկ դարաստանաց, քաղեցի ըստ իւրաքանչիւր մարգարէական ստոց զերևեալ պտուղն կենդանութե̃ 'ի քեզ առբերելով. մանաւանդ սակս ահեղակերպ և սոսկալի աւուրն երևելոյ, յորժամ փայլես երկնախուռմք զօրօք և լուսաւոր և անճառելի լուսով զ'ի քեզ հաստատեալս՝ յանքանակ և յանչափ ուրախութիւն ն̃ծակայ կենաց լուսոյ ճառագայթիցն 'ի վերնաքաղաքամայրն Երուսաղեմի, միշտ անդադար գեղապարութե̃ ընդ անմարմինս հոյլսն՝ լուսաճեմ կայճառացն խրախուսելով հանգիտաբար և յաւէժական հնչմամբ պարակցեալ, հրեշտակախառն օրհնութե̃ 'ի պսակահամբար[1] կիտին բոլորեալ պսակօք՝ զեռաւթուեան և զեզակի լոյսն աչալուրջ երեսօք համարձակապէս տեսանելով, հրաշ առ հրաշ ջահավառեալ յերկնալոյս ուրախութիւն, որ է համաքնակ և անանց տէրութիւն 'ի Ք̃ս Յ̃ս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Յօրինակին պսակահամբեր:

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

# ԹԷՈԴՈՐՈՍԻ

## ՄԻԱՑՆԱԿԵՑԻ

### ԳՈՎԵՍՏ Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ ԵՒ Ի ՄԻՇՏ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ[1]

ՕԲԱՆԱՒՈՐ և զներանձնեան տաճար սքանչելագործութեան ամենաբարեձև կարգաւորութեան և վայելչակազմութեան զարդարեալ երկնից բնակողին, զմաքուր և զպարկեշտասէր առագաստ հարսնութեան փեսայացեալ Բանին Հօր, զՄարիամ կոյս ածածին համաբոլորապսակեալ հաւատով սրբոյ Երրորդութեան, ընդհանրական առաքելաշէն եկեղեցիք Քրիստոսի, փառաւորողական երգաբանութեամբ հոգեզուարճ նուագարանօք՝ վերադոչեսցուք 'ի սերկեան աւուրս դաստախմբութեամբ. վասն զի յայսմ աւուր ընկալան մեծարգոյ աւետիքն բոլորաբնակ տիեզերք: Քանզի Հօր հաւասար Բանն ած՝ Հօր համագոյակից գոլով և յինքեան զՀոգին կենաց, ծնաւ այսօր 'ի Բեթղեհէմ, արքայաշէն քաղաքն Դաւթի: Ա՛ռ զի ի Բեթղեհէմ Թարգմանեալ կոչի ըստ եբրայեցւոցն՝ երդումն իւր. Յաղագս որոյ յանձն իւր երդուաւ

1 Թէպէտ և զառաջինկոյս ճառզառք մակագրեալ յանուն Թէոդորոսի, բայց երկբայինք թէ խառնեալ իցէ ընդ ոճ բանից Թադէոսի ուրումն, որ սիրէ կազմել ասէպ բառս եաւթարդս և քառաբարդս, և ածանցս ծանրալուրս. զի դիւրաւ մարթին շփոթել անուանքս Թադէոս և Թէոդորոս:

անսուտն յէութեան նախագուշակ մարգարէութեանն, և հաստատեալ կատարեաց զբանս ծառայից իւրոց, և զխորհուրդս պատգամաբեր հրեշտակաց արդարացոյց։

Այսօր աւետաւորք և ուրախաբեր ձայն հրեշտակապետին առ կոյսն Մարիամ կարապետող վանդիւք տարահնչող ձայնեալ ընդ բոլոր համատիեզերս ամենայն, թէ "Ծնաւ ձեզ այսօր փրկիչ, որ է օծեալ տէր 'ի քաղաքի Դաւթի"։

Այսօր մեծ խնդութիւն ամենայն տիեզերաց. քանզի բացաւ դուռն արևելեան աստղանշան ճանապարհաւն մոգս հանելով ընծայաբերս, երկնաւոր հրեշտակաց արքային մատուցանելով ոսկի արքայական՝ խնկնահոտաբուսակ արուեստահնարագործութբ մաքրագտեալ և գունազարդեալ 'ի շողիւնս հրալուսաճաճանչաղեղնութեն. կնդրուկ երևելի անուշահոտութբ. և զմուռս պիտանիս և խորհրդայեղց։ Ոսկի՝ որպէս խնքնակալ և յաղթող թագաւորի. կնդրուկ՝ որպէս այ երկնաւորի և մարդասէր բարեկամողի. իսկ զմուռ՝ որպէս խնքնայօժար վասն մեր մեռելոյ և յերկրի թաղելոյ, որ նշանակէ իսկ զմեր խաչելութեն, և յերկրաբերձ քաղաքականութեցս մեռանել, ըստ Պաւղոսի առաքելախօս վարդապետութեանն, թէ "Սպանէք զանդամս ձեր զերկրաւորս". և եթէ "Մեռարուք դուք, և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քնի յած"։

Քանզի յարևելից ուղևորեալ մոգուցն աստղանշան ուղևորութբ, որ զմիւսանգամ յանկարծահաս փայլակնացայտ յարևելից զփառապարգև գալուստն Քրիստոսի նշանակէ, որ հատուցանէ սիրողաց իւրոց պարգևս բարեաց։ Նա դարձեալ որպէս ծնաւ 'ի Բեթղեհեմ յառաջին գալստեանն, և արար խաղաղութի 'ի մէջ երկրի ըստ Դաւթայ, սոյնօրինակ և յերկրորդ վայրս եկեսցէ ըստ զգաստ ըստ տեսական վարուց, և հայրենական փառօք և իշխանութեամբ դատէ զտիեզերս ամենայն։ Դարձեալ հրեշտակական աւետարանութբ և գովասանութբ համաձայնակից գոլով իմ, հետևիմ յաւետախաղաց հրճուասիրութբ և 'ի նոյն յորդորումն հոմանմանեալս յարա-

ձիգն վերադունիցն հանճարեղացն արտասանութե՟ ներբողածանօթն հանդիսիւք ։ Վասն զի այսօր աւարտագործեալ կատարաշինեցաւ լրումն եկեղեցւոյ՝ բազմայեղանակ նախագուշակ մարգարէիցն քարոզութեամբ ։

Այսօր ցնծան բերկրական կցրդիւք, և գեղազանակ պարախմբութե՟ք երկնայինք և երկրայինք ․ այսինքն դասք հրեշտակաց և կաճառք մարդկան, և առ միմեանս արտաբերելով զալստեամբ որդւոյն աստուծոյ ։ Այսօր եհաս մեզ ժամանակ ուրախութեան ․ և խումբք սրբոցն անաղօտ ջահագործութե՟ք գունակս գունակս պայծառացուցանեն զպատիւ մեծի աւուրս վայելչութե՟ զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր վերահայեաց տեսակ զուարթածաղիկ երփնազանազեղ գարունն, սաղարթաճեմափթիթ բուսով վայելչացեալք՝ զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր ընկալաք զցօղ ա՟ծգիտութե՟ յանկիւնս շտեմարանաց սրտից, զի քաղցրութիւն տատրակաց ձայնի լսելի եղև յերկրի մերում զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր ամպք ա՟ծայինք և ցօղք հոգէզուարճք վերաբերեալ բուսովք՝ ստորացօղեն 'ի մարդիկ զալստեամբ որդւոյն ա՟յ ։

Այսօր հօտանք հոգէխաղացք և վտակք առատաբուղխք միշտխողովեան տրամոռոգանեն զբուրաստանեալ աւետարանատունկ մանկունս եկեղեցւոյ զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր արարածք ամենայն լուսով փայլազունեալք ճառագայթանան զալստեամբ որդւոյն ։ Այսօր երկիրս երկինք եղև, վասն զի տեսանի ա՟ծ եկեալ յաշխարհ ։ Այսօր հողատեղծեալ զարմ ադամածնունդ՝ երկնաքաղաքացի անուանակոչութեամբ գրեցան 'ի դպրութե՟ կենաց զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր նորափետուր հրաշիւք գեղեցկազարդեալք 'ի հնարագործութենէն զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր դառնացեալ աղբերք և լիճք ջրակուտից՝ 'ի քաղցրութեան ճաշակս տրամադրին զալստեամբ որդւոյն ա՟յ ։ Այսօր վտակք յաղբերաց աստուածբերին 'ի խաղս և 'ի մարգագետինս ծաղկոցաց զալստեամբ որդւոյն աստուծոյ ։

Այսօր ծով համատարած տարաբերութե՟ նաւադարանօք, սահմանադրօք վերաճայթեցին խաղաղա-

շարժ գեղաձեմեալ գալստեամբ որդւոյն աստուծոյ։ Այսօր բազմահոլով գետոց յորձանաստոյգ պտոյտք անմրգել գանգրիւք գեղածփեալք գալստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր և Ջրակոյտ առլուղակաց Ջրկայ դասակարգուի եռաբերկրեցին վերածնութ̃ն գալըստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր և վերին օդք շահեկանաբար սփռեալք տարածին 'ի պէտս մարդկան գալըստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր և վերագագաթնակատարահերձ կոհակ լերանց վարսագեղեալ պճնազարդեցին գալստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր երկնահոլովակառու տարերք երկուց լուսաւորաց Ջահ՞ պայծառ ղամբարօք փայլածին գալստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր ստորափայլեաց արեգակն արդարութեան, որոյ բժշկութ̃ի իւր 'ի թևս է։ Այսօր փարատեցաւ խաւար սատանայական առագաստին, և վերայայտնեալ տեսաք զլոյսն ճշմարտութ̃ե, վասն զի Ք̃ս եկն յաշխարհս։

Այսօր անեղն եղանի և անտեսն տեսանի իւրով մարդեղութ̃բն։ Այսօր անվայրափակն և անբովանդակն բովանդակի, և անժամանակն սկզբնաւորի իւրով մարդասիրութ̃բն։ Այսօր գայ կամաւորութ̃բ յաշխարհ, որ յաշխարհի է՝ և 'ի սմանէ ոչ երբէք մեկնեցաւ։ Այսօր խոնարհեցուցանէ զերկինս 'ի ծառայութիւն, և հնազանդեալ հայրն հրամանաց նորա։ Այսօր մնոտի արձանապաշտութիւնն ունայնանայր և 'ի բաց բառնիւր, և ա̃ծպաշտութ̃ի արգահատեալ յաշխարհ ծագեաց գալստեամբ որդւոյն աստուծոյ։ Այսօր 'ի հին տրտմական տխրութ̃եցն զերծեալք, և որպէս նոր Իսրայէլ եղաք՝ ապրեալք գալստեամբ որդւոյն ա̃յ։ Այսօր յղփացեալ շտեմարանք Հրէիցն ա̃ծգիտութ̃ե սպառեցան, և կարօտացեալ շտեմարանք հեթանոսաց առաւել զեղմամբ առլցան՝ շնորհատուր պարգևօք Հոգւոյն սրբոյ։ Այսօր վերաբուսեալ ամբարտաւանք յերկիր ստորանկեալ կործանեցան, և աղքատացեալ տնանկք օրհնաբանութ̃բ մինչև յերկինս բարձրացան։ Այսօր զերծաք 'ի դառնապարհակ աղխսագործութ̃էն Փարաւոնի, և ընկալաք զգիր նամակի ազատութ̃ե գալստեամբն Ք̃ի յաշխարհս։ Այսօր բացանջնջեցաւ ձեռագիր հակառա-

կամարտին գալստեանն Քի յաշխարհս ։ Այսօր ծովաքատակ մեղք աշխարհի արտասահմանահալած փախչի, և Յորդանան ընդ կրունկն դառնայ, և սգիք մարդկան լուսաւորին և Յն մկրտին, զի Ած տեսանի եկեալ յաշխարհս ։

Այսօր Յովհաննէս որդի պառաւ մօրն զաքարեան զարմ, դստերն Եղիսաբեթի, մեծ քահանայական շառաւիղ մակաբայեցւոցն զերմամբ, երկրորդ տոհմղևեան՝ գոլով 'ի հաստատապտոյտ պարագայ ջուրսն Յորդանանու և մկրտէ զՔս, լինի վկայ համապատիւ սուրբ Երրորդութեանն, տեսանելով զէջն աղաւնակերպ սուրբ Հոգւոյն 'ի վերայ գլխոյն Քի, և զհայրական զձայնն, թէ "Դա է որդի իմ սիրելի, դմա լուարուք"։ Այսօր անխոնարհն ըզգլուխն իւրում ծառայլին խոնարհեցուցանէ, զի զմեզ բարձրացուսցէ իւրով գալստեամբն։ Այսօր անպարագրելին ձեռնադրի յիւրում մարդեղութեան, զի զմեզ տեսողս արասցէ իւրոյ Ածութեան ։ Այսօր յայտնի աշխարհի, և ամենեքին լուսով ճառագայթասցեն ։ Այսօր Ածաշունչ քնարն Յովհաննէս 'ի գլուխ ահաւոր և հրակէզ մերձենայր, լուանալով մաքրին ջուրքն Յորդանանու յապականութէ եւացմանցն ։ Այսօր ջուրք 'ի սրբութի աշխարհի վերաբերին, և մաքրագործեալ սրբին ամենայն բնութիւք ջուրց յերևիլ Այ մերոյ ։

Այսօր ժառանգեցաք զարքայութիւն երկնից, զի արքայութե նորա վախճան ոչ գոյ ։ Այսօր բղխեցին լերինք զքաղցրութի, և բլուրք զկաթն 'ի դալարոյ ։ Դարձեալ բանալով անդրէն զխանութս ալեաց, մերոտին զեղեցկացուսցուք զբանայեցզ նուագարանաց գովասանութեւս մերոյ, և 'ի նոյն յաղթէրէ հոգևոր հանճարոյ ընթասցուք ճաշակել զվտակս հոգևորս, և նովաւ աճեցուցանել զտունկս ներբողենիս առ Տր և Ածածին կոյսն Մարիամ, և շահատակարար ծաղկեցուցանել զբանիջոյց կորովութեւս մերոյ արգասեաց, ձայնակից լինելով հրեշտակին ահաւոր աւետմանութեանց ։

Ուրախացիր խնդամտաբար սրտիւ, Տիրուհի կոյս և Ածածին Մարիամ, դուստր մարգարէական շնորհի

և մայր ա̃ծ, որ ա̃ծ վայելչութեան ծնար զարեգակն արդարութեան, և քև տեսաք և ծանեաք զՃշմարտահոս լոյսն Ք̃ն, որ լուսաւորէ զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ։ Ուրախացի՛ր երկրական սրտիւ, օրհնեալդ ՚ի կանայս, պայծառազարդ արևելք, որ ՚ի քէն փայլածագեաց լուսաւորութիւն ա̃ծաշունչ երեսացն Ք̃նի, և մանկազարթոյց զմիտս մեր առ ՚ի քըննել զխորս գիտութեան ուղղափառ հաւատոյ։ Ուրախացի՛ր հրճուողալից սրտիւ, ամենօրհնեալ ծնող և աղախին ա̃ն, որ արժանաւորեցար գոլ ինքնատես և ապաստաւոր Բանին ա̃յ հօր։

Ուրախացի՛ր երկրական ձայնիւ, կոյս բարեպաշտ և անարատ ծնունդ նախաստեղծին, և ընդհանուր ստեղծողին ծնունդ, քանզի ՚ի քեզ հաճեցաւ բնակել անպարփակելին ա̃ծ։ Ուրախացի՛ր մեծ խնդութե̃ք, Մարիամ սրբուհի, օրհնեալդ ՚ի կանայս. բարձրատեսակ և պայծառ երկին, աթոռ փառաց բարձրելոյ Ճշմարտին ա̃յ։ Ուրախացի՛ր խնդամտաբար սրտիւ, մայր լուսոյ և երկրածնաց. անդաստան ծաղկաց, ցցունազարդ գեղգեղեալ բազմադունակ երանգօք և յարագունաբաճ առատացօղովք, հովիտ շուշանաբեր, և մանուշակ անուշահոտ յաւէտ սրբամնեալ վարուք, որ մեզ հրաշագործեցեր զանուշահոտութեան գեղեցկազան Բանին ա̃յ զմտաւորութիւն։

Ուրախացի՛ր վայելչափառ սրտիւ, անհարմնացեալ Տիրուհի կոյս և ա̃ծածին, դրախտ փափկանոյց զանազանափթիթ բողբոջիւք, զանազան գեղաւորու̃ք, առաքելովք և մարգարէիւք և վարդապետօք, և ամենայաղթ մարտիրոսօք և ամենայն սրբովք։ Ուրախացի՛ր և երկրասիրեա՛, Մայր լուսոյ և երկրածնաց, այգի տաշտաւոր և ողկուզաբեր, գինեբուղխ և սաղարթաձեմ շարունակեալ, որ ՚ի քէն մակաշառաւեղեաց ընձիւղեալ հայրատունկ որթն Ճշմարիտ Ք̃ն, և ներբաժանեալ երկուս մանունս գնդակաց հրեշկաձառ ատենին շարաւանդան, և մնուր սարապետացն յաւարունն բաժանման շարադասեցաւ։ Իսկ մեզ դաւանողացս զքեզ, ամենասուրբ ա̃ծածին Կոյս անարատուհի և արդարակորով, երկրպագողացս որդւոյ քո և ա̃յ մերոյ չորեքատաեան առատաբուղխ

վարդապետութեան ճաշակ նուագաւորեալ պաշտէն մինչև 'ի ժամանակս յաւիտենանս :

Դարձեալ ուրախացիր արժանապատիւ սիրով, Մարիամ կոյս, ծնող և աղախին բոլորեցունց փրկչին և Այ, հնծանն Ածահրաշ և հոգէնկար, որ յարաբուխեցեր զհոսանս վտակաց անուշահամս և առատաբուղխս հոգեծաւալ գինւոյն Քի 'ի մէջ հնծանաշէն եկեղեցւոյ. և մատռուակեալ 'ի վեցեակ դար եղափոխութեանս մինչև յապառնիս եւթնեկի աւուր մտին, հոգէպարար զմայլեցուցանեն զմանկունս առագաստի փեսայացեալ Բանին Այ. այլ և 'ի հանդերձեալսն վերաթուեալ շտեմարանելով զգարեացն պարգևաբաշխութեան ձիրս : Ուրախ լեր Մարիամ շնորհազարդեալ տաճար, հարսն երկնային և լուսաւոր առագաստ արքունական, գործարան միաւորութեան Բանին բնութեան : Ուրախացիր, անհարանացեալ Մարիամ, մայր Այն, բաժակ հոգևոր և աստուածային շնորհացն տուող 'ի ձեռն աւետարանագիր առանցն Քի, որ արբուցին զտիեզերս :

Դարձեալ բազմերանաւէտ բարբառով ուրախացիր, Մարիամ սրբուհի, օրհնեալդ 'ի կանայս, ուռկան հոգևոր և հոգխանիւթ գործի լայնասփիւռ առաքելադունդ ձկնորսացն, որք զանազանահաւաք զարմիւք որսացին զբոլորահոյլս տիեզերս 'ի կեանսն յաւիտենից, և յանծերանալի համարձակութիւնն : Ուրախացիր բարեբաստուհի, անհարսնացեալ Մարիամ, անարատ մաքուր աղաւնի Քի, շնորհատու Հոգւոյն ընդունարան, որ միշտ բարեձևազարդեալ ուղղափառին եկեղեցիք հեթանոսաց :

Դարձեալ խնդալից ուրախացիր, Մարիամ, պըտուղ արքայութեան երկնից. յաղագս որոյ 'ի քո պատուական մայրութեանդ, եկեղեցիք նորափետուր զարդարեալ հրաշիւք, ծայրարձակ ոտիւք առաքինութեան պայծառաբերին պտղով հաւատովք յընծայուցին որդւոյ քո Այ մերոյ : Ուրախացիր, Ածածին Մարիամ, պարկեշտասէր և սրբասէր վարուք, ոչ եթէ մերօրէն խնչ, այլ անճառաբար յղացար և ծնար զԷմմանուէլն, ըստ Եսայեայ տեսողութեանն. վասն զի Ճշմարտապէս մանուկ ծնաւ մեզ ըստ Հոգւոյն նկա-

ռակերպութեն, և Որդի Բարձրելոյն ըստ հրեշտա-կապետին աւետեացն ։ Ոչ ի նախ քան զանուանակ-չութի հօր և մօր, առցէ զզօրութի Դամասկոսի և զաւար Սամարեայ. և ոչ ևս երկիցուք 'ի ծխալից երկուց Թագաւորաց խանձողաց 'ի մեզ տիրելոյ. այս ինքն մահու և դժոխոց. վասն զի "Թագաւոր մեծ 'ի վերայ ամ̃ն ա̃ծ է"։

Դարձեալ ուրախացի՛ր, անփորձ 'ի մերօրէն հար-սանեաց, հարսն երկնայի՛ն և անհարսնացեալ Մա-րիամ. որ հրաշազանապէս ա̃ծ վայելչութեան ծնար զԷմմանուէլն, զգեղեղեշարմատն[1] պտղաբերեցեր, որպէս 'ի ծարաւուտ երկրի, և անկէզ պահեցար շնոր-հօք սուրբ Հոգւոյն 'ի մեւքակերպ սաղմնանկար 'ի զուգամամանութէ. այլ և 'ի հեթանոսս շառաւեղա-գործեալ[2] համաբոլոր տարածափիւռ ներծաւալե-ցաւ ուղեշարժակ քաղցրաբերդուն արմատոյն այնո-րիկ, որ 'ի քէն յայտնեցաւ աշխարհի, որք պասքա-ծարաւեալք էին յամենայն սրտէ ա̃ծգիտութեն ։

Ուրախացի՛ր լուսայեղց դիմակաւ բերկրեալ և զուարթալից սրտիւ, օրհնեալդ 'ի կանայս, Մայր կենաց և փրկութե ազգի մարդկան. գեղմն լուսակիզն և անթանալի, մարգարէափորձ պխտաւութե բացա-յայտեալ, որ զանարանց հարսին ունիս զձև անախտ և անաամբոխ և պարկեշտասէր. վասն որոյ Դաւիթ 'ի մարգարէս 'ի նոյն տիպս կուսածին հարսնու-թեանդ՝ յորդորահնար քնար նուագարանաւն համակի զէջն Հոգւոյն 'ի քեզ տպաւորեալ, ասէր "Իջցէ որպէս զանձրև 'ի վերայ գեղման, և որպէս զցօղ զի ցօղէ յերկիր։ Ծագեսցի յաւուրս մարմնաւորութե նորա արդարութի, և բազում խաղաղութի մինչև ցկատարեալ մաշուածն լուսնին"։ այս ինքն նուաղումն հեթանոսաց. զի "Որ հնացեալն և ծերացեալն՝ մերձ է յապականութի" ըստ Պօղոսի. վասն զի Ընիւ խափանելոց էր ։

Դարձեալ եռանդնասէր և յորդոր փութով և յորդորապահանջ հարկապահանջութեւս ըստ բաղ-մայեղանակաբուն շառաւիղն գովասանութե Հո-

1 Յօրին. զգեղեղեշարմատն ։ 2 Յօրին. շառաւեղագործեալ ։

գւոյն սրբոյ վարդապետութեանց խոյրապսակազարդ փաղ-փեւք ընծայաբերեմք քեզ 'ի մերմէ նուաստաջան արուեստից, ով Տիրուհի, որքամնեալ վերահռչակեալ քոյր մեր, դուստր մարգարէութեանց, ակն սուտակ և դահանակ լուսաջահայեղց, ընտրաքանեալ 'ի մէջ դստերաց Սիոնի : Վասն զի 'ի բազմաց անհաւանութէ, քեզ հաճեցաւ Հայրն բոլորից՝ և առաքեաց զիւր սիրելի միածինն 'ի ծառայական մարմինն տաղաւարել, Հոգւոյն սրբոյ 'ի քեզ ներգործեալ :

Ուրախացիր, պարկեշտուհի Մարիամ, դուստր աբրահամեան աւետեացն, բողբոջ Իսահակայ. որ անապական ծնար և սքանչելապէս զԱստուծոյ զզօրութիւն և զիմաստութիւն և զանդրանիկն արարածոց և զարարիչն համաբոլոր բնութեանս, որ այժմ դարձաւ 'ի տղայութիւն արքային հրեշտակաց, և դարձոյց զտիեզերս 'ի մանկութիւն կենաց :

Պարծեալ ա̃ծավայելչաբար սրտիւ և բարեզուարճ ուրախութեամբ. ուրախացիր, Մարիամ անհարսնացեալ, և անզբաղասէր կոյս, և սիրագործ երանաւէտ հարսն ծննդեամբ, զեդեմական գետոյն վտակս առատագոյն բերես 'ի քեզ, որ խոխամեալ արբուցանես զյոգնազանագունակ տունկս դրախտին փրկութեան, որ այժմ իմանալի է մեր դիտաւորութեամբ՝ զեկեղեցւոյ բուրաստանեալ մանկունս՝ վերաստեղծեալ հաւատով մնեալք անարգելս առ հոսանահոլովաշարժ վարդապետութեանս աւետարանին Քրիստոսի :

Ուրախացիր բոլորամիտ սրտիւ, Մայր լուսոյ, աստուածածին Մարիամ, սեղան աստուածախառն. զոր օրինակ հրամայեցաւ Մովսէսի անտաշագործ մարդկային հնարաւորութեանց վիմակառոյց արձան ուղղեալ՝ ընդունակ ընծայեալ Աստուծոյ. այսպէս և պարկեշտասէր անձն քո անկաւ և անփորձ պահեցաւ 'ի մերօրէն հարսանեաց. վասն զի շնորհօք Հոգւոյն սրբոյ պարսպեալ՝ եղեր ընդունող սեղան երկնային հացին իջելոյն յերկնից, որ կեանս տայ ամենայն աշխարհի :

Ուրախացիր, Մարիամ, խնդամտաբար սրտիւ հլու և միամիտ աղաւնի օրհնեալդ 'ի կանայս, եղամիտ Քրիստոսի, որ և հրամայեցաւ ըստ Եզեկիելի. վասն զի դու ես դուռն փակեալ արեւելածագ ելից

և մտից տեառն Աստուծոյ Իսրայէլի․ զի անհատական և անճառ խորհուրդք բերիւր երկնապարծ ամենասուրբ կուսութեանդ քո դուռն ։ Պարծեալ ուրախացի՛ր վերստին երկնաբեր աւետեօք, բերկրեալդ վայելուչ սրտիւ, մայր Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ անփակն և անբովանդակն երկնի և երկրի մեծագործութբ՝ ինքնակամ յօժարութբ սրտիւ բարեհաճեցաւ խնամնեայ ժամանակաւ գեղազարդեալ 'ի քում հոգէնկար արգանդիդ, մինչև ծնար զանդրանիկն արարածոց և զարարիչն, որոյ կոչեցաւ անուն Յս, ըստ հրեշտակին առասանութե ։

Ուրախացի՛ր, Մարիամ օրհնեալդ 'ի կանայս, երանելի տեսողաց և տարփելի անտեսից, Ջրհոր հոգևորաբուղխ, որ լի գոս ամենահանճար իմաստաբեր անձկութբ, կենդանի անծարաւ ջրոյն, որ սամարուհւոյն տենչասիրեալ սակս նեղավտակ պապաքածարաւ երթևեկութեն․ որով և մեծ մարգարէն Դաւիթ թագաւորն Իսրայէլի, հոգւոյն եռանդմամբ ցանկայր․ "Ո՞ տայր ինձ ըմպել 'ի ջրոյն Բեթղեհեմի որ առ դրանն,, ։ Եւ յիրաւի առ դրանն դիտաւորութեն մարգարէին, քանզի մերձ առ դուրսն կայր փառապարգև գալուստն Քնի ։ Եւ երից զօրավարացն կառամարտից վանեալ զգեղուր այլազգեացն, և բերեալ զջուրն ըղձալի առ արքայ, և ոչ կամեցաւ ըմպել՝ քանզի ոչ էր հասեալ 'ի նորա ծերացեալ ժամանակն՝ ծնանել 'ի քէն Քնս․ Թէպէտ և համազոյգ անձն և մարմին մարգարէին և հոգի ընդ ամենայն իմաստութեն և գիտութեն, և անցեալ ընդ երկրաբարձ ապարէզս դիւագունդ փաղանգաց, որ և թշնամիս առնեն պատրանօք իւրեանց զմարդիկ Աստուծոյ ։

Ուրախացի՛ր, Մարիամ, տիեզերաբաղձ տուփ ոսկի, զարդարեալ անուշահոտ խնկովք, և տաշտ մաքրափայլ իւղեփեցական բուրմամբ․ քանզի որպէս 'ի գունազանազեղ վարդից և շուշանաց և հովտածիծաղասաղարթ[1] ծիրանաթոր մանուշակացն, վարդագեղեալ ունիս հիւսակ, անհարմնացեալ Մարիամ,

1 Ցօրինակին հովտածիծանասաղարթ ։

պարկեշտասէր վարուք առաքինական սրբութեամբք։ Վասն որոյ և առ 'ի մէնջ ընկալցիս զբանիցս ընծայումն, որ ոչ երբէք կարօտաքերիս նուաստութեանս մերոյ դրուատեաց. որոյ գովասանութե՟ չափ՝ ոչ առ 'ի մարդկանէ, այլ առ 'ի յո՟յ ընծայի քեզ, ով Տիրուհի կոյս և ա՟ծածին Մարիամ։

Արդ այսպիսի շահատակող և հոգևոր կուսական տօնախմբութե՟ս, ով սիրելիք, բազմայորդոր փութով հաւանեցարուք 'ի շնորհավաճառութիւն այսր աւուր, երիտասարդք և կուսանք, ծերք և տղայք, գեղեցկապէս փութով փոխեցէք զմարմնաւոր թըմբկահարութե՟ս ընդ հոգևորս. վասն զի այս իսկ է ժամանակ տուրևառիկ անարգել անխափան ուղևորիլ յարքայութի՟ն երկնից 'ի Ք՟ս Յ՟ս 'ի տ՟ր մեր, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# Ս Ա Հ Ա Կ Ա Յ

ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

ՃԱՌ

# ՅԱՐՄԱՒԵՆԵԱՑՆ ՕՐ

# ՍԱՀԱԿԱՅ

## ՀԱՅՈՑ

## ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### ԱՍԱՑԵԱԼ

## ՅԱՐՄԱՒԵՆԵԱՑՆ ՕՐ

### ՈՐ Է ՂՈԳՈՄԵԱՆ

ԱՒԵՏԱԲԵՐ և տիեզերական տօն, և տէրունեան տօնից գերափառագոյն. բերկրաբերձ և սոսկալի բոլոր բանակաց երկնաբիւրուց փառաբանողաց պանծացուցանելի. յորում երկինք և երկիր և ծով բերկրեալ խնդան. քառահոլով տարերք զհնութի յառաջին յեղանակելով լինելութի։ Օդք զբարեխառնական և զպտղածնող բուրեցին շունչ։ Աղտեղք մաքրափայլք և ականակիտք, նկարակերտելով զիւրաքանչիւրոց դիրս։ Լուսին կարակնաձև լրացեալ արեգակնապէս զբոլոր զգիշերն ջահաւորէ. և արեգակն ՚ի հասարակահոլովն ժամանեալ ժամանակ, զմէջս երկնի և երկրի հոլաթևէ։ Ծով ՚ի բարձրակոհակ վրդովմանց և յոլորտածաւալ շարժմանց լռեալ կայ։ Երկիր զձմեռնային զագաւորութիւն ՚ի գարնանային յեղանակեալ վերանորոգումն. և բուրաստանք ՚ի ստածող օդոց սուսանազարդեալք, ՚ի գագաթունս բերելով ծայրից զծաղկանց զանազանութիս տեսակաց հոտոց և համոց։ Այլ զեռունք որջացեալք յերկրի, բռնեալ ՚ի փապարս և ՚ի ծերպս, զժամանակիս զգալով զմեծափառութի, արտավերելեա-

հետեւողութ̃ յաւէտաձեւ խուրաքանչիւրովք ձայնիւք, երաժշտականեալ[1] փողեն զաւուրս վայելչութե̃ն: Այլ ծովածին կենսաւէրք երամակուղղի[2] լսելով երամապետիցն, ՚ի ձմեռնային և ՚ի միջնաշխարհ[3] կայարանացն երամախմբեալք՝ ՚ի մերոյին ժամանելով գետին, ընթացուցանեն զերկիր և զջուրս, և բազմանուագ ձայնիւք զզանազանութե̃ն երագաձեւ տեսակաց, ՚ի տըւընջեան և ՚ի գիշերի զերաժշտականացն վերաթեւեն նուագ :

Այլ գազանացն և երէոցն քառահետեւ շարմունք, հոլեալք և երամացեալք՝ ՚ի շարից և յանտառաց նորածին ծաղկանց ճոխացուցանեն զորովայնս . զզոչումն և զըչումն արտաքերելով զանականաց հրաշացուցանեն զլսողութիւն : Այլ տնական կենդանիք արտաքոյ խուրաքանչիւրոց եւանեն յորջից . ոմանք զհողագործականն տաժանմունս ՚ի նուս բերելով, իսկ այլք հոլեալք ըռացուցանեն զհովիտս և զկոհակս զանազան ծաղկանց՝ զմարմնոյ և զճարպոյ բերելով զառաւելութ̃ : Այլ նաւուղղակին փնաւ ծովուն ընծայեցուցանելով, ՚ի ձմեռնային լաեալ վըրդովմանց, ամջողակ առագաստափար օդով ուլացեալ ՚ի բաղձալին ժամանէ երկիր : Այլ երկրագործ ՚ի բնակաց, ըստ հոգենուագ երաժշտապետին Դաւթայ, ելանէ ՚ի գործ իւր և ՚ի վաստակս ձեռաց իւրոց, զսերմանական և զանկածօղ երկիր գործելով . զըշտեմարանացն ճոխացուցանելով զլինութ̃ : Այլ բավանդակ երկին և երկիր և ծով, և ամ̃ կենդանատեսակք զաւուրս մեծացուցանելով զփառաւորութե̃ բերկրին և խնդան, և մերոյ փառաբանութե̃ս բարեբանակցութե̃[4] համագոյապէս . զոր բաւական համարելով, զաւուրս յառաջ ածցուք զտաղմոսն :

՚Ի թագաւորաց մեծն, և օրինականին երաժշտականութե̃ն առաջին Դաւիթ, գրաւորականին հաւատարիմ մարգարէ, և բարբարոսական ազգին տանջօղ . մշտայաղթ ՚ի պատերազմունս, և հսկայիցն ծախօղ . նսեմացելոյն Ինչլի Ճրագ, և արարչական սրտի

1 Յօրին . երաժշտականեալ :
2 Յօրին . երամակուղղի :
3 Յօրին . միջնաշխարհ :
4 Յօրին . բարեբանակցութեան :

Հօր համակամ. նախահայր մարմնացելոյ Բանին, և ծածանի կուսին ցեղապետ, և ըստ նահապետական տանցն նախահայր, և 'ի քահանայական երգս պարագլուխ և ծածաքանող, սերովբէիցն բարեբանակից զսերկեան նախագուշելով մարգարէական հոգւոյն՝ ըզմեծափառութիւն փողեաց մեզ բանն, զինամանեբորդ զվեցերորդ սաղմոսն՝ ասելով, "Երկինք ցնծասցեն առաջի տն զի գայ,,: Անուն և Ճշմարիտ է բանս. զի յամենայնում պետք և առաջինք զաւետարեր խնդան լուր. 'ի զօրու զօրավարք. 'ի հօտի հօտապետք. 'ի նաւի նաւապետք: Նոյպէս և արարիչն զհողեղէնի առնլով զմնուէն, բարձրացեալ կոհակք և ըլուրք հողեղէնք՝ զհողեղինին զոլ ազգականութին խնդասցեն. և վերագոյն քան զվեցերեակ աւուրցն փառաբանութին բերկրեսցին. յաղագս իւրաքանչիւրոցն ունելով հողեղինօք ընդ հողեղինին հարազատուի մարդկան և լերանց:

Բայց ըստ նշանակի նմանեցուցանէ զլերինս մաքուր մարգարէական անձանց, որպէս հողանիւթեայ մարմնովք տաճարացան սրբոյ Հոգւոյն, և շնորհաբարձ բախտիւն վերամբարձանքան զմարդկային բնութիւնս, և Հոգւոյն սրբոյ սրակնութեամբ զազմաժամանակեայ և զհանդերձեալ դիտաւորեցին խորհուրդ. և գրաւորական թողլով յիշատակ զսարսափելի աւուրս մեծվայելչութի: Որ յաղագս սեկեան խոստովանեցին աւուրս շնորհաւետեալ հոգւք նոցա, և ծայնին բարձրացեալ Ճոխութք, յիշատակելով զնոցա երգ ընդ մեզ ցնծալով զՍրբոյն մեծափառ եկաւորութիւն. որում և մեծն առաքելոցն Պաւղոս յիւր յառաքելական մատենին, առ Եփեսացի տումարին գրելով, "Օրհնեալ է Աստուած և Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ օրհնեաց զմեզ ամ հոգևոր օրհնութք յերկնաւորս 'ի Քս,,, հրամայէ զմեծ գունդն բարեբանութեամբ զմարմնացելոյ Բանին օրհնել զՀայր ոչ ըստ գրաւորականին և հնացելոյ օրինին, որ ընդ անիծիւք էր փակեալ, և անակնառու դատողութք յանցաւորացն հրամայէր տանջմունս զնացից՝ և տանջանաց զանազանեցելոց, վիրոյ ընդ վիրաց, և ատամն ընդ ատամնց կրճատել. և զանազան սատակմունք, քարկոծ-

մանկունք, սրտամահութիւնք և հրկիզութիւնք։ Նայլ Որ-
դւոյ զմեր կերպարանեալ զբնութիւն, և բնութիւն քա-
ւարան գոլով բնութեան, 'ի տանջանաց զբնութիւն ա-
զատելով, և միով մահուամբ զամենայն մահուց կրկ-
քեաց զիր. և յաջորդեաց շնորհ զրոյն՝ հոգւոյ. և
եղև ինքն Նա ամ̃ յամենայնում։ Նոյն հողեղինն
հողեղէն. օրէնքն Ճոխացուցանող. զրոյն լուծիչ.
ողւոյն քննող. պատկեր աներևելի հօրն, և ա̃մ
մարդկան զօրութի և իմաստութի. հասարակաց արարիչ.
փրկելոյ դրախտին բացող. Ճանապարհ 'ի վեր ելից
առ հայր. դուռն երկրորդ՝ յերկրորդ երկինս մտողաց։
Երկնի ա̃ծ, յաղագս արարչութեան. երկրի թագա-
ւոր, յաղագս մարմնաւորութեան. մարդկան օրէնք,
յաղագս փրկագործութեն. հրեշտակաց Նախապատ-
մելի, յաղագս ա̃ծութեն. և հասարակաց համախմբու-
թութի լծորդելով առաքելականն զրոց 'ի տիեզերա-
տօնակ աւուրս համաշխարհական խմբեալ բարեբա-
նութն, զատուրից հօր՝ և զմիածին Որդւոյն մարդաւո-
րութեն փողեալ գոչեսցուք ա̃ծաբանաբար։

Երանելին մեծն յաւետարանչաց Մատթէոս,
երկուց հոգևորաց հանդիպեալ շնորհաց, զառաքե-
լականն ունելով աթոռ, և արտաքերականն աստուած-
որդւոյն Ճառեցելոյ աստուածաբանող, յիւրում
հրաշապատում տառսն աւետարանեալ զներկեան
աւուրս եկաւորութեան խորհուրդ՝ Ճառեալ ասէ.
"Իբրև մօտ եղեն յԵրուսաղէմ, և եկին 'ի Բեթփա-
գէ մերձ 'ի լեառն Ձիթենեաց, յայնժամ Յի̃ս առաքէ
երկուս յաշակերտացն և ասէ ցնոսա. Երթայք 'ի
գեղջ որ առաջի ձեր կայ. և իբրև մտանիցէք, գը-
տանիցէք էշ կապեալ և յաւանակ ընդ նմին, լուծէք
և ածէք ինձ. և եթէ ոք ասիցէ ինչ ձեզ. ասասջիք
եթէ Տն̃ իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ
զնոսա"։ Նոյն աւետարանչիս Ճառեցելոյ զա̃ծա-
հրաշ սքանչելագործութիւնս Որդւոյ՝ որպէս հոգեխառն
շարադրեալ տառիւք պատմէ բանն։ 'Ի Գալիլէէ
հետևեալ Որդւոյ, և զախտացելոյն մերձ զա̃ծե-
ղէնն ընդ ձեռնեալ բուժական դեղ հոգւոյ և մարմնոյ,
որոյ աղագաւ և զհաւատարիմ բարեկամին տեսանէ
զախտամանալն ըստ մարմնոյ 'ի հրէաստանի և 'ի Նե-

Թանիա , և զանբուժականն մարմնեղէն ախտին 'ի մարդկեղէն դեղարանացն , և զանշնչանալն և զնեխելոյն յաջորդեալ տեղի , և զառաքումն լծորդածին կանանցն , զի նախ քան զվաղճանելն ժամանեսցէ ածային շնորհօքն , և բուժումն անբժշկական ախտին ընդդիմանասցէ ։ Այլ նախ քան զժամանելն ածն և աշակերտացն 'ի Բեթանիա՝ անշնչանայր Ղազարոս , և զգերեզմանականացն ըմբոշխնելով կերպ , փոխեալ լինէր 'ի կենդանութենէն . զոր եկեալ ածն դտանէր վախճանեալ չորեքօրեայ , և զապականեալ մարմինն, սոսկալի ձայնիւ տիրաբար հրամայեալ՝ արտաքս 'ի գերեզմանէն հեռեւանալ , և յերկիզապնդէ թողացուցանել կապարանէ . և 'ի Բեթանիա յընթրեն իւրում , մի 'ի բազմականացն էր Ղազարոս ։

Նայոքիկ հրաշագործութիւնք յերիկեան յանկեաց [1] աւուրն . իսկ 'ի սերկեանս առեալ զբազմութ աշակերտացն , և յառաջելով 'ի Բեթանիայ 'ի ձիթաստանեաց լերանն , հանդիպի 'ի Բեթփագէ . յոր առաքէ երկուս յաշակերտացն , և հրամայէ ածել զէշն և զյաւանակն ընդ նմին . և փութով առաքէ , զի նախ քան զմտանելն յԵրուսաղէմ, նստցի 'ի վերայ նոցա ։ Բայց քս ասոր տեսութ մտանելն յԵրուսաղէմ, և եկաւորելն 'ի Բեթփագէ և 'ի լերանն ձիթենեաց, իմանալի է զմերձակայ չարչարանաց ածորդւոյն , և մահուամբ 'ի մահուանէ զմարդկային ազատել զբնութս . և Երուսաղէմ իմանալ զբոլոր տիեզերաց՝ 'ի ձեռն առաքելական քարոզութն , և աւազանին վերածնութ ։ Իսկ Բեթփագէ թարգմանի տուն ծնօտի . որ նշանակէ զանմաքուր կենդանոյն ծնօտ , որով վարսաւորն Սամփսոն զանթլփատիցն բիւրուց վանեալ մեռուցանէր . ընդ որում և վարսաւորն Յո- Աւդի և Բան այ նստելով 'ի վերայ նորին կենդանւոյ , նշանակէ զածացելոյ հակառակամարտին ճոխութիւն 'ի տիեզերապետութենէ լուծանել ընդ ոտիւք մեռուսցէ ։ Իսկ ձիթաստանեաց լերանն նախ դուշակէ զտիեզերաց լուսաւորելն՝ կամաւորաբար եկաւորելն 'ի չարչարանս ։ Այլ երկուս առաքելն

1 Ցօրինակին յանկեաց ։

յանշանկերատացն, զանիեզերաց նմանայերէ զկոչումն, երկու հոգեխառն կոչմամբք՝ զբանաւորականս և հոգևորականս. և վաղվաղակի առաքելն զերկպաքանչիւրոցն անվրէպ ժամանակս նշանակէ զմարգարէականն և զառաքելականն ։

Բայց այս ոմն լեալ ոչ վայրապար. այլ զի ցցէ բանն մարգարէականին, խոստովանութիւն Զաքարիայ, որ ասէ. "Ուրախ լեր դուստր Սիոնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ և հեծեալ յէշ և յաւանակի իշոյ"։ Համագոյ օրինին հոգեկիրքս զհանդերձեալ ա͞ծորդւոյն զսքանչելագործութիւս նախաձայնեալ ա͞ծաբանեցին։ Մեծն 'ի նահապետաց Յակոբ՝ մարգարէական ձայնեալ ձայնիւ, ասէ զՅուդայէ, յորմէ հանդերձեալ էր գալ 'ի կուսէն մարմնանալն կատարել, որ է նախահայր նոյ կուսին. "Ոչ պակասեսցէ իշխանութիւն և պետութիւն 'ի յուդայեան տոհմէն, մինչև հասցէ ժամանակ որոյ իւրն է իշխանութիւն։ Կապեսցէ զգրաստ իւր ընդ որթոյ, և զյաւանակ իւր զցնողակէ որթոյ"։

Նման էր որթ զա͞ծորդւոյն մարմնաւորութիւնն յաղագս խոստովանելոյ զիւր զարարչական մարմինն որթ, և զերանելի առաքեալսն ուռ։ Կապեսցէ ընդ որթոյ զգրաստ իւր, զմարմնանալն և զհամաձայնօրէնելն ընդ հաղեղէն բնութ, և կապել անզգամ և անլուծանելի սիրով ընդ միրուանակ բնութեան։ Այլ ընդ զցնողակէ որթոյ զյաւանակ իւր, զնորածնելոցն յաւազանէ որդէգրաբար ընդ նոյ Նորոգութեան կապեալ սիրով, անխզելի և անլուծանելի կապանօք միաւորեաց։ Իսկ մեծն մարգարէից Զաքարիաս բացայայտ և անստուգաստ զմերկեան արարչաբար հրաշագործութին փառեալ ձայնեաց բանն "Ուրախ լեր, ասելով, դուստր Սիոնի, զի թագաւոր քո գայ քեզ՝ նստեալ 'ի վերայ անմաքուր կենդանեաց նորոց"։ Թագաւոր և փրկիչ, հեզ և խոնարհ խոստովանի զծոցածին Բանն Հօր. որ ընդ արարչական անուանն 'ի ձեռն մարդկօրէն անօրէնութեն, և Ճշմարտապէս առնլով մարմին, և խոստովանելով թագաւոր՝ ա͞ծ երկնի և երկրի։ Իսկ յանմաքուր կենդանիսն նստելով, զերկուս նշանակելով ժողովրդեան՝ Հրէից և հեթանոսաց. և անմաքուր

յաղագս այսորիկ, զի զուգահաւասարք երկաքանչիւրոցն 'ի բազմա՟ծութիւն կործանեալ։ Ա՟ն որոյ աննու զմիութիւն հողեղէն, 'ի ձեռն որոյ սիրով առաւելագունիւ կապեալ ընդ Հ՟րէից և հեթանոսաց ժողովարան, արժանաւորեցուցանէ զնոսա որդէգրութե՟ հաւասարակից Հ՟օրն և իւր ժառանգութե՟ աւագանին վերածնութի՛ք, զոր առաջարացուցեալ ինքեան՝ նստի և հանգչի 'ի մ՟ջ յեկեղեցւոջ, որ զանազանէ. երկնային Հ՟օրն՝ քահանայս և մարգարէս, ուսուցիս և դատերս։

Իսկ դուստր Սիոնի՝ իմանալի է մ՟եր եկեղեցի. վասն զի երանելի առաքեալքն զնորա արքայութեան խորհուրդ 'ի Սիոն յաստուածորդւոյն ընկալան. անդ և զսուրբ Հ՟ոգւոյն իշխանութիւն առին 'ի ձեռն ա՟ծային բերանոյ փչմանն. անդուստ և զհիմնարկութիւն մ՟եր եկեղեցւոյ երանելի առաքեալքն սկզբնաւորեցին. անդուստ և լեզուօքն[1] զանազանեցելովք 'ի քաղաքութիւն կոչեցան, և զա՟ծորդւոյն զյարութիւն 'ի նմա ծանեան։ Յաղագս այսր ա՟մի հրամայէ ուրախանալ դստեր Սիոնի՝ որ է մ՟եր եկեղեցի։

“Գնացին աշակերտքն և արարին որպէս հրամայեաց նոցա Յ՟ս. ածին զէշն և զյաւանակն, և արկին 'ի վերայ նոցա ձորձս, և նստաւ 'ի վերայ նոցա,,։ Ո՟րք մեզ երկու աշակերտքն թուին գնացեալ։ Զերկուս առաքելական տեսակացն ասէ. զեօթանասունսն և զերկուսն՝ զոր նախ քան զա՟ծեղէն զյարութիւն իւր առաքեաց. և զերկոտասանսն՝ զկնի յարութեան փչելով 'ի նոսա Հ՟ոգի մ՟եր, և ասելով. “Գնացէք աշակերտեցէք զա՟մ հեթանոսս,,։ Իսկ ածել զկենդանիսն և զյաւանակ նորանի՝ զնորահաւատսն, որ 'ի Հ՟րէից և 'ի հեթանոսաց ժողովրդենէ ասէ, որք հաւանեալք նորա վարդապետութեանն՝ մարմին և անդամք մ՟րյ եկեղեցւոյ կոչեցան։ Այլ արկանելն 'ի վերայ ձորձս, ընծայեցուցանել զհոգւոյ և զմարմնոյ զմաքրութի՟, յորում նստէր և հանգչէր ա՟ծորդին.

“Այլ բազում ժողովուրդք տարածանէին զհան-

1 Յօրինակին լեզուաւն։

զերծս իւրեանց 'ի Ճանապարհին » : Ժողովուրդ բազում, զբազմութիւն մարդկանն ասէ, որք զմարմնական ախտից յանցաւորութիւս խոստովանութեամբ առաջի ա̃ծորդւոյն՝ անծածկաբար տարածանելով. իսկ Ճանապարհին հետեւանայն Յ̃սի 'ի հրէաստանի՝ և 'ի Գալիլեա, և ախտացելոյն ըստ պատուիրանազանցութեան, ինքնին ժամանել բուժումն 'ի յանցմանն բժշկապետաբար : “ Նոյն այլք, ասէ, հատանէին ոստս 'ի ծառոց, և տարածանէին 'ի Ճանապարհին » : Նոյն այս ոչ վայրապար, այլ ա̃ծեղէն երկաւորութեան արժանաւոր գործակցութիւն. քանզի զաւետարանական հանգերձեալ էր կատարել զփրկու̃ին, և զընդունայն հնազանդութիւն արարածոց փոխել յարարչական հնազանդութիւն. երկրի և ծովու՝ իւրաքանչիւրովք Ճանաչել և մեծացուցանել զա̃ծն իւրեանց. ընդ որս և ծառք 'ի նորածին ծնունդոց՝ զսաղարթ և զծաղիկս դայացուցչին իւրեանց ընդ ոտիւք ընծայեցուցանեն :

“ Նոյն ժողովուրդն որ առաջի և զկնի երթային՝ աղաղակէին և ասէին. Օրհնութի̃ն որդւոյ Դաւթի, օրհնեալ որ գայ յանուն տ̃ն, օրհնութի̃ն 'ի բարձունս » : Ժողովուրդք առաջի և զկնի ասելով, իմանալի է զերկուս հոգեկիր պարս՝ մարգարէութե̃ն, քահանայութե̃ն. որ նախ քան զմարմնանալն խոստավանեցին զնորա գալուստն. իսկ զկնի ժողովուրդքն երանելի առաքեալքն, և սրբոյ եկեղեցւոյ բազմութիւքն, որք զկնի նորա տնօրէնութեան որդի Դաւթի զնա խոստովանէին. որ անբաժանաբար 'ի հայրենին մնաց ծոց, և բոլորովիմբ գոլով 'ի կուսական յորովայնէ ծնեալ. մարդ կատարեալ առանց մեղաց. Զայսոսիկ միշտ խոստովանէին երկուց ժողովարան, պարք առաքելական սրբով եկեղեցւով :

“ Նոյն 'ի մտանելն նր̃, ասէ, յԵրուսաղէմ, դղրդեցաւ քաղաքն ա̃մ, և ասէին ո՞վ իցէ սա » : 'Ի հասարակաց արարչին ծնելութե̃ն մաքրի և Երուսաղէմնայ բոլոր տիեզերք. վասն զի զհամագոյ աշխարհի զմաքրութիւն տուող մարմնանալն նշանակէր, և բազմաստուածութեանն անմաքրութիւնն 'ի տիեզերաց ուլորեցուցանել : Նոյն դղրդումն քաղաքայնոցն, զհակառակամարտին զօրութիւնն ասէ, որք փոր-

ձեալ՝ զտեղն զնա ած ճշմարիտ. որում աղաղակելով ասէին, «Պիտեմք զքեզ ով Տէր, Տէր իմ, մի՛ նախ քան զժամանակն զմեզ դատել»: Օ ածացեալ նոցա զօրութիւն արտաքոյ ընկէց. և զխիղճ ճշմարիտ արարչական անուն հրամայեաց ածախոսս բարեբանել ճշմարտափառութբ:

«Այս ժողովուրդքն ասէին, սա է մարգարէն Յս, որ 'ի Նազարեթէ Գալիլեացւոց»: Ժողովուրդս՝ որպէս նախաձայնեցաք՝ իմանալի է զնոյն եկեղեցի, որք միշտ խոստովանեն զնորա ածութիւն, և զմարմնանալն և զմնալն առ Հօր: Այս մարգարէ յաղագս մարգարէաբար և ածապէս զհանդերձեալսն նախագուշակել. որպէս 'ի Գալիլէէ շրջել, և 'ի հրէաստանի տեսանել զՂազարոս մեռեալ. և նախ քան զգրաւերականն դպրութն, զօրինականացն դատաւորակէ զհրահանգապետս: Իսկ նազորեցի կոչի, մաքուր, որ է հաւատարիմ և ճշմարիտ վկայ նորա մարմնաւորութեն. «Որ ոչն արար մեղս, և ոչ գտաւ նենգութի 'ի բերան նորա»:

Այս մեք որ այսպիսի տիեզերադով և բարեբանօղ հանդիսացաք աւուրս, համախոհ լծորդութբ ընդ նոսա զածեղէն մոյցն սպասաւորեսցուք գործակցաբար, ընդ տղայոն բարեբանեսցուք, ընդ ծերոն հանդերձ ոստովք երկրպագեսցուք, ընդ աշակերտոն խոստովանեսցուք զօրհնեալ եկեալն յանուն տն. ընդ ամն լցուք ամ, զի բովանդակ ածեղէնն հասցուք շնորհաց 'ի ձեռն մատակարարի սուրբ հոգւոյն, որ տայ առատապէս զպարգևական շնորհս արժանաւոր հայցողաց. որ եկեալ բնակեսցէ 'ի մեզ ժողովարանս, և տաճարացուսցէ զհոգի և զմարմին, բնակարան և օթևան Տեառն Երրորդութեն կազմեսցէ: Որ որոյ հասարակաց Հօր, և Որդւոյ միածնի և կենդանարար ծողի, և սրբոյ հոգւոյն մատակարարի և պարգևատուխի մշտնջենաւոր փառաբանութի մատուցուք այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## ՄԱՏԵՆԻՍ

### ՅՈՎՀԱՆ ԻՄԱՍՏԱՍԷՐ



### ԹԷՈԴՈՐՈՍ ՔՌԹԵՆԱՒՈՐ



### ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ

